


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

1972

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ
ЖУРНАЛ ЦК КПА

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





ՓԱՌՔ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾ ԺՈՂՈՎՐԴԻՆ





# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՎԻՐԱԿԱՆ ՏՈՆԸ

Մարդկության անկասելի պրոգրեսի ավանգարդում ընթացող սովետական արարչագործ ժողովուրդն առանձին հանդիսավորությամբ է նշում իր նվիրական տոնը՝ ՍՍՀՄ բազմազգ պետության գոյավորման հիսնամյա հոբելյանը: Սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների անկուլգական եղբայրության այդ հավերժական դաշնադրությանը նվիրված հանդիսություններին սրտագին արձագանքում են սոցիալիստական լագերի բոլոր ժողովուրդները, աշխարհի բոլոր ծագերում հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի մաքառող աշխատավորական կանգվածները:

Բնորոշ է, որ այս օրերին իրենց նվաճումների միջազգային նշանակության խոր գիտակցությամբ լի սովետական մարդիկ գոհունակությամբ են վերհիշում սոցիալիստական հեղափոխության առաջնորդի, սովետական սոցիալիստական հանրապետությունների անսասան դաշինքը կռող Վ. Ի. Լենինի այն մարգարեական խոսքերը, թե մենք իրավունք ունենք հպարտանալու և հպարտանում ենք, որ մեզ է վիճակվել *սկսելու* սովետական պետության կառուցումը, դրանով *սկսելու* համաշխարհային պատմության *նոր* դարաշրջանը, նոր դասակարգի իշխանության դարաշրջանը, մարդկությանը կապիտալիզմի կեղեքումից և իմպերիալիստական պատերազմներից փրկող պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանը (տես ПСС, т. 44, стр. 148):

Հիրավի, շնորհիվ այն հանգամանքի, որ մեր երկրում սոցիալիստական հեղափոխության ղեկը վարում էր Լենինի կոփած բոլշևիկների կուսակցությունը, լիովին իրականություն դարձավ ազգերի ու ժողովուրդների արգասալի եղբայրության մարքսիստական դրույթը: ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության կենդանի մարմնավորումը՝ ՍՍՀՄ-ը դարձավ մեր երկրում սոցիալիզմի կառուցման վճռական գործոններից մեկը:

Մեր դարի հեղափոխական շարժումների ընթացքն առհասարակ և Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը հատկապես, կարմանալի ճշգրտությամբ հաստատեցին հանճարեղ Ֆ. Էնգելսի այն կանխատեսումը, որ միայն հեղափոխական պրոլետարիատը կարող է տարբեր ազգերին եղբայրացնել: ՍՍՀ Միության կեսդարյա կենսագործունեության հանրահայտ արդյունքները դրա փայլուն վկայությունն են: Ահա թե ինչու այնքան ճշմարտացի է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման այն հետևությունը, ըստ որի «Սովետական Միությունը պատմության մեջ երբևէ չեղած ապատ ժողովուրդների բարեկամության ու միասնության հարաբերությունների մարմնավորումն է: Այդ բարեկամությունը սոցիալիզմի մեծագույն հասումներից մեկն է, սովետական հասարակության առաջընթացի հզոր ուժը, ՍՍՀՄ բոլոր ազգությունների աշխատավորների վսեմագույն նպատակի՝ կոմունիզմի կառուցման ստեղծարար ջանքերի անսպառ աղբյուրը»:

Պատմության մեջ առաջին անգամ մարքս-լենինյան գիտական աշխարհայեցողության կուռ հիմքերի վրա խարսխվեց հարյուրից ավելի ժողովուրդների ու ազգերի (վարգացման բազմազանին խայտաբղետ մակարդակներով) «իրոք դեմոկրատական, իրոք ինտերնացիոնալիստական» սկզբունքներով կողված դաշինքը: Մի դաշինք, որն ապահովեց մեր մեծ հայրենիքի առաջընթացի բոլոր մարզերում դրսևորվող ընդհանուր ինտերնացիոնալիստական-համապետական և յուրաքանչյուր ժողովրդի, անգամ էթնիկական խմբի յուրահատուկ շահերի ներդաշնակումը: Սովետական ազգերի ու ժողովուրդների լենինյան միասնությունը, որն արտահայտվում է մեր բազմազգ պետության ու սովետական ժողովրդի միահամուռ ու բեղմնավոր գործունեությամբ, լիակատար հնարավորություն ընձեռեց ՍՍՀՄ-ին դառնալու համաշխարհային հեղափոխության անմար փարոս, սոցիալիստական պետությունների, դեմոկրատիայի ու հասարակական պրոգրեսիվ ուժերի հուսալի հենարանը:

Տոնելով ՍՍՀՄ կազմավորման կեսդարյա հոբելյանը, մենք ողջ մարդկությանը մի անգամ ևս ապդարարում ենք, որ սովետական ժողովուրդների ու ազգերի դարակազմիկ եղբայրության հիմնամյակը, ՍՄԿԿ կիրառած լենինյան ազգային քաղաքականության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հաղթանակի վկայությունն է: Եվ սա այն երկրում, որը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից առաջ իրավամբ կոչվել է «ժողովուրդների բանտ», որի մասին Լենինը գրել է. «Ինքնակալության անիծյալ պատմությունը մեզ ժառանգություն է թողել այդ իսկ ինքնակալությունից կեղեքվող տարբեր ժողովուրդների բանվոր դասակարգերի միջև սարսափելի *խորթացում:* Այդպիսի խորթացումը մեծագույն չարիք է, մեծագույն արգելք ինքնակալության դեմ մղվող պայքարում» (ПСС, т. 7, стр. 242): Մարդկության առաջընթացը խոչընդոտող այդ «մեծագույն չարիքը» հաղթահարվեց ՍՍՀՄ կազմավորման ու փայլուն զարգացման շնորհիվ: Միայն սոցիալիստական հեղափոխության կենարար շնչով հնարավոր եղավ ազգերի վերածնունդը՝ սոցիալ-տնտեսական միանգամայն նոր արտադրահարաբերությունների գերակշռության հանգամանքներում: Տակավին Կ. Մարքսն է ասել. որպեսզի ժողովուրդներն իրոք միանան, պետք է ընդհանուր շահեր ունենան, իսկ որպեսզի նրանց շահերը լինեն ընդհանուր, պետք է ոչնչացվեն սեփականության եղած հարաբերությունները: Ահա թե որտեղ հարկ է որոնել սովետական ժողովրդի այս նվիրական տոնի սոցիալ-քաղաքական հսկայական նշանակության իրական հիմքերը, դրա համաժողովրդական բուն իմաստը:



Հանդես գալով իբրև Ռուսաստանյան բանվոր դասակարգի շահերի հեղափոխական պաշտպաններ, տակավին անցյալ դարի վերջին տասնամյակին ակտիվ մարտնչող լենինյաններն իրենց անվեհեր ղեկավարի՝ Լենինի շուրթերով ազդարարեցին. «Մենք պետք է հանուն սոցիալիզմի մղվող պայքարը *շաղկապենք* ազգային հարցի հեղափոխական ծրագրի հետ» (ПСС, т. 27, стр. 62): Եվ իրոք, աշխարհի միակ կուսակցությունը, որը պրոլետարիատի սոցիալական ազատագրման հետ միասին, մշակել է և պրոպագանդել ազգային հարցի մի ամբողջական հեղափոխական ծրագիր՝ դա Ռուսաստանի մարքսիստ-լենինյանների կուսակցությունն էր, որի խոր համոզմամբ, անհնար է կանակ ազգերի ինտերնացիոնալ միասնություն, առանց կեղեքման բոլոր ձևերի վերացման ու ազգերի լիակատար փաստական հավասարության իրագործման: Ուստի, պատահական չէր, որ Հոկտեմբերյան հեղափոխության ամենաթեժ օրերին ի լուր մարդկության հրապարակվեցին ոչ միայն սոցիալ-քաղաքական, իրավա-պետական, այլև Լենինի ձեռքով գրված ազգերի ազատությունն ու եղբայրությունը հռչակող պատմական մի շարք փաստաթղթեր. «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիան», «Ռուսաստանի ու Արևելքի բոլոր աշխատավոր մուսուլմաններին» հղված հայտարարությունը, ՌՍՖՍՀ Սահմանադրությունը (1918 թ.): Պատմական ուղենիշ հանդիսացող լենինյան սույն փաստաթղթերը սովետների դրոշի ներքո համախմբված ժողովուրդների կամավոր դաշնադրության անսասան հիմքերը դարձան: Քաղաքացիական կռիվներում ու ինտերվենտների դեմ մղվող արյունահեղ մարտերում առավել կոփվեց հոկտեմբերից շատ առաջ ցեմենտված Ռուսաստանի այլազգի բանվորների ու կեղեքվող աշխատավորների սերտ կապը առաջավոր և հեղափոխական ռուս պրոլետարիատի ջոկատների հետ: Անցնելով երեք հեղափոխությունների բովից, Ռուսաստանի հեղափոխական կանգվածները դասակարգային բախումների փորձից համոզվեցին, որ բուրժուա-կալվածատիրական և ազգային կեղեքումներից մարդկության փրկության միակ ուղին՝ բոլոր ազգերի բանվորների ինտերնացիոնալ համախմբումն է լենինյանների դրոշի ներքո: Միակ կուսակցությունը, որը կյանքում սերտորեն զուգորդում էր ազգերի ազատագրման շահերը սոցիալիզմի հաղթության համար մղվող հեղափոխական պրոլետարիատի ինտերնացիոնալիստական շահերի հետ՝ դա բոլշևիկների կուսակցությունն էր:

Վերոբերյալ պատմական փաստաթղթերը ոչ այլ ինչ են, եթե ոչ Ռուսաստանի աշխատավորների դասակարգային ինտերնացիոնալիստական և ազգային յուրահատուկ շահերի ներդաշնակման հռչակում: Հրապարակելով և հետևողականորեն կիրառելով ազգերի ինքնորոշման, նրանց հավասարության լենինյան սկզբունքները, սովետները կարճ ժամանակամիջոցում իրական հիմքեր պատրաստեցին բազմաթիվ ազգերի կամավոր համախմբման և եղբայրական համագործակցության համար, դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա ապահովելով մեծ ու փոքր ժողովուրդների լիակատար հավասարություն, նրանց զարգացման նախապայմաններ:

Հայտնի է, որ մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո միայն անհրաժեշտ ու նպատակահարմար եղավ ազգային կեղեքման լուծը թոթափած ժողովուրդների ազգային պետականության գոյավորումը ֆեդերատիվ սկզբունքներով: Սոցիալիստական հասարակության կերտման առաջին իսկ տարիներին ակներև դարձավ, որ ազատագրված և սովետական կարգեր ստեղծող ազգերի պետականությունը ոչ միայն չի հակասում դեմոկրատական ցենտրալիզմին, այլ կարող է խթանել նրանց վերածնությունը և ակտիվ մասնակցությունը սոցիալիզմի կառուցման բնագավառում: Այսպիսով, գործնականորեն մեծ մասշտաբներով մի անգամ ևս ապացուցվեց, որ ազգերի լիակատար ազատագրումը կարող է լինել լոկ սոցիալիստական հեղափոխության հաղթության շնորհիվ:

Տակավին սովետների համառուսաստանյան առաջին համագումարում (1917 թ. հունիս) Լենինը հստակորեն հռչակեց. *«Թող Ռուսաստանը լինի ազատ հանրապետությունների միություն»* (ПСС, т. 32, стр. 286): Համոզված լինելով, որ հաղթանակած սոցիալիստական հեղափոխությունը կարող է

ճնշված ազգերի աշխատավորության կյանքը վարել սոցիալիզմի կառուցման հունով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների համաձայն, նա գիտեր, որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակն արմատապես կփոխի ազգային հարցի բովանդակությունը: Այդպես էլ եղավ. կոմունիստները, վերացնելով ամեն կարգի ազգային կեղեքման և անհավասարության ձևերը, լիակատար նախապայմաններ ստեղծելով ազգերի, ժողովուրդների ազատ կյանքի ու բարգավաճման համար, ապահովելով ռուս ժողովրդի բազմակողմանի օգնությունը Ռուսաստանի երբեմնի ճնշված բոլոր ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլտուրական ծաղկման համար, դարձան ճնշված ազգերի դեմոկրատական ու սոցիալական շահերի միակ պաշտպանը, որոնք նրանց ազատության, իրական զարգացման ու ծաղկման, ազգային նոր պետականության ստեղծման, բոլոր ազգերի ու ազգությունների համերաշխ աշխատակցության ջատագովներն են:

Այսպիսով, պատմականորեն անհերքելի է, որ վելիկոռուսական բանվոր դասակարգը, հանձին իր նորաստեղծ ՌՍՖՍՀ պետական իշխանության բարձրագույն օրգանի, ստանձնեց անցյալում կեղեքված ազգերի պետականության ստեղծման կարևոր գործը, որին հավասար իրավունքներով մասնակցեցին այդ տերիտորիայի վրա ապրող այլազգիները: Դեռ ավելին, Սովետական Ռուսաստանը հսկայական զոհերի գնով պաշտպանեց ու ամրապնդեց սովետական կարգեր ստեղծող ծայրամասերի ազգային սովետական պետությունների սահմաններն ու ինչքը իմպերիալիստական ոհմակների բազմիցս կրկնվող հարձակումներից ու դավերից: Մատուցած վիթխարի օգնության ու եղբայրական համագործակցության նոր պայմաններում, նորաստեղծ սովետական ազգային հանրապետությունները վերջնականապես համոզվեցին, որ իրենց ծաղկումն ու բարգավաճումը անկարելի է առանց Սովետական Ռուսաստանի անկաշառ աջակցության ու համագործակցության: Թեկուզ այն իրողությունը, որ Սովետների համառուսաստանյան III համագումարի պատգամավորների մեկ երրորդը երբեմնի ճնշված ժողովուրդների ներկայացուցիչներն էին, վկայում է այն մասին, որ սովետական կարգերը պատմական զարգացման միանգամայն նոր փուլ նշանավորեցին:

Գնահատելով սովետների երրորդ համառուսաստանյան համագումարի արդյունքները, Վ. Ի. Լենինն ասաց. «Սովետների երրորդ համագումարը համաշխարհային պատմության նոր դարաշրջան բացեց...», որովհետև այն «Սոցիալիստական սովետական հանրապետության պետական կարգը վերջնականապես հաստատեց որպես Ռուսաստանում բնակվող տարբեր ազգերի ազատ հանրապետությունների ֆեդերացիա» (ПСС, т. 35, стр. 286): Ո՛չ թե ազգերի ու ժողովուրդների օտարում, նրանց միջև եղած ատելության ու բախումների խրախուսում, ինչպես դա կատարել են աշխարհի բոլոր կեղեքող դասակարգերը, այլ կամավոր միավորում, լիակատար իրավահավասարության պայմանով: Ազգերի համագործակցության լենինյան այս սկզբունքը դարձնելով իր գործունեության վիմաքարը, սովետները դրանով իսկ մարդկության պատմության ընթացքը մղեցին նոր, սոցիալիստական հունով:

Բարեկամությամբ, եղբայրությամբ և իրական շահագրգռություններով կոդված ազգերին ու ժողովուրդներին Լենինը համախմբեց Հոկտեմբերի դրոշի ներքո:

Հիրավի, Ռուսաստանում ապրող ազգերի վերջնական ազատագրման հա-



մար փրկարար նշանակություն ունեցավ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակը, որն իր արգասալի հորձանուտում ներգրավեց նաև նրանց բանվոր դասակարգին ու գիտակից աշխատավորներին: Այդ հեղափոխությունն էր, որ կոմունիզմի ուղին նշեց սովետական մեծ ու փոքր ժողովուրդներին, հող ստեղծեց նրանց բարեկամության համար և հնարավորություն՝ դառնալու սոցիալիստական սովետական առաջավոր ազգեր: Ըստ էության ՍՍՀՄ կազմավորումը Հոկտեմբերյան հեղափոխության շարունակությունն էր ազգությունների ու ժողովուրդների կենսագործունեության բոլոր ոլորտներում: Սա է ազգային հարցի նոր բովանդակությունը սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո: Հնարավորություն ընձեռելով ճնշված ազգերին ու ժողովուրդներին ինքնիշխան պետականություն ստեղծելու, սովետական կարգերը նրանց սոցիալիզմի հունով առաջ գնալու և իրենց հասումները բազմապատկելու իրական զորավիգ տվին: Հետևաբար և սոցիալիզմը դարձավ նրանց առաջընթացի գլխավոր նպատակը:

Այստեղ չենք խոսում այն հույժ կարևոր իրողության մասին, որ ազգային սոցիալիստական պետականության ստեղծմամբ արագացավ երբեմնի հետամնաց ազգերի կոնսոլիդացիան՝ նրանց ազգային ինքնագիտակցության զարգացման հիման վրա, որն ի վերջո դրսևորվեց իբրև սովետական հայրենասիրություն: Ահա թե ինչու, սոցիալիզմի պայմաններում ազգային պետականության հաստատության ստեղծմամբ, իրական հիմքեր առաջացան ազատ ժողովուրդների ու ազգերի մերձեցման համար: Խարսխված լինելով սոցիալիստական դեմոկրատիզմի կենսունակ սկզբունքների վրա, սովետական պետականությունն անցած հիսուն տարիներին մեծապես նպաստել է սոցիալիստական ազգերի միասնության ամրապնդմանը, նրանց եղբայրական կապերի սերտացմանը, ինտերնացիոնալիստական գաղափարների արմատավորմանը:

Հանդիսանալով պատմական այդ պրոցեսների ղեկավար ուժը, սովետական սոցիալիստական հանրապետությունների կոմկուսակցություններն աճել ու դարձել են ՍՄԿԿ վարած լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառողները, սովետական ժողովուրդների անկաշառ բարեկամության անմիջական դարբնողները: Բարեկամություն, որը ելնում է շահագործողների դեմ՝ շահագործվողների միահամուռ պայքարի անհրաժեշտության գաղափարից, որն այնպես կանգվածորեն որդեգրեցին Ռուսաստանի անցյալում կեղեքված ժողովուրդների աշխատավոր զանգվածները, հավատարիմ մնալով իրենց ազատագրական կռվի ղեկավար կոմունիստական կուսակցության լենինյան դրոշին:

Սովետական բազմազգ պետության կենսագործունեության ոլորտում ղեկավար դեր է խաղացել մեր հայրենիքի բանվոր դասակարգը, որը միշտ հավատարիմ է իր հարազատ կուսակցությանը: Ահա թե ինչու ազգային պետականության ստեղծման և զարգացման գործը միշտ տոգորված է եղել պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով, ՍՄԿԿ կողմից «ժողովուրդների ազգային զարգացման նկատմամբ մշտական հոգսով»: Այդ հոգատարության անմիջական արգասիքը՝ բազմազգ սովետական պետության բարգավաճումն է, նրա հիմքը հանդիսացող սովետական ազգերի ու ժողովուրդների անքակտելի եղբայրական դաշնադրությունը: Սակայն պետք է ընդգծել, որ մեր հայրենիքի բազում ժողովուրդների ու ազգերի համախմբման, բազմազգ պետության կազմավորման և ամրապնդման գործում բացառիկ է Ռուսաստանի բանվոր դասակարգի խոշորագույն դերը: Նրա գաղափարայնությունն ու անձնվիրությունը

կոմունիզմի իդեալներին, հեղափոխական եռանդն ու ինտերնացիոնալիզմը, նրա շեշտված հումանիզմն ու նորի ընկալունակությունը՝ մեր երկրի բոլոր ժողովուրդների խոր համակրանքն ու հարգանքը նվաճեցին: Ստեղծագործական աշխատանքի, հայրենիքի պաշտպանության համար մղած մարտերի ու կուլտուրական վանգվածային կապերի խորացման ընթացքում, անցած առավել կեսդարյա փոխհարաբերություններում այդ համակրանքն ու հարգանքը սովետական ազգերի սոցիալիստական վերածնության պրոցեսում վերածվեցին եղբայրական հոգեհարազատության: Եվ դա ՍՍՀՄ հիսնամյա գոյության պերճախոս հասումներից մեկն է:



ՍՍՀՄ բազմազգ պետության լինելության սկզբնական հինգ տարիները (1917—1922) հսկայական ջանք ու ճիգեր խլեցին մեր կուսակցության Կենտկոմից, Վ. Ի. Լենինից: Դյուրին չէր բոլորովին նոր տիպի և այն էլ բազմազգ պետության կազմավորումն ու նրա օրգանների իրավասության և կենսագործունեության իրավագիտական մշակումը: Այն ամենից առաջ պետք է հենվեր ՌՍՖՍՀ ֆեդերացիայի փորձի վրա: 1920 թ. ամփոփելով ՌՍՖՍՀ փորձը, Լենինը կարևորագույն էր համարում սովետական ֆեդերացիայի տնտեսական, ռազմական, կուլտուրական, ազգերի համագործակցության և փոխօգնության հարաբերությունները: Նա շեշտում էր. «Ֆեդերացիան համարելով լիակատար միասնության հասնելու մի անցողիկ ձև, անհրաժեշտ է ավելի ու ավելի ձգտել ֆեդերատիվ միության...» (ПСС, т. 41, стр. 438): Պետական շինարարության իր հետագա գործունեության ընթացքում կուսակցությունն իրագործեց Լենինի այդ ցուցումը: Այդ հիման վրա էլ մշակվեցին պետական միավորման ու համագործակցության այնպիսի ձևեր, որոնք հնարավորություն ընձեռեցին լիովին պահպանելու ՍՍՀՄ մեջ մտած հանրապետությունների ինքնիշխանությունը, ապահովելու ազգերի ծաղկումն ու մերձեցումը, ազգային ու ինտերնացիոնալ ազդակների մշտական ներդաշնակումը, դեմոկրատական ցենտրալիզմի կիրառումը, հանրապետական և միութենական շահերի համակցումը:

Անցած հիսուն տարիներում մեր երկրի ազգերի ու ժողովուրդների ազատության և զարգացման նկատմամբ ՍՄԿԿ ցուցաբերած անսահման հոգատարությունն իր փիթխարի արդյունքներն է ունեցել: Նրանք կարճ ժամանակամիջոցում ապրեցին տնտեսական, սոցիալական ու կուլտուրական բուռն վերելք և սոցիալիզմի կառուցմամբ դարձան իրոք առաջավոր ազգեր ու ժողովուրդներ:

Անգնահատելի է Լենինի դերը ՍՍՀՄ կազմավորման գործում: Սովետական ֆեդերացիայի ու ավտոնոմիայի նրա սկզբունքները մարմնավորվեցին սովետական առաջին սահմանադրության մեջ, որն ազգերի ինքնորոշման, ազգային պետականության զարգացման, հավասարության, ինքնիշխանության և ֆեդերացիայի իր սկզբունքներով՝ հիմք հանդիսացավ Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Սահմանադրությունների համար: Լիակատար կամավորությունը համարելով սովետական հանրապետությունների միավորման ու եղբայրական դաշնադրության գլխավոր ու անսասան նախապայմանը, Լենինը հուշում էր իր համախոհներին զգույշ լինել անցյալում կեղեքվող ազգերի նկատմամբ, «որովհետև ավելի վատ բան չկա, քան ազգի անվստահությունը» (ПСС. т. 38, стр. 161):



Այս առումով որքա՜ն ուսանելի ու ոգևորիչ է Լենինի վերաբերմունքը Անդրկովկասյան ֆեդերացիայի կազմակերպման օրերին: Խորհուրդ տալով Անդրկովկասի կոմունիստներին կովկասյան հանրապետությունները միավորել «տնտեսական մեկ կենտրոնում», նա կոչ էր անում Անդրկովկասը դարձնել ազգային խաղաղության ու համերաշխության այնպիսի մի օրինակ, որը երբևէ չի եղել բուրժուազիայի օրոք և անհնարին է բուրժուական կարգերում: Անդրկովկասի ժողովուրդները սքանչելիորեն արդարացրին մեծ առաջնորդի հույսերը:

1922 թ. դեկտեմբերի 30-ին Մոսկվայում կայացած սովետների համամիութենական առաջին համագումարը հռչակեց մեկ միասնական պետության ստեղծումը, կազմավորվեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որը բանվորության գլխավորած սովետական ժողովուրդների և նրանց ղեկավար կոմունիստական կուսակցության ստեղծարար հսկայական ջանքերի արգասիքն էր: Հիրավի, «*ՍՍՀՄ կազմավորումը,*— ընդգծում է ՍՄԿԿ Կենտկոմը,— *կուսակցության տեսական ու քաղաքական աշխատանքի, սովետական ժողովուրդների բազմակողմանի փորձի արդյունքն էր և նրանց իղձերի արտացոլումը*»:

Սովետական բազմազգ պետության հետագա ամրապնդման համար հսկայական նշանակություն ունեցավ կուսակցության XII համագումարին հղած Վ. Ի. Լենինի՝ «Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի առթիվ» փաստաթուղթը, որում կրկին քննադատելով «ավտոնոմիզացիայի» ստալինյան նախագիծը, կուսակցության առաջնորդը հատկապես շեշտեց, որ սովետական ազգերի նորմալ փոխհարաբերության պահպանման համար անհրաժեշտ է ճշտորեն կիրառել պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, իրականում չխախտել ազգերի ու միութենական հանրապետությունների հավասարության իրավունքները, ազգային քաղաքականության ոլորտից բացառել վարչարարությունը և առավելագույն ուշադրություն հանդես բերել անցյալում կեղեքված ազգերի նկատմամբ: Ընդգծելով այն խոշոր նշանակությունը, որպիսին ունի ազգային հարցի ճիշտ լուծումը սոցիալիզմի կառուցման համար, Լենինը կուսակցության և սովետական ժողովուրդների առաջնահերթ խնդիրն էր համարում ՍՍՀՄ հետագա պահպանումն ու ամրապնդումը:

Այստեղ հարկ է նշել, որ իր դասակարգային էությամբ սովետական իշխանությունը լինելով ինտերնացիոնալիստական, սովետական հանրապետությունների աշխատավորությանը համախմբում է սոցիալիստական մեկ ընտանիքում: Անցած հիսուն տարիները ակներևաբար ապացուցեցին, որ ՍՄԿԿ կատարյալ հաջողությամբ իրագործեց Լենինի առաջադրանքը. «ավելի ամրապնդել ու զարգացնել սովետների ֆեդերատիվ հանրապետությունը, որպես դեմոկրատիայի անհամեմատ ավելի բարձր ու պրոգրեսիվ մի ձև, քան բուրժուական պառլամենտն է...» (ПСС, т. 36, стр. 71): Սովետական ժողովրդի այս պատմական տոնի առթիվ մի անգամ ևս նշենք, որ շնորհիվ ՍՄԿԿ լենինյան ղեկավարության, ՍՍՀՄ-ը շարունակում է լիովին շաղկապել յուրաքանչյուր ժողովրդի շահերն ու ինքնիշխանությունը մեկ միասնական կենտրոնացած միութենական բազմազգ պետության շահերին ու սուվերենիտետին: Եվ սա սովետական ժողովրդի մեծագույն նվաճումներից մեկն է, լենինիզմի հաղթանակը՝ հակալենինյան ամեն կարգի հոսանքների, նացիոնալիզմի ու շովինիզմի դեմ մղվող երկարամյա անվիճում պայքարում:

Ամփոփելով ՍՍՀՄ սովետների առաջին համագումարի արդյունքները, Մ. Ի. Կալինինն ասաց. «Հազարամյակներ են անցել այն օրից, ինչ մարդկության լավագույն մտածողները չարչարվում են լուծելու այն տեսական պրոբլեմը, որը հնարավորություն ընձեռի ժողովուրդներին առանց ահավոր տառապանքների, առանց փոխադարձ կռիվների ապրելու բարեկամաբար ու եղբայրաբար: Միայն այժմ, այս օրում է այդ նպատակով առաջին հիմքը դրվում» (М. И. Калинин. Статьи и речи. 1919—1935, М., 1936, стр. 95):

***

ՍՍՀՄ կազմավորման պատմական ակտից կես դար է անցել, որի ընթացքում մեր հայրենիքի ժողովուրդներն ու ազգերը վիթխարի քայլերով առաջ են ընթացել: Փոխադարձ օգնությամբ ու եղբայրական աջակցությամբ սովետական բոլոր ազգերն ու ժողովուրդներն իրենց երբեմնի տնտեսական, տեխնիկական և կուլտուրական հետամնացությունը հաղթահարած, այսօր թևակոխել են հասուն սոցիալիզմի հասարակությունը, որը ժողովուրդների սոցիալիստական համագործակցության բարձրագույն ձևն է:

Սովետական մեր հայրենիքն իր հոյակապ նվաճումներով անճանաչելի է դարձել: Շնորհիվ ՍՄԿԿ կատարած գաղափարախոսական անչափելի աշխատանքի, սոցիալիզմի կառուցման տարիներին առաջավոր արտադրահարաբերությունների համեմատ, կատարվեց սոցիալ-պատմական արմատական առաջընթաց՝ ՍՍՀՄ ազգերի ու ժողովուրդների սոցիալիստական վերածնունդը: Սովետական ժողովրդի գոյավորմանը զուգընթաց, ձևավորվեցին նաև տարբեր ազգությունների քաղաքացիների հոգևոր կերպարի ընդհանուր՝ ինտերնացիոնալիստական հատկանիշները, որոնք միաժամանակ մարմնավորում են սովետական բոլոր ժողովուրդների լավագույն տրադիցիաները: Մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով տոգորված սովետական ժողովրդի այս փառապանծ տոնն ի ցույց աշխարհի մի անգամ ևս ապացուցում է, որ ազգերի եղբայրությունը, նրանց համագործակցությունն ու փաստական հավասարությունը, նրանց հոգևոր ներթաքուն ունակությունների ծաղկումը հնարավոր է միայն այն երկրներում, ուր սոցիալիզմն է իշխում:

Միավորվելով մեկ կենտրոնացված պետության սիստեմում, սովետական ազգերը կարողացան պլանային սկզբունքով վարել ու զարգացնել տնտեսությունը, ավարտել սոցիալիստական հասարակության կառուցումը և կոմունիզմի հաստատուն հիմքերն արկանել: Այդ միավորման շնորհիվ ՍՍՀՄ-ը դարձավ հզոր ու անպարտելի սոցիալիստական տերություն, որն այսօր ընթանում է ողջ առաջավոր մարդկության երթի ավանգարդում: «ՍՍՀՄ կազմավորումը,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— ինտերնացիոնալիզմի հաղթանակն էր, կոմունիստական կուսակցության, բանվոր դասակարգի, միութենական հանրապետությունների բոլոր աշխատավորների քաղաքական իմաստնության դրսևորումը, ովքեր իրենց ուժերի միավորումը համարում էին հեղափոխության նպատակների կենսագործման և նրա նվաճումների պաշտպանության վճռական նախապայմանը» («Պրավդա», 5 նոյեմբերի, 1967 թ.): Հետևաբար, ՍՍՀՄ կազմավորման հիսնամյա տարելիցը կուսակցության իմաստուն քաղաքականության, նրա և սովետական ժողովրդի անքակտելի միասնության հաղթանակի տոնն է:

Հիսուն տարում դարերի ճանապարհ կտրել, դա, իրոք, հպարտություն հարուցող եղելություն է: Չէ՞ որ ՍՍՀՄ բազմաթիվ ժողովուրդներ սովետական կարգերի շեմը թևակոխեցին ֆեոդալական և նախաֆեոդալական ժամանակաշրջանի զարգացման մակարդակով, անգիր ու անգրականություն, խաշնարած ու վաչկատուն: Իրողությունն այն է, որ ընդամենը կես դարում ՍՍՀՄ ժողովուրդները վիթխարի թռիչք են գործել հանրային կյանքի բոլոր բնագավառներում: Նրանց նվաճումները հայտնի են աշխարհին: Սակայն, ավելորդ չէ վկայակոչել մի քանի էական ցուցանիշներ:



Հայտնի է, որ մեր դարում էլեկտրաէներգիայի արտադրությունը տվյալ երկրի տնտեսատեխնիկական հզորության կարևորագույն և բնորոշ ցուցանիշներից է: Այժմ տեսնենք, թե միութենական հանրապետություններում որպիսին է էլեկտրաէներգիայի արտադրության վիճակը.

| | | | 1913 р. | 1940 р. | 1970 р. |
|---|---|---|---|---|---|
| *ՌՍՖՍՀ* | *մլրդ* | *կվտ ժամ* | *1,3* | *30,8* | *470,2* |
| *Ուկրաինա* | » | » | *0,5* | *12,4* | *137,6* |
| *Բելոռուսիա* | *մլն* | » | *3,0* | *508,4* | *15 083,2* |
| *Ուզբեկստան* | *մլրդ* | » | *3,3 (մլն)* | *0,5* | *18,3* |
| *Ղազախստան* | *մլն* | » | *1,3* | *632* | *34 700* |
| *Վրաստան* | » | » | *19,8* | *742* | *8 964* |
| *Ադրբեջան* | » | » | — | *1 827* | *12 000* |
| *Լիտվա* | » | » | — | *81,0* | *7 384* |
| *Մոլդավիա* | » | » | *0,9* | *17,2* | *7 600* |
| *Լատվիա* | *մլրդ* | » | — | *0,25* | *2,7* |
| *Կիրգիզիա* | *մլն* | » | — | *52* | *3 560* |
| *Տաջիկստան* | » | » | — | *62,1* | *3 237,3* |
| *Հայաստան* | » | » | *5,1* | *395* | *7 302 (71 թ.)* |
| *Թուրքմենիա* | » | » | *2,5* | *83,5* | *1 800* |
| *Էստոնիա* | » | » | — | *190* | *11 574,8* |

Վերլուծող մտքի համար այս թվերն արտահայտում են այն պատմական թռիչքը, որը կատարեց սովետական ժողովուրդը Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ: Այսպես, օրինակ, եթե ՌՍՖՍՀ տերիտորիայում երկու տարի առաջ էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացավ 362 անգամ (1913 թ. համեմատ), ապա Հայաստանում այն աճեց 711 անգամ: Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի քանակը 1970 թ. Հայաստանում կազմել է 2426 կվտ/ժամ, Անգլիայում՝ 4448, Ֆրանսիայում՝ 2897, ԳՖՀ-ում՝ 3997 կվտ/ժամ:

ՍՍՀՄ գոյության տարիներին վիթխարի թափ ստացավ սովետական ժողովրդի կուլտուրական վերելքը, ծաղկեց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական մշակույթը: Թե որքան խորն է վարել կուլտուրական հեղափոխությունը սովետական ժողովուրդների ու ազգերի հոգևոր աշխարհը, դա կարելի է տեսնել հետևյալ տվյալներից: 1950 թ. մեր երկրում վերացվեց փաստական անգրագիտությունը: Այժմ ՍՍՀՄ հանրակրթական դպրոցներում սովորում է (1970 թ.) 49,4 *մլն* հոգի: 1914 թ. համեմատ սովորողների թիվն ավելացել է 5,1, իսկ 5—10-րդ դասարաններում՝ 46 անգամ: Սրան պետք է գումարել բանվորական և գյուղացիական երիտասարդների դպրոցներում 4 *մլն* սովորողներ ևս: Հեշտ է ասել, որ 1918—1970 թթ. Սովետական Միությունում կառուցվել է 98 հազար հանրակրթական դպրոց՝ 32 *մլն* աշակերտական տեղով. իսկ 1946—1970 թթ. կոլտնտեսությունները կառուցել են 59 հազար դպրոց՝ 8 *մլն* աշակերտական տեղով. 2,6 *մլն* ուսուցիչներ (հանրակրթական դպրոցներում) 1914 թ. 280 հազարի դիմաց, 204 մանկավարժական ինստիտուտներ՝

833 հազար ուսանողներով և 407 մանկավարժական ուսումնարաններ՝ 284 հազար ուսանողներով:

Սրանով չի վերջանում մեր կուլտուրական վերընթացը: Եթե 1914—15 թթ. ցարական Ռուսաստանն ուներ 105 բարձրագույն և 450 մասնագիտական միջնակարգ հաստատություններ՝ 180 հազար ուսանողներով, ապա այժմ ՍՍՀՄ-ում կան (1970 թ.) 805 բուհ և 4223 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ՝ 9 *մլն* սովորողներով, որոնցից 4,6 *մլն* բուհերում, որը գրեթե 3 անգամ ավելի է, քան Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՀ-ում և Իտալիայում միասին վերցրած: Միայն 1970 թ. ուսանողներին պետությունը վճարել է մեկ միլիարդ ռուբլուց ավելի թոշակ:

Վիճակագրական տվյալներով սովետական իշխանության տարիներին 23,8 *մլն* մասնագետներ ավարտել են բուհերն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները: 1970—71 ուսումնական տարում բոլոր ուսումնական հաստատություններում սովորել են 80 *մլն* հոգի: Սա նշանակում է, որ ՍՍՀՄ յուրաքանչյուր երեք քաղաքացիներից մեկը ուսանում է: Նման անօրինակ տեմպերով առաջ ընթացող երկիրն այժմ թողարկում է համաշխարհային արդյունաբերական արդյունքի 20 տոկոսը:

Այս որքան համապարփակ, նույնքան և պերճախոս թվերն ինքնին հերքում են հակակոմունիզմի մունետիկների ամեն բնույթի հերյուրանքները սովետական ազգերի վիճակի ու փոխհարաբերությունների վերաբերյալ:

ՍՍՀՄ մեծագույն նվաճումներից մեկն էլ այն է, որ կարգացած սոցիալիզմի պայմաններում գնալով ծաղկում են սովետական ազգերը և ավելի են մերձենում միմյանց, ամրանում են նրանց եղբայրական կապերը, իրոք սերտանում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով տոգորված բարեկամությունը: Ահա թե ինչու այդ հարաբերությունների շնորհիվ մեր երկրում գոյավորվել է պատմական նոր հանրություն՝ *սովետական ժողովուրդը:*

Սովետական յուրաքանչյուր ժողովրդի նվաճումը, միաժամանակ ողջ սովետական ժողովրդի աշխատանքով ձեռք բերված հաջողությունն է: Բոլոր ուժերով լծվելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, սովետական ժողովուրդներն իրենց բարեկամական հարաբերություններով ավելի կամրապնդեն ՍՍՀՄ-ում կառուցվող կոմունիստական հասարակության հիմքերը, հաջողությամբ կիրագործեն ՍՄԿԿ XXIV համագումարի հոյակապ կանխագծումները:



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

Ն. Խ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ

# ԿԵՍ ԴԱՐ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԴԱՇԻՆՔՈՒՄ

ՀԱԶՄԱԴԱՐՅԱ իր պատմության ընթացքում, այլ ժողովուրդների նման, հայ ժողովուրդը ևս երազել է ունենալ հասարակական արդար կարգեր, աշխատանքի թագավորություն ու երջանկություն, թոթափել օտարի լուծը և վերականգնել խորտակված իր ազգային պետականությունը: Սակայն նրա դերմարդկային ճիգերը չեն պսակվել քիչ թե շատ տևական հաջողությամբ: Նրա լուսավոր անուրջները սկսեցին իրականանալ միայն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթությամբ, հեղափոխություն, որի ավանգարդում ռուս, ուկրաինացի և այլ ազգերի լենինյանների շարքերում աներեր մարտնչել են նաև մեր ժողովրդի անվեհեր զավակները:

Եվ ահա, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաջորդ օրն իսկ, Ռուսաստանի նորաստեղծ սովետական իշխանության քաղաքականությունը խարսխվեց պրոլետարական ինտերնացիոնալիզմից բխող՝ ազգերի ու ժողովուրդների լիակատար ինքնորոշման, նրանց միջև իրավահավասար ու եղբայրական հարաբերությունների հաստատման, ազգային ինքնիշխան սովետական պետականության ստեղծման լենինյան գրանիտյա պատվանդանին: Առանց հետևողականորեն կենսագործելու ՍՄԿԿ վարած ազգային քաղաքականության վերոհիշյալ սկզբունքները, անհնարին էր վերացնել երկրում ապրող հարյուրից ավելի ազգերի ու ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական խոր անհավասարությունը, ուստի և ապահովել սոցիալիզմի կառուցումը:

Դեռևս հարյուր քսանչորս տարի առաջ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը կանխատեսել են, որ բռնության լծից ժողովուրդների ազատագրման նախապայմանը մասնավոր սեփականության, մարդու շահագործման վերացումն ու պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումն է, որ տապալելով կապիտալի իշխանությունը, պրոլետարիատը հնարավորություն կտա բոլոր ազգերի աշխատավոր-

ներին դառնալու իրենց սեփական երկրի տերը և դրանով իսկ պարարտ հող կստեղծի նրանց ինտերնացիոնալ համախմբման ու կամավոր միավորման համար։

Զարգացնելով մարքսիզմի այդ սկզբունքային դրույթը, Լենինը պարզաբանում էր, որ առանց իրականում ազգամիջյան հարաբերությունների դեմոկրատական կազմակերպման, հետևաբար և առանց պետական անջատման ազատության, անհնարին է բոլոր ազգերի բանվոր ու աշխատավոր զանգվածների՝ բուրժուազիայի դեմ մղվող քաղաքացիական կռվի հաղթական ելքը։

Այդ ճշմարտության փայլուն ապացույցը հանդիսացավ Հոկտեմբերյան հաղթանակից հետո բռնկված քաղաքացիական կռվում Ռուսաստանի կեղեքիչների բանակների ու նրանց սատարող միջազգային իմպերիալիզմի պարտությունը, որը հնարավոր եղավ իրականացնել Ռուսաստանի բոլոր ազգերի ու ժողովուրդների ամուր դաշինքով։

Աշխատավորության թափած արյամբ սրբագործված և տարբեր ազգերի ու ժողովուրդների եղբայրական դաշինքով զոդված կամավոր միավորումը սոցիալիզմի վերջնական հաղթանակի հուսալի առհավատչյան հանդիսացավ։ Նրանք սեփական պայքարի փորձով համոզվեցին որ ազգերի լենինյան ինքնորոշումն ապահովում է պետական ինքնիշխանության, ազգային սոցիալիստական պետականության հաստատումը։

Սկզբից ևեթ կանգնած լինելով սովետական նոր իրավահարաբերությունների, պետական միանգամայն նոր համակարգի ստեղծման բարդ գործի ղեկի մոտ, Լենինը մշտապես մտահոգված էր ամրապնդելու բանվորների ու գյուղացիների եղբայրական դաշինքը, որը կոչված էր անսասան դարձնելու հեղափոխական բանվոր դասակարգի նորաստեղծ դիկտատուրան։ Պատահական չէր ամենևին, որ «Աշխատավոր ու շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայում» ազդարարվում էր. «Որպես սովետական ազգային հանրապետությունների ֆեդերացիա, Սովետական Ռուսաստանյան Հանրապետությունը հիմնվում է ազատ ազգերի ազատ դաշինքի վրա»։ Այդ դեկլարացիայի հեղինակ Վ. Ի. Լենինը 1918 թ. հունվարին Սովետների երրորդ համագումարում հայտարարեց. «...այժմ վերջնականապես ճանաչված է սոցիալիստական Սովետական հանրապետությունը, որպես Ռուսաստանում բնակվող զանազան ազգերի ազատ հանրապետությունների ֆեդերացիա... Մենք իշխում ենք ոչ թե բաժանելով, ըստ հին Հռոմի դաժան օրենքի, այլ միացնելով բոլոր աշխատավորներին կենդանի շահերի, դասակարգային գիտակցության անքակտելի կապերով։ Եվ մեր միությունը, մեր նոր պետությունն ավելի ամրակուռ է, քան բռնադատական իշխանությունը, որը ստով ու երկաթով միավորում է իմպերիալիստների համար հարկավոր արհեստական պետական կազմավորումները» (ПСС, т. 35, стр. 287—288)։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությամբ հռչակված ֆեդերացիան, որը պրոլետարիատի դիկտատուրայի մարմնացումն է, կեսդարյա գոյությամբ ու աննախընթաց նվաճումներով է ապացուցել իր կենսունակությունը։ Այն ազգային հարցի լուծման իրավա-պետական միանգամայն նոր ձև է, որին հատուկ են սոցիալիստական դեմոկրատիան, միավորվողների եղբայրությունը և իրավահավասարությունը, ազգային պետությունների սուվերենությունը, սոցիալիստական արտադրահարաբերությունների արմատավորումը, մարդկանց շահագործման վերացումը, կոմունիստական



հումանիզմը, աշխատավորական զանգվածների ինքնակառավարումը և այլն։

Ուկրաինայի բանվորներին ու գյուղացիներին հասցեագրած իր նամակում Լենինը գրել է. Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չհանդուրժեր մի ազգի կողմից մյուսի նկատմամբ, այնպիսի միություն, որ հիմնված լիներ լիակատար վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա։ Նման միությունը չի կարելի մեկեն իրագործել, դրան հարկավոր է հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ, ջանալով, որպեսզի գործը չփչանա, որպեսզի անվստահություն չծագի, որպեսզի վերացվի այն անվստահությունը, որը մնացել է կալվածատերերի և կապիտալիստների դարավոր կեղեքումից, մասնավոր սեփականության և դրա բաժանման ու վերաբաժանման համար եղած դարավոր թշնամանքից։

Նման կատարյալ դեմոկրատական, ինտերնացիոնալիստական ու եղբայրական վեհ սկզբունքներով էր զոդում Լենինը ազատագրված սովետական ազգերի դաշինքը։ Այժմ, երբ սովետական բոլոր ժողովուրդները և աշխարհի առաջավոր մարդկությունը հանդիսավորությամբ տոնում են ՍՍՀՄ կազմավորման կեսդարյա հոբելյանը, անհրաժեշտ է գեթ համառոտակի պատասխանել այն հարցին, թե ի՞նչ ստացավ հայ ժողովուրդը, երբ կենսագործելով ազգերի ինքնորոշման լենինյան իրավունքը, ստեղծեց իր ինքնիշխան ազգային պետականությունը և դարձավ ՍՍՀՄ իրավահավասար անդամը։

Ինչ խոսք, որ միայն սովետական ֆեդերացիայում հնարավոր եղավ ժողովուրդների ինտերնացիոնալ միասնության պահանջները ներհյուսել ազգային սուվերենության հետ, որի շնորհիվ անցյալում պետականությունից զուրկ ազգերը հնարավորություն ստացան ազատորեն դրսևորելու իրենց ստեղծագործական կարողությունները, մարմնավորելու և անարգել կատարելագործելու նոր, սոցիալիստական հասարակություն կերտելու իրենց մտահղացումները։ Մինչև սովետական կարգերի հաստատումը զրկված լինելով ազգային պետականությունից, հայ ժողովուրդը շատ բան կորցրեց. բռնակալների կեղեքման լծի տակ նա տերիտորիապես ու պետականորեն մասնատվեց, նրա մի զգալի մասը անգթորեն բնաջնջվեց, մի զգալի մասն էլ ստիպողաբար հեռացավ իր հայրենի երկրից։ Իսկ սոցիալիստական կարգերի հաստատման նախօրյակին երկիրը քայքայման ծայր աստիճանի հասավ։

Այս ամենը հայ ժողովրդի համար այժմ դառն անցյալ է։ Սովետական սոցիալիստական հայ ազգը ՍՍՀ Միության մեջ, եղբայրական ազգերի ընտանիքում կես դարից ավելի է, ինչ նոր կյանք է կերտում՝ նոր պետականության բարգավաճման պայմաններում։ Դարերով այլ ազգերից օգնություն հայցող մեր ժողովուրդը այսօր ինքն է օգնում աշխարհի կեղեքվող ժողովուրդներին։ Սա այն նոր ճակատագիրն է, որ նվաճված է լենինյան դրոշի ներքո և ամրապնդված՝ սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ համերաշխությամբ։ Հիրավի, Սովետական Միության կազմի մեջ ավելի ամրապնդվեցին և կատարելագործվեցին Հայկական ՍՍՀ պետական բարձրագույն սուվերեն օրգաններն ու նրա կառավարման համակարգը։ Օրենքների հրապարակման, մայրենի լեզվով պետական ու դատական գործերի վարման իրավունք, սեփական սահմանադրություն, հիմն, գերբ. այս ամենը մեր ժողովուրդը չուներ դարերով և

ձեռք բերեց միայն սովետների օրոք, սոցիալիստական հեղափոխության շնորհիվ։

Հայ ժողովուրդն իր պատմության սովետական փուլում միայն կարողացավ դառնալ ինքնիշխան, բայլել մարդկության առջևից ընթացող սովետական սոցիալիստական ազգերի ավանգարդում։ Այս ամենը մեր ժողովրդի ձեռք բերած որքան անվիճելի, նույնքան և իմաստալի նվաճումներից են։

ՍՍՀՄ ազգերն ու ժողովուրդներն իրենց պատմական միավորման ու եղբայրական դաշինքի հիսնամյակը դիմավորում են դարակազմիկ նվաճումներով՝ հասարակական գործունեության բոլոր բնագավառներում։

Անցած հիսուն տարիներին արմատապես փոխվել է մեր մեծ Հայրենիքի դասակարգերի և հասարակական խավերի կերպարանքը։ Բնակչության քանակային աճին զուգընթաց, մեծապես բարձրացել է աշխատավորների հոգևոր ու կուլտուրական մակարդակը։ Նվազել է գյուղական բնակչության թիվը, բայց ավելացել է բանվորների ու մտավորականների քանակը։ Իրենց հոգևոր մակարդակներով մտավորականներն ու ծառայողները ակներևորեն մերձենում են։ Գյուղի և քաղաքի էական տարբերությունների վերացման համընթաց կրճատվում է անմիջական արտադրողների թիվը, աճում է ոչ նյութական ճյուղերում զբաղված մարդկանց քանակը։

1970 թվականին ՍՍՀՄ-ում զբաղված բնակչությունը կազմում էր 115 միլիոն 453 հազար մարդ, որից սովորողներ էին 52 միլիոն 658 հազարը։ Այլ կերպ ասած՝ սրանք կազմում էին աշխատող բնակչության գրեթե կեսը։ Աշխատող բնակչության 56 տոկոսը (66 մլն) բանվորներ են, իսկ 30 միլիոնը՝ մտավորականներ ու ծառայողներ։ Քաղաքների բուռն աճի շնորհիվ 1972 թվականին քաղաքային բնակչության թիվը կազմում է 142,6 մլն մարդ (58 տոկոս), իսկ գյուղական բնակչությանը՝ 103,7 մլն (42 տոկոս)։ ՍՍՀՄ յուրաքանչյուր 10 աշխատողից 5-ը բանվոր է, 3-ը մտավորական և ծառայող, 2-ը՝ կոլտնտեսական։ Մինչդեռ անցյալում աշխատունակ բնակչության 80—90 տոկոսը զբաղված էր նյութական արտադրության մեջ։ Նման պատմական մեծանշանակ տեղաշարժերով է ՍՍՀՄ-ը դիմավորում իր կեսդարյա փառավոր տոնը։

ԴԱՐԱՎՈՐ իր ճանապարհին բազում փորձություններ ու ողբերգություններ տեսած, հերոսական մաքառման ու ոգորումների երկար ուղի անցած հայ ժողովուրդն իր ազատությունն ու երջանկությունը գտավ միայն լենինյան անմահ գաղափարների շնորհիվ, մեծ Հոկտեմբերի կենսատու արևի ներքո։

Ավելի քան կես դար, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում, հայ ժողովուրդը կառուցում է նոր, սոցիալիստական կյանք և վստահորեն առաջ է ընթանում կոմունիզմ տանող լուսավոր ճանապարհով։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանը վիթխարի՝ իր բազմադարյա պատմության մեջ աննախադեպ հաջողությունների է հասել թե՛ նյութական, և թե՛ հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում։

Այսօր Սովետական Հայաստանը ՍՍՀ Միության տասնհինգ իրավահավասար հանրապետություններից մեկն է՝ զարգացած ժամանակակից արդյունաբերությամբ ու մեքենայացված գյուղատնտեսությամբ, առաջավոր գիտությամբ ու մշակույթով։

Ակնառու այս հաջողությունները հնարավոր դարձան կոմունիստական



կուսակցության վարած լենինյան ազգային քաղաքականության, Սովետական Միության ժողովուրդների անխախտ բարեկամության շնորհիվ, ժողովուրդներ, որ կամավոր կերպով 50 տարի առաջ միավորվել են եղբայրական մեծ ընտանիքում։

Այս հիսուն տարիների համատեղ կյանքը, աշխատանքը, հերոսական մաքառումները ստեղծեցին սովետական բազմազգ ժողովուրդների մեջ փոխըմբռնողության, եղբայրական սիրո ու հարգանքի մեծ մի զգացում, որն ուկրաինական ժողովրդական բանաստեղծի խոսքով «միասնական ընտանիքի զգացում» անունն ստացավ։ Հիսուն տարի անընդհատ սովետական ժողովուրդները այդ միասնական ընտանիքի զգացումով կերտեցին ու կառուցեցին, ստեղծեցին մի հզոր պետություն, որն աշխարհի խաղաղության ու ժողովուրդների եղբայրության ամրակուռ պատվարն է։ Եվ սովետական ժողովուրդն իր փառապանծ հոբելյանը՝ աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության հիսնամյակը, տոնում է անսասան միասնությամբ։

Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները, սովետական ժողովուրդը իրեն հատուկ եռանդով ու աշխատանքային սխրանքներով օրավուր է՛լ ավելի է ամրապնդում մեր մեծ հայրենիքի հզորությունը, կրկնապատկում ժողովրդական տնտեսության ու մշակույթի ասպարեզում ձեռք բերած նվաճումները։

Այդ միասնական ընտանիքի մեծ զգացումով է լի հայ ժողովրդի սիրտը։ Նա իրեն հատուկ նվիրումով ու աշխատասիրությամբ կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցն է, և իր ազնիվ վաստակն է բերում սովետական ժողովուրդների մեծ ընտանիքի ընդհանուր գործին։

Մեր երկրում ապրող ազգությունների ու ժողովուրդների միասնության, բարեկամության ու եղբայրության մեծ տոնը կյսակվի արտադրաուժերի, գիտության ու մշակույթի զարգացման, կոմունիզմ կառուցող ժողովրդի բարեկեցության բարձրացման ասպարեզում ձեռք բերած նշանակալի հաջողություններով։

ՀԻՍՈՒՆ տարի առաջ, կայացավ Հայաստանի Սովետների առաջին համագումարը։ Համագումարի բերելով ժողովրդական տնտեսության վերականգնման առաջին տարիների արդյունքները, համագումարը գոհունակությամբ նշեց սովետական հասարակարգի, բանվորա-գյուղացիական Ռուսաստանի փրկարար դերը ազատագրված հայ ժողովրդի կյանքում։

Համագումարն ընդունեց Հայկական ՍՍՀ սահմանադրություն, նախանշեց հանրապետության հետագա զարգացման ու ամրապնդման ուղիները։

Հանրապետության կառավարությունը գլխավորում էր Վ. Ի. Լենինի աշակերտ և զինակից Ա. Ֆ. Մյասնիկյանը։ Կոփված ռուսական պրոլետարիատի հեղափոխական մարտերում, լինելով Բելոռուսիայում սովետական իշխանության կազմակերպիչներից մեկը, նա հեղափոխականորեն կիրառում էր լենինյան ազգային քաղաքականությունը, օգտագործում կուսակցական-պետական գործունեության այն վիթխարի փորձն ու ավանդույթները, որ կուտակել էր Ռուսաստանի կենտրոններում։

Սոցիալիստական հասարակության կառուցման համար մղվող պայքարում մեծ նշանակություն ունեին սովետական ազատ և իրավահավասար ժողովուրդների դաշինքն ու եղբայրական համագործակցությունը։ Նման համա-





գործակցության փայլուն օրինակ էր Ռուսաստանյան Ֆեդերացիան, որի փորձն ընդօրինակում էին Անդրկովկասի ժողովուրդները։ 1922 թվականին Անդրկովկասի սովետական հանրապետությունները՝ Հայաստանը, Վրաստանը և Ադրբեջանը, միավորվելով կազմեցին Անդրկովկասի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետություն (Անդրֆեդերացիա)։

Անդրկովկասյան հանրապետությունների կամավոր միավորումը ֆեդերատիվ պետական միության մեջ կարևոր դեր խաղաց սովետական իշխանության ամրապնդման, եղբայրական հանրապետությունների տնտեսության ու մշակույթի զարգացման գործում, ապահովեց սոցիալիզմի հաղթանակը Անդրկովկասում։ «ԱՍՖՍՀ-ն իրենից ներկայացնում էր սովետական հանրապետությունների միջև փոխհարաբերությունների նոր տիպ։ Սովետական պետական շինարարության պրակտիկայում առաջին անգամ իրագործվեց անկախ հանրապետություններ միավորող միութենական ֆեդերացիայի գաղափարը։ Անդրկովկասի ազգային շինարարության փորձը հարստացրեց ֆեդերացիայի մասին մարքս-լենինյան ուսմունքը նոր դրույթներով, որոնք օգտագործվեցին ՍՍՀ Միության կազմավորման ժամանակ»[1]։

Բազմազգ պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության, ստեղծումը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության կարևորագույն նվաճումներից մեկն էր, լենինյան ազգային քաղաքականության մեծագույն հաղթանակը, որն ապահովեց ՍՍՀՄ ազգերի միջև բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը, բոլոր ժողովուրդների տնտեսական և մշակութային զարգացումը։ ՍՍՀ Միությունը ժողովուրդների ինտերնացիոնալ և ազգային միավորման նոր ձև է, պետական կազմակերպության այն ձևը, որը երաշխավորում է ամբողջ Միության և յուրաքանչյուր առանձին հանրապետության շահերի զուգակցումը և լավագույնս ապահովում ժողովուրդների բազմակողմանի համագործակցությունը, նրանց իսկական հավասարությունը և անկախությունը։

ՍՍՀ Միության մեջ համախմբվեցին պատմական տարբեր ճակատագրերի տեր ժողովուրդներ. տարբեր թե՛ քանակով, թե՛ զբաղեցրած տարածքով, թե՛ լեզվով և թե՛ զարգացման մակարդակով, յուրաքանչյուրն իր ինքնատիպ մշակույթով ու ավանդույթներով։ Սակայն բոլորին միավորում էր ընդհանուր շահը՝ համատեղ ջանքերով ապահովել բոլոր ժողովուրդների նյութական և հոգևոր բարգավաճումը, պաշտպանել ու ամրապնդել մեծ Հոկտեմբերի նվաճումները, կառուցել սոցիալիզմ։ Չէ որ ՍՍՀՄ-ը ոչ թե սոսկ պետական կազմավորում է,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը Սովետական Հայաստանի 50-ամյակին նվիրված ճառում,— այլ սովետական բոլոր ժողովուրդների կամավոր անխախտ սոցիալիստական դաշինք, որը դարձել է նրանց միս ու արյունը, կազմում է նրանց պետական գիտակցության ամենագլխավոր, բնորոշ գիծը։

ՍՍՀՄ կազմավորումը հնարավոր դարձրեց մեր երկրի ժողովուրդների քաղաքական և տնտեսական միասնությունը, որի շնորհիվ նախկինում հետամնաց շրջանները կարողացան արագ թափով զարգացնել իրենց տնտեսությունը, հասնել առաջավորներին և դուրս գալ աշխարհի առավել զարգացած արդյունաբերական երկրների շարքը։

ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին» որոշման մեջ ասված է. «Տնտեսական, սոցիալ-քաղաքական և մշակութային զարգացման մակարդակների հավասարեցումը և վերելքը ՍՍՀՄ բոլոր հանրապետությունների արագ ու բազմակողմանի առաջադիմության կարևոր գործոնը հանդիսացան։ Եղբայրական միաբանության մեջ անսովոր լիակատարությամբ բացահայտվեցին սովետական պետության բոլոր ազգերի ու ազգությունների ստեղծարար եռանդը, ստեղծագործական ունակությունները, տաղանդները»։

Շահերի և նպատակների ընդհանրությամբ միավորված, անքակտելի բազում թելերով միմյանց կապված սովետական ժողովուրդների համատեղ կյանքը ՍՍՀՄ կազմում, լենինյան անխախտ բարեկամությունն ու համագործակցությունը ծնում են վեհ, ամենահաղթ զգացմունքներ, որոնք բարգավաճման ու երջանկության անհատնում ակունք ու հուսալի երաշխիք են հանդիսանում յուրաքանչյուր հանրապետության և ողջ երկրի համար, դառնում են մեր աշխատանքային հաջողությունների ու սխրանքների հուսալի գրավականը, սոցիալիստական հասարակարգի անպարտելիության ամուր հիմքը։ «Համաշխարհային պատմությունը տասնյակ ազգերի ու ազգությունների փոխհարաբերությունների մեջ դեռ չէր տեսել շահերի ու նպատակների, կամքի ու գործողությունների այդքան անխախտ միասնություն, այնպիսի հոգեհարազատություն, վստահություն և փոխադարձ հոգածություն, որպիսիք մշտապես դրսևորվում են մեր եղբայրական Միության մեջ»[1]։ Այդ բարեկամության ու հարազատության կենարար կրակով է լուսավորված ու ջերմացած Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների ամբողջ կեսդարյա կյանքը։

Սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Հայաստանի աշխատավորները պատմական կարճ ժամանակահատվածում վերացրին տնտեսական հետամնացությունը, ամրապնդեցին սովետական հասարակարգի քաղաքական և տնտեսական հիմքերը և սոցիալիզմի կառուցման համար ստեղծեցին ռեալ բազա։

Սովետական Միության, այդ թվում և Հայաստանի համար արդյունաբերության զարգացման վճռական շրջան հանդիսացան նախապատերազմյան հնգամյակները։ Հատկապես այդ ժամանակաշրջանում ստեղծվեց սոցիալիզմի նյութատեխնիկական բազան։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը երկրի ինդուստրացումը դիտում էին իբրև ողջ ժողովրդական տնտեսության արագ վերելքի հիմք, իբրև ՍՍՀՄ ինքնուրույնության և տնտեսական անկախության երաշխիք։

Հայաստանում, ինչպես և ՍՍՀՄ մյուս հանրապետություններում, կապիտալ ներդրումների հիմնական մասը հատկացվում էր արտադրության միջոցներ արտադրող ճյուղերի զարգացմանը։ Հանրապետության ծանր արդյունաբերության զարգացումն արտահայտվեց լեռնահանքային, հատկապես գունավոր մետաղաձուլության և քիմիական արդյունաբերության, էներգետիկայի և մեքենաշինության վերելքով։

Մեր հայրենիքի վրա հիտլերյան զավթիչների ուխտադրուժ հարձակումը ընդհատեց սովետական մարդկանց խաղաղ ու ստեղծարար աշխատանքը։ Սկսվեց սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմն ընդդեմ ֆաշիստական Գերմանիայի։ Հարձակվելով ՍՍՀՄ-ի վրա, հիտլերականները փայ-

1 «Պրավդա», 22 փետրվարի 1972 թ., № 53։

1 «Պրավդա», փետրվարի 22, 1972 թ.։

փայլում էին այն հույսերը, թե Սովետական Միության բազմազգ բնույթը
կխարխլի նրա պաշտպանունակությունը, թե ռազմական առաջին իսկ անհա-
ջողություններից հետո ծայր են առնելու ազգամիջյան երկպառակություններ,
և երկիրը մասնատվելու է բազմաթիվ փոքր, թույլ պետությունների: Բայց
ֆաշիստները չարաչար սխալվեցին: Մեր երկրի բոլոր ժողովուրդները ոտքի
ելան՝ ուս-ուսի պաշտպանելու սոցիալիստական հայրենիքը, առավել սերտո-
րեն համախմբվեցին հարազատ կոմունիստական կուսակցության և սովետա-
կան կառավարության շուրջը: Պատերազմի դաժան ու ահեղ փորձության տա-
րիներին նրանք ապացուցեցին մեծ Միության անսասան ամրությունն ու հզո-
րությունը, իրենց բարոյա-քաղաքական միասնության ու բարեկամության
անհերքելիությունը, սոցիալիստական հասարակարգի առավելությունները: Սովե-
տական մյուս ժողովուրդների հետ, այդ քննությունը պատվով բռնեց նաև հայ
ժողովուրդը, որը կուսակցության առաջին իսկ կոչով ոտքի ելավ՝ պաշտպա-
նելու մեծ Հոկտեմբերի նվաճումները:

Ավելի քան քառորդ դար է բաժանում մեզ հերոսական այդ օրերից: Բայց
ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել:

Արդի պայմաններում առանձնահատուկ կարևորություն է ստանում միու-
թենական հանրապետությունների և Միության տնտեսական առանձին շրջան-
ների ծրագրված, ներդաշնակ համագործակցությունը: Արտադրության մաս-
նագիտացման և կոոպերացման խորացմանը զուգընթաց տնտեսական այդ
համագործակցությունն ավելի է ծավալվում, ստեղծելով տնտեսական զար-
գացման նոր նախադրյալներ:

Եղբայրական հանրապետությունների միջև տնտեսական կապերի ընդ-
լայնման շնորհիվ Հայկական ՍՍՀ-ն ստանում է այն ամենը, ինչ ան-
հրաժեշտ է նրա ժողովրդական տնտեսության զարգացման համար: Նախ և
առաջ՝ գունավոր մետաղներ և հանքային վառելանյութ, որոնք չկան հանրա-
պետությունում: ՌՍՖՍՀ-ն և Ուկրաինական ՍՍՀ-ն մատակարարում են սև
մետաղների գլանվածք, քարածուխ, տեխնոլոգիական բազմատեսակ սարքա-
վորումներ, էքսկավատորներ, բուլդոզերներ, կոմբայններ, տրակտորներ և
գյուղատնտեսական այլ մեքենաներ: Բելոռուսական ՍՍՀ-ն՝ բեռնատար ավ-
տոմեքենաներ, գործնոցային-ձամլիչ սարքավորում, փայտամշակման հաս-
տոցներ, շինարարական և ճանապարհային մեքենաներ, էլեկտրական սար-
քեր: Հարևան հանրապետություններից՝ Ադրբեջանից և Վրաստանից, ստաց-
վում են նավթամթերք, գլանվածք, զանազան խողովակներ, մեկուսիչ նյու-
թեր, էլեկտրաեռակցող սարքեր և այլն:

Հայկական ՍՍՀ-ն, իր հերթին, եղբայրական հանրապետություններ է
առաքում արդյունաբերական բազմատեսակ արտադրանք. մոլիբդենի և ցինկի
կոնցենտրատներ, ձուլված պղինձ, ալյումինի գլանվածք, սինթետիկ կաուչուկ,
շվատողներ, բարձր ճշգրտության մետաղահատ հաստոցներ, գեներատորներ,
էլեկտրաշարժիչներ, ուժային տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակա-
յաններ, սարքեր, կոմպրեսորներ, շինարարական քար և այլն:

Առանց չափազանցության կարելի է ասել, որ հիմա դժվար է գտնել մի
բնագավառ, ուր սերտորեն միահյուսված չլինեն Սովետական Միության ժո-
ղովուրդների եղբայրական կապերը: Սովետական ժողովուրդների բարեկա-
մությունը ոչ միայն բարոյական մեծ ուժ է, այլև նյութական կյանքի շատ
խնդիրների լավագույն լուծման հզոր գործոն: Նոր գործարան ենք հիմնում,



թե յուրացնում ենք ընդերքի հարստությունները, նոր ջրանցք կամ ջրամբար
ենք կառուցում, թունել ենք փորում ժայռերի մեջ, թե էլեկտրակայան գործար-
կում, լուծում ենք գիտատեխնիկական մի նոր խնդիր, թե բեմադրում ենք նոր
ֆիլմ կամ ներկայացում՝ ամենուր զգում ենք մեր բարեկամների եղբայրա-
կան աջակցությունն ու համագործակցությունը: Օգնելով միմյանց, յուրաքան-
չյուր միութենական հանրապետություն հարստանում և հարստացնում է փո-
խադարձաբար, դրանով իսկ ապահովելով տնտեսության ու մշակույթի բոլոր
ասպարեզների համակողմանի զարգացումը:

Սովետական Հայաստանի աշխատավորությունը, իրավահավասար, եղ-
բայր ժողովուրդների միաձույլ ընտանիքում, Սովետական Միության կոմու-
նիստական կուսակցության ղեկավարությամբ, ավելի քան կես դար իր ստեղ-
ծագործ աշխատանքով հաջողությամբ կենսագործում է լենինյան վեհ գաղա-
փարները: Այդ ճանապարհին հարկ է եղել և դեռ հարկ է լինում հաղթահարել
շատ դժվարություններ, լուծել բարդ խնդիրներ: Եվ դա լիովին հասկանալի է,
քանի որ լուսավոր գագաթների նվաճումը մեծ խիզախումներ ու հսկայա-
կան ջանքեր է պահանջում: Սովետական մարդիկ նորանոր բարձունքներ նվա-
ճելով, հաստատաքայլ առաջ են ընթանում դեպի նվիրական նպատակը՝ կո-
մունիզմ: Դա դարձել է մեր ժողովրդի հանապազօրյա գործը:

Սովետական Հայաստանի տնտեսության բուռն զարգացումը հիմք հան-
դիսացավ ժողովրդի ընդհանուր բարեկեցության վերելքի համար: Աշխատա-
վորության կենսամակարդակի բարձրացման ակնառու ցուցանիշ է նրանց
ռեալ եկամուտների աճը: Անցած հնգամյակում հանրապետությունում մեկ
շնչին ընկնող ռեալ եկամուտը ավելացել է 37,2 տոկոսով, ժողովրդական
տնտեսության բոլոր բնագավառներում միջին աշխատավարձը բարձրացել է
միջին հաշվով 30 տոկոսով: Զգալիորեն ավելացել են նաև կրթության, առող-
ջապահության, սոցիալական ապահովության, մանկական, նախադպրոցական
հաստատություններ, պանսիոնատներ պահելու և այլ նպատակների համար
նախատեսված հասարակական սպառման ֆոնդերը:

Հանրապետությունում մեծ թափ է ստացել բնակարանային շինարարու-
թյունը: Միայն 1966—70 թվականների ընթացքում Հայաստանի քաղաքներում
ու շրջաններում կառուցվել է ավելի քան 6 միլիոն քառակուսի մետր բնակե-
լի տարածություն: Իսկ դա նշանակում է, որ բնակչության մոտ մեկ քառորդը
նոր, բարեկարգ բնակարան է ստացել և կամ բարելավել է իր բնակարանային
պայմանները: Քաղաքներում, շրջաններում և ավաններում ծնունդ են առնում
բնակելի տների նոր թաղամասեր, բացվում են բարեկարգ նոր ճանապարհ-
ներ, կառուցվում են դպրոցներ, հիվանդանոցներ, կինոթատրոններ ու զբոս-
այգիներ, մանկապարտեզներ ու մանկամսուրներ: Հատկապես արագ թափով
է աճում հանրապետության մայրաքաղաքը, ուր ամեն տարի այնքան բնա-
կարան է կառուցվում, որքան ուներ ողջ Երևանը 1928 թվականին:

Բայց Սովետական Հայաստանի բոլոր նվաճումների մեջ կա մեկը, որն
ավելի քան հավաստի է խոսում հայ ժողովրդի վերածնության մասին: Դա
այն է, որ անցած 52 տարում Հայաստանի ազգաբնակչությունը ավելացել է
ավելի քան երեք անգամ՝ 720 հազարից հասնելով ավելի քան երկուսուկես
միլիոնի: Հոկտեմբերյան գաղափարների լույսով փրկված այդ 720 հազարը
բռնելով նոր, խաղաղ ու ստեղծագործ կյանքի ուղին, սովետական ժողովուրդ-

ների եղբայրական ապահով ընտանիքում կերտեցին վերածնված նոր Հայաստանը:

Ներկայումս հանրապետության բնակչությունը կազմում է 2,6 միլիոն մարդ: Բնակչության խտությամբ (86 մարդ մեկ քառակուսի կիլոմետրի վրա) Հայկական ՍՍՀ-ն երկրորդ տեղն է գրավում ՍՍՀՄ-ում: Կյանքի միջին տևողությունը մեզ մոտ մոտավորապես 73 տարի է, որն ամենաբարձր ցուցանիշներից է աշխարհում:

ԱՆՏԵՍՈՒԹՅԱՆ և մշակույթի առաջընթացը պայմանավորեց հանրապետությունում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության զարգացումը: Եվ դա հասկանալի է, քանի որ արդի գիտության և տեխնիկայի զարգացումը կանխորոշվում է բարձրորակ մասնագետների պատրաստման քանակական և որակական աճով: Ահա թե ինչու մեր կուսակցությունն ու կառավարությունը վիթխարի ուշադրություն են դարձրել և դարձնում են հանրապետությունում բարձրագույն կրթության գործի զարգացմանը: Այսօր Հայաստանի 12 բուհերում սովորում է ավելի քան 54 հազար ուսանող: 63 տեխնիկումների սովորողների հետ, մեր հանրապետությունում կա 105 հազար ուսանող, որը գրեթե երեք անգամ գերազանցում է սովետական իշխանության առաջին տարիների Երևանի բնակչության քանակը, իսկ դպրոցականների, տեխնիկումների և բուհերի 767 հազար սովորողների ընդհանուր թիվը ավելին է, քան ողջ Հայաստանի բնակչությունը սովետական կարգերի հաստատման տարիներին:

1943 թվականի նոյեմբեր ամսին, սովետական կառավարության որոշմամբ ստեղծվեց Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան: Հայաստանում հայագիտական ավանդական ուսումնասիրությունների հետ միաժամանակ մեծ ծավալ ստացան ֆիզիկա-մաթեմատիկական, բնական և տեխնիկական գիտությունների ասպարեզներում տարվող հետազոտությունները: Դա թելադրված էր սովետական բոլոր հանրապետությունների արտադրողական ուժերի զարգացման, նրանց բնական հարստությունները առավել արդյունավետ օգտագործելու հրամայական պահանջից: Մի բան, որին դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին բացառիկ կարևորություն էր տալիս Վ. Ի. Լենինը:

Ներկայումս Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիան, որ գլխավորում է նրա մեծահամբավ պրեզիդենտ, սոցիալիստական աշխատանքի հերոս, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը, գիտական հետազոտություններ է ծավալում արդի գիտության կարևորագույն ճյուղերի ուղղությամբ:

Այդ բնագավառներից առաջինը աստղաֆիզիկան է: Ականավոր աստղաֆիզիկոս Վ. Հ. Համբարձումյանի ղեկավարած Բյուրականի՝ Լենինի շքանշանակիր աստղադիտարանի գիտնականների հետազոտությունները լայն ճանաչման են արժանացել ամբողջ աշխարհում:

Մեծ հաջողությունների են հասել նաև հայ ֆիզիկոսները: Երևանի ֆիզիկայի ինստիտուտում ստեղծված է Եվրոպայի խոշորագույն էլեկտրոնային օղակաձև արագացուցիչներից մեկը՝ 6 միլիարդ էլեկտրոն-վոլտ հզորությամբ: Այն հնարավորություն է տալիս ոչ միայն հետազոտել և պարզել տարրական մասնիկների բնույթն ու դրանց փոխազդեցությունը, ուսումնասիրել բարձր



էներգիաների ֆիզիկայի որոշ երևույթներ, այլև նոր հնարավորություններ է ընձեռում զարգացնելու արտադրության մի շարք նորագույն ճյուղեր:

Մեծ հռչակ են վայելում մաթեմատիկոսների ուսումնասիրությունները ֆունկցիաների և մոտավորությունների տեսությունների ասպարեզում: Հայ մեխանիկների հետազոտությունները առաձգականության, թաղանթների և սողքի տեսությունների բնագավառներում հայտնի են մեր երկրի սահմաններից շատ հեռու:

Մեր լենինյան կուսակցությունը բարձր է գնահատել հայ ժողովրդի հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը:

Սովետական Հայաստանի 50-ամյակի պատվին կազմակերպված ընդունելության ժամանակ իր արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սովետական Հայաստանի ժողովուրդը՝ կոմունիստներն ու անկուսակցականները, բանվորությունը, գյուղացիությունը ու մտավորականությունը հայրենասիրության ոգին սքանչելիորեն զուգորդում են սովետական մարդու մի այլ՝ ոչ պակաս արժեքավոր հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ»:

Այո, հայ ժողովուրդը, հիրավի, ինտերնացիոնալիստ ժողովուրդ է, քանի որ սեփական պատմության հարուստ փորձից հանգել է այն ճշմարիտ եզրակացության, որ՝ երբ ինքը միայնակ էր, երբ նրա հետ չէին մեր մեծ երկրի եղբայրական ժողովուրդները, ենթակա էր հալածանքի ու բնաջնջման, ապրում էր մեծագույն ողբերգություններ: Եվ երբ խոսում ենք մեր ժողովրդի նվաճումների մասին, չենք կարող կրկին ու կրկին չհավաստել, որ դրանք հնարավոր դարձան միայն լենինյան մեր մեծ կուսակցության իմաստուն ազգային քաղաքականության, սովետական ժողովուրդների եղբայրական հզոր Միության շնորհիվ:

Հայաստանում սովետական կարգերի հաստատումը և ժողովրդական տնտեսության վերելքը հնարավոր դարձրին իրագործել ճակատագրի բերումով աշխարհով մեկ սփռված աշխատավոր հայության նվիրական երազանքը՝ վերադառնալ իրենց նախնիների հնամենի հողը, վերածնված սոցիալիստական Հայաստանի հողը: Եթե նախահեղափոխական իրականության ծնունդ էր պանդխտությունը, ապա սովետական ժամանակների համար բնորոշը եղավ հայրենադարձությունը:

Սովետական իշխանության տարիներին վերածնված Հայաստանի անցած պայքարի և հաղթանակների փառապանծ ուղին արդյունք է Սովետական Միության կոմունիստական կուսակցության և իր շարքերում մոտ 133 հազար մարդ համալրող նրա մարտական ջոկատի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավար և կազմակերպչական գործունեության: Հայաստանի կոմունիստներն իրենց բովանդակ պատմության ընթացքում քայլել և քայլում են նոր կյանք կառուցողների, մեր հասարակության հոգևոր և նյութական հարստությունների ստեղծողների առջևից: Լինելով գաղափարապես կոփված և կազմակերպորեն ամրակուռ, հանրապետության կոմկուսը գլխավորում և ուղղություն է տալիս աշխատավորների դեպուտատների սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և հասարակական մյուս կազմակերպությունների գործունեությանը, նպատակամղում է բանվորների, գյուղացիների, մտավորականության ջանքերը՝ հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում մեր կուսակցության, նրա XXIV համագու-

մարի առաջադրած խնդիրները: Հանրապետության կուսակցական կազմակերպությունները ծավալել են կազմակերպչական մեծ աշխատանք գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, աշխատանքի մեթոդները և ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու ուղղությամբ:

Տնտեսական և մշակութային շինարարության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների, մեր բազմազգ սոցիալիստական պետության ամրապնդման գործին մատուցած ծառայությունների համար Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը պարգևատրվել է Լենինի երկու և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշաններով:

Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը, գյուղացիությունը և մտավորականությունը հսկայական ոգևորությամբ ընդունեցին Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումները, որոնց մեջ տեսանելիորեն հառնում է հրաշալի վաղվա, ժողովրդի, սոցիալիստական հասարակության նյութական և հոգևոր ուժի նոր վերելքի վեհասքանչ պատկերը, նախանշված է մեր մեծ Հայրենիքի հզորության հետագա ամրապնդման ծրագիրը:

Այդ որոշումների իրականացումը համարելով իրենց կենսական գործը, Հայաստանի աշխատավորությունը, ինչպես և բովանդակ սովետական ժողովուրդը, ողջ ջանքերը, գիտելիքները և փորձը ծառայեցնում է հնգամյակի խնդիրների անշեղ իրագործմանը:

ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ սովետական իշխանության հաստատումից ընդամենը մի քանի ամիս անց, 1921 թ., Կոստանդնուպոլսում կազմակերպվեց հայ նկարիչների ցուցահանդես: Այս փաստը շատերին հրաշք էր թվում: Այն ժամանակ դա իրոք հրաշքի էր նման: Չէ որ դրանից ընդամենը մի քանի տարի առաջ անգլիական «Լոնդոն կառեթե» լրագիրը չարագուժորեն գրել էր. «Հավանաբար մի քանի տարի անց հայերի մասին կխոսեն իբրև անհետացած ժողովրդի»:

Բայց հայ ժողովուրդը չանհետացավ, նա գոյատևեց ու վերածնվեց, որովհետև իր պատմության ամենածանր ու ողբերգական պահին կանգնեց միակ ճշմարիտ և կենսական ուղու վրա, ուղի, որ բացեց մեծ Հոկտեմբերը և որը լենինյան գաղափարներով է լուսավորված:

Հենց այդ ուղին մեր ժողովրդին աննախընթաց նվաճումների և հաջողությունների հասցրեց նյութական և հոգևոր կյանքի բոլոր ասպարեզներում, հաջողություններ, որոնցով մենք այսօր իրավամբ հպարտանում ենք: Կես դարի ընթացքում հայ ժողովուրդը կարողացավ հարյուրամյակների ճանապարհ անցնել: Եվ դա շնորհիվ այն բանի, որ նա ընթանում էր ռուս մեծ ժողովրդի և եղբայրական մյուս ժողովուրդների հետ սերտ միություն կազմած, փառապանծ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ:

Այդ բարեկամությամբ ջերմացած՝ հայ ժողովուրդը այսուհետև ևս կկառուցի իր կոմունիստական գալիքը, համոզված լինելով որ ոչ մի ուժ չի կարող շեղել նրան այդ ճանապարհից, քանզի նա իրավահավասար անդամն է եղբայրական այն անհաղթ դաշինքի, որ կոչվում է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ Միություն:

---

Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

ՍՈՎԵՏԱԿԱՆ մարդիկ հանդիսավորությամբ նշում են մեր երկրի ժողովուրդների համար նշանակալից տարեթիվը՝ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը: Սովետական ժողովուրդը միաձույլ, համախմբված կոմունիստական կուսակցության շուրջը, զինված նրա ծրագրով և XXIV համագումարի որոշումներով, հաստատուն առաջընթացով է դիմավորում ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը: Ներկայումս, աշխարհի բոլոր մայր ցամաքներում, առաջավոր մարդկությունը նշում է ՍՍՀ Միության 50 տարին: Այդ առանձին հանդիսավորությամբ են նշում սոցիալիստական երկրների ժողովուրդները, որոնց բարեկամական դաշինքն աշխատավորների ազգային ու ինտերնացիոնալ շահերի միասնության լենինյան գաղափարների իրական մարմնավորումն է: Ինչպես ասված է «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստման մասին», ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, այդ իրադարձությունն ունի հսկայական միջազգային նշանակություն:

ԱԶԳԱՅԻՆ քաղաքականության ասպարեզում սովետական իշխանության առաջին ակտերը «հիմնովին շուռ տվին Ռուսաստանի աշխատավոր մասսաների փոխհարաբերությունները, վերացրին հին ազգային թշնամությունը, խորտակեցին ազգային ճնշման հիմքերը և ռուս բանվորների համար նվաճեցին նրանց այլազգի եղբայրների վստահությունը ո՛չ միայն Ռուսաստանում, այլև Եվրոպայում ու Ասիայում, այդ վստահությունը հասցրին խանդավառության, ընդհանուր գործի համար պայքարելու պատրաստակամության» (ՍՄԿԿ-ն բանաձևերում... I մաս, 1954, էջ 710):

Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն իր անդրանիկ օրենսդրական ակտերում՝ «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում», «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայում», ՌՍՖՍՀ 1918 թվականի Սահմանադրության մեջ ձեռնամուխ եղավ ազգային հարցի վերաբերյալ կոմունիստական կուսակցության մարքս-լենինյան ծրագրի գործնական իրականացմանը: Այդ ծրագիրը չուներ այլ նպատակ, քան մեր երկրում սոցիալիզմի հաջող կառուցման համար համախմբել բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին, բոլոր ազգերին ու ժողովուրդ-

ներին, նրանց միացյալ ջանքերը նպատակամղել նոր հասարակարգի կառուցմանը։

1922 թվականի դեկտեմբերի 30-ը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման օրը, մեծ ուղենիշ է մեր երկրի պատմության և մարդկության համաշխարհային պատմական զարգացման մեջ։ «Մենք իշխում ենք ո՛չ թե բաժանելով, ըստ հին Հռոմի դաժան օրենքի, այլ միացնելով բոլոր աշխատավորներին, կենդանի շահերի, դասակարգային գիտակցության անքակտելի կապերով,— սովետների համամիութենական III համագումարում ասել է մեծ Լենինը։— Եվ մեր Միությունը, մեր նոր պետությունն ավելի ամրակուռ է, քան բռնադատական իշխանությունը, որը ստով ու երկաթով միավորում է իմպերիալիստների համար հարկավոր արհեստական պետական կազմավորումները» (ПСС, т. 35, стр. 287—288)։ Հեշտ չէր կերտել միասնական սոցիալիստական պետության լուսավոր շենքը նախկին ցարական Ռուսաստանում, ուր դասակարգային և ազգային բիրտ ճնշման կրնկի տակ հեծում էին ժողովրդական զանգվածները, ուր պաշտոնական քաղաքականությունը խրախուսում էր ազգամիջյան երկպառակությունները, արհեստականորեն անվստահություն սերմանում ժողովուրդների միջև։ Դժվարությունների հաղթահարման փառապանծ ուղի է անցել մեր բազմազգ պետությունը։ Տոնական այս օրերին ավելի ցայտուն և ակներև է դառնում հաղթանակած սոցիալիստական հեղափոխության առաջին երկրում միասնական բազմազգ պետության ստեղծման համար մեծ Լենինի, կոմունիստների կուսակցության մղած տիտանական պայքարի նշանակությունը։ Լենինը, կոմունիստների կուսակցությունը մշակեցին և պատմական նոր պայմաններին համապատասխան առավել նպատակահարմար ձևով իրականացրին սովետական հանրապետությունների կամավոր միավորումը, որը բխում էր ժողովուրդների սուվերենության ու քաղաքական իրավունքների նկատմամբ տածած խոր հարգանքի գիտակցումից։ Ազգամիջյան հարաբերությունները նոր ձևով լուծելու լենինյան սկզբունքները դարձան Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների ամուր Միություն ստեղծելու հիմքը։

Բազմազգ Սովետական Միությունում իրականացվեցին աշխատավորների դասակարգային համերաշխության, համախմբվածության և դաշինքի վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքի ամենահաղթ գաղափարները։ Ընդմիշտ վերացվեց ազգերին ու ժողովուրդներին միմյանց դեմ գրգռելու, միմյանցից խորթացնելու ցարական Ռուսաստանին հատուկ մթնոլորտը։ Մեր երկրում այսօր իշխում է ՍՍՀ Միության մեջ կամավոր միավորված ազատ ժողովուրդների հավասարության և եղբայրության ոգին։

ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների հետագա մերձեցման պրոբլեմները կոմունիստական կուսակցությունը լուծում է ստեղծագործաբար, մարքս-լենինյան ուսմունքի հիման վրա, ելնելով կոմունիստական հասարակարգի կառուցման համապարփակ խնդիրներից։ Հենց այս դիրքերից կուսակցության XXIV համագումարը քննարկեց մեր երկրի ազգերի ու ազգությունների մերձեցման, սովետական հասարակարգի սոցիալ-քաղաքական զարգացման ընդհանուր պրոցեսում ազգամիջյան հարաբերությունների զարգացման, սովետական ժողովրդի միասնության հետագա ամրապնդման հարցերը, առաջադրեց այս մարզում անելիքները։ Սովետական ժողովուրդների ամրապնդվող քաղաքական, տնտեսական և կուլտուրական կապերը, բազմակողմանի հա-



մագործակցությունը մարդկային գործունեության բոլոր բնագավառներում նրանց հետագա առաջընթացի երաշխիքն են։ Այս կամ այն հանրապետությունում ստեղծված նյութական հարստությունները մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների համատեղ աշխատանքի արգասիքն են, ջանքերի միավորման արդյունքը։ Անօրինակ ցայտուն են սովետական հանրապետությունների տնտեսական, գիտական ու կուլտուրական զարգացման հասումները։ Դա նախ՝ կուսակցության կողմից հետևողականորեն կենսագործվող լենինյան ազգային քաղաքականության արդյունքն է, սովետական բոլոր հանրապետությունների վերելքի ու համընթաց զարգացման քաղաքականության արդյունքը։

«Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է, որ համաշխարհային պատմությունը տասնյակ ազգերի ու ազգությունների փոխհարաբերություններում երբեք չի տեսել շահերի ու նպատակների, կամքի ու գործողությունների այնպիսի անխախտ միասնություն, այնպիսի հոգևոր մերձեցում, այնպիսի վստահություն ու փոխադարձ հոգատարություն, ինչպիսիք շարունակ դրսևորվում են մեր եղբայրական դաշինքում։ ՍՍՀ Միության կազմավորման օրվանից անցած կես դարը համոզիչ ցույց է տալիս, թե ինչպիսի վիթխարի ստեղծագործական ուժով է օժտված սովետական ժողովուրդների բարեկամությունը, ինչպիսի բազմահարուստ պտուղներ է տվել այն այսօր և ինչպիսի վառ հեռանկարներ է կանխանշում։

«Սոցիալիստական շինարարության տարիներին,— կուսակցության XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը,— մեր երկրում առաջացավ մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։ Համատեղ աշխատանքում, սոցիալիզմի համար մղված պայքարում, նրա պաշտպանության մարտերում ծնունդ առան դասակարգերի ու սոցիալական խմբերի, ազգերի և ազգությունների նոր, ներդաշնակ հարաբերություններ՝ բարեկամության ու համագործակցության հարաբերություններ։ Մեր մարդիկ միաձուլված են մարքս-լենինյան գաղափարախոսության, կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակների ընդհանրությամբ։ Այդ միաձույլ համախմբվածությունը սովետական բազմազգ ժողովուրդը ցուցադրում է իր աշխատանքով, կոմունիստական կուսակցության քաղաքականության իր միահամուռ հավանությամբ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 101)։

Սոցիալիզմ կառուցող բազում ժողովուրդների և իրենց սոցիալական վերջնական ազատագրման նպատակով մաքառող բանվորների ու աշխատավորների համար խիստ ուսանելի է ՍՍՀՄ ազգերի ու ժողովուրդների նոր կյանք կերտելու ավելի քան կեսդարյա հարուստ փորձը։ Որքան ավելի է սերտաճում սովետական հանրապետությունների եղբայրական դաշինքը, այնքան ավելի արդյունավետ է դառնում մեր երկրի ժողովուրդների մեծ Միության ազդեցությունը համայն մարդկության առաջընթացի վրա։

ՍՈՎԵՏԱԿԱՆ Միության կազմավորումը, սկզբունքորեն նոր հիմունքներով ազգային հարցի լուծումը ունեն համաշխարհային-պատմական նշանակություն։ «Սովետական Սոցիալիստական

Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Բազմազգ սոցիալիստական պետություն ստեղծելու, մեր ժողովուրդների միացյալ ուժերով զարգացած սոցիալիստական հասարակարգ ստեղծելու, ամենաբարդ ազգային հարցը լուծելու սովետական փորձը համաշխարհային ճանաչում է գտել և անգնահատելի օգնություն է ցույց տալիս սոցիալական ու ազգային ազատագրման մարտիկներին»:

Հիրավի, ՍՍՀ Միության կազմավորումը մի մրցահրավեր էր հին աշխարհին, իր ներազդու ուժով մի աննախադեպ օրինակ, որը չէր կարող լայն արձագանք չգտնել ամբողջ աշխարհում, մասնավորապես Ասիայի մայր ցամաքում, որտեղ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո ավելի ու ավելի լայնորեն էր ծավալվում ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը: Սովետական երկրի հուժկու վերընթացը, սովետական ժողովուրդների օրավուր ամրապնդվող բարեկամությունը, ազգային քաղաքականության հաջող կենսագործումը բարենպաստ ազդեցություն ունեցավ ճնշվածների պայքարի ողջ ընթացքի վրա համայն աշխարհում:

ՍՍՀ Միության կազմավորմամբ առաջին անգամ մարդկության պատմության մեջ ծնունդ առավ մի պետական միավորում, որի մեջ տարբեր ազգեր ու ազգություններ համախմբվեցին միասնական դաշինքում, իրենց կյանքն ու գործունեությունը խարսխելով անխախտ բարեկամության և եղբայրական համակողմանի համագործակցության վրա: ՍՍՀ Միության կազմավորումն իր քաղաքական նշանակությամբ և սոցիալ-տնտեսական հետևանքներով ամենախոր ներգործությունն ունեցավ համայն մարդկության հասարակական զարգացման վրա: Սովետական Միության բոլոր հանրապետություններում ազգային-պետական շինարարության հիմքում ընկած կոմունիստական կուսակցության սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքը, որը միաժամանակ արտաքին քաղաքական ազդեցիկ գործոն է, հետևաբար հույժ էական դեր է խաղում աշխարհի քաղաքական կյանքում:

Սովետական Միության կազմավորման ու զարգացման փորձն արդեն ապացուցել է բոլոր ժողովուրդների բարեկամության, խաղաղության և համագործակցության հնարավորությունը: Այդ փորձը խոր ազդեցություն է թողել համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա, բոլոր աշխատավորներին, ճնշվածներին ցույց տալով սոցիալական և ազգային ազատագրման ճշմարիտ ուղին: ՍՍՀ Միությունը միշտ կատարել և կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը՝ բարոյական, քաղաքական, ռազմական ու տնտեսական օգնություն ցույց տալով գաղութային լուծը թոթափելու կամ ազգային ճնշումը վերացնելու, դեմոկրատական, հակաիմպերիալիստական և սոցիալապես առաջադիմական ռեժիմներ սահմանելու համար պայքարող ժողովուրդներին: Իրենց ազատագրման նպատակով իմպերիալիզմի դեմ պայքարող ժողովուրդները, հանձին Սովետական Միության տեսնում են իրենց հենարանին, սովորում են նրանից:

Սոցիալիստական երկրները, ինչպես և Ասիայի Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի նոր զարգացող պետությունները, կապիտալիստական երկրների մարքս-լենինյան կուսակցությունները հաշվի առնելով Սովետական Միության փորձը և ստեղծագործորեն զարգացնելով լենինյան ուսմունքը, մշակում են իրենց պայքարի ստրատեգիան ու տակտիկան, կանխատեսում այն



կոնկրետ պրոբլեմների լուծման ուղիները, որոնք ծառացել են իրենց երկրների առաջ սոցիալական ու ազգային հարցերի լուծման ասպարեզում: Այն վիթխարի դերը, որ սոցիալիստական բոլոր երկրների ազգային-պետական շինարարության մեջ խաղացել և խաղում է սովետական պետության պատմական փորձի օգտագործումը, ինքնին մեր երկրի ներգործուն ազդեցության միջազգային նշանակության ակնբախ վկայությունն է: Ազգային քաղաքականության բնագավառում Սովետական Միության պրակտիկան այնքան համապարփակ է, հարուստ ու բազմազան, որ ուսանելի է ազգային փոխհարաբերությունների ամենատարբեր առանձնահատկություններ ունեցող երկրների համար:

Իհարկե, ՍՍՀ Միության ազգային շինարարության փորձի համաշխարհային-պատմական նշանակությունը միշտ էլ մեծ հետաքրքրություն է ներկայացրել ո՛չ միայն արտասահմանյան մեր բարեկամների, ամբողջ աշխարհի առաջադիմական ուժերի շրջաններում, այլև մեծ տագնապ է հարուցում սոցիալիզմի և ինտերնացիոնալիզմի գաղափարական թշնամիների քաղաքական ոլորտներում:

Հինգ տասնամյակների ընթացքում արևմտյան սովետոլոգիայի դիրքորոշումը, հայեցակետը ՍՍՀ Միությունում կատարված ազգային շինարարության պրոբլեմների նկատմամբ ապրել է կոնցեպցիաների ու գնահատականների էվոլյուցիա: Աստիճանաբար պրիմիտիվ հակակոմունիզմն իր տեղը զիջեց գաղափարական դիվերսիայի ավելի ճկուն ձևերին: Բացահայտ թշնամանքին փոխարինելու եկան նացիոնալիզմի հրահրման, ազգերի ինտերնացիոնալիստական բարեկամությունը խարխլելու շատ ավելի նրբին մեթոդներ: Հակասովետիզմի «ասպետներից» ոմանք արդեն ընդունում են ՍՍՀ Միության ազգերի ու ազգությունների զարգացման գործում ակնհայտ նվաճումները, Սովետական Միջին Ասիան համեմատում են Ասիայի ու Աֆրիկայի երկրների հետ, խոստովանելով սովետական փորձի առավելությունները: Սակայն բազմազգ պետության սովետական պրակտիկան ակներև անհանգստացնում է բուրժուական գործիչներին, գիտնականներին: Վաշինգտոնցի պրոֆեսոր Ջ. Ուինբերն ընդգծում է. «Սովետական փորձը կարող է մի շարք օգտակար դասեր տալ զարգացող երկրներին»: Նա նշում է, որ «Միջին Ասիայի զարգացումը սովետական կարգերի օրոք հանդիսանում է կառավարական վերահսկողության ներքո ձեռք բերված զգալի և արագ տնտեսական աճի հիանալի օրինակ... Միջին Ասիան՝ Ռուսաստանի այդ հետամնաց, անգրագետ, համաճարակների ենթակա կիսաֆեոդալական ծայրամասը դարձել է ժամանակակից, դինամիկ՝ դեպի պրոգրես հակված հասարակություն»:

Ազգային հարցում սովետական փորձի՝ բուրժուական հետազոտողների ինտենսիվացման և համաշխարհային հասարակական կարծիքի վրա այդ փորձի ազդեցության աստիճաններն ուղիղ հարաբերական են: Արևմուտքում լեռ գրականություն է ստեղծվում, որտեղ ամենատարբեր մոտեցումներով քննարկվում են սովետական կյանքի ազգային ասպեկտները, հրահրվում են «հուսադրող» հակասովետական եզրահանգումները: Այժմ նրանք շատ են զբաղվում այն հարցի պարզաբանմամբ, թե Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը կանխե՞լ է արդյոք «ազգային պոտենցիալի զարգացումը ՍՍՀ Միությունում»: Նացիոնալիզմ— ահա թե որն է հակակոմունիզմի՝ սոցիալիստական սիստեմը ներսից քայքայելու գործուն միջոցը: Մեր երկրի

և մյուս սոցիալիստական երկրների ժողովուրդների եղբայրական բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքի դեմ են ուղղված իմպերիալիստական պրոպագանդայի, քաղաքական և ոչ միայն քաղաքական պայքարի հիմնական սլաքները: Սոցիալիզմի դեմ սանձարձակ պրոպագանդա մղող ռադիոկայանների հաղորդումների հեղեղում առյուծի բաժինը կազմում են ազգային փոխհարաբերություններին հատկացվող ժամերը: Պատմագիտության մեջ աչքի է ընկնում ամերիկացի սովետոլոգ Ռ. Փայփսը, որը տոն է տալիս սովետական ազգային շինարարության հակակոմունիստական մեկնաբանությանը: Այս հարցում կաշվից դուրս են գալիս բոլոր երանգների ռևիզիոնիստները:

Դաշնակցական պրոպագանդան շարունակում է զրպարտել Հայաստանի սովետական իրականությունը, կիրառում է կոմունիստական կուսակցության քաղաքականության դեմ մղվող գաղափարական պայքարի ամենակեղտոտ մեթոդները: Գաղափարական դիվերսիայի կազմակերպիչները, սոցիալիզմի թշնամիները փորձում են ամեն կերպ խեղաթյուրել սովետական ֆեդերալիզմի էությունը, ժխտել հանրապետությունների միավորման կամավորությունը և հանրապետությունների միության կազմավորման դեմոկրատական հիմքը, ՍՍՀ Միությունում ազգամիջյան պետական հարաբերությունների զարգացման պրոցեսի պատմականորեն առաջադիմական բնույթը: Բայց ինչքան շատ ժամանակ է անցնում, այնքան հասարակայնության ամենալայն խավերի համար ակներև է դառնում նման դատողությունների կանխակալությունն ու անհեթեթությունը: Ժամանակը նորանոր ապացույցներ է տալիս մեծ Լենինի մշակած ազգային քաղաքականության ծրագրի ճշմարտացիության ու կենսունակության վերաբերյալ:

ՍՈՎԵՏԱԿԱՆ սոցիալիստական միասնական բազմազգ պետության ստեղծման մեր փորձը համաշխարհային ճանաչում է գտել, այն օգնում է ու խրախուսում սոցիալական ու ազգային ազատագրման համար մարտնչող բոլոր մարտիկներին,— ասված է Լ. Ի. Բրեժնևի ողջույնի ուղերձում՝ Տաշքենդի միջազգային գիտական կոնֆերանսի մասնակիցներին: — Ազատ ժողովուրդների պետական դաշինքի ձևավորման լենինյան սկզբունքները՝ բոլոր ազգերի իրավահավասարության, նրանց կամավոր միավորման ու համախմբման սկզբունքները լիովին հաստատվել են պատմական զարգացման ընթացքում, բարենպաստ ազդեցություն են գործում իմպերիալիզմի դեմ ժողովուրդների կողմից ազատագրական պայքարի ծավալման վրա («Պրավդա», 1972, 17-ը հոկտեմբերի):

ՍՍՀ Միության կազմավորումը, մեր երկրի ժողովուրդների ամրապնդվող միասնությունն իրոք անգնահատելի դեր խաղացին մեր մոլորակի ազգային-պետական պատկերն արմատապես վերափոխելու գործում: Գաղութատիրական կայսրությունների կործանումը, Ասիայում և Աֆրիկայում տասնյակ երիտասարդ ազգային պետությունների կազմավորումը, ազգային քաղաքականության դեմոկրատական սկզբունքների հաստատումն անհնար կլինեին իմպերիալիզմի լիակատար տիրապետության պայմաններում: Չնայած համաշխարհային ռեակցիայի մինչև այժմ շարունակվող դիմադրությանը, սովետական բազմազգ պետության կազմավորման ու գոյության հիմքում դրված ազգերի ինքնորոշման և իրավահավասարության սկզբունքներն ավելի ու ավելի հզոր ձգողական ուժ են ստանում, դառնում ընդհանուր միջազգային իրավունքի նորմեր: Ասիայում թե՛ Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում, թե՛ այլուր ճնշված և կախյալ երկրների աշխատավորական զանգվածներն ակնառու կերպով համոզվել են, որ ազգերի հավասարության, եղբայրական համագործակցության իդեալն ուտոպիա չէ, անիրագործելի նպատակ չէ, այլ միանգամայն ռեալ խնդիր: Անկախություն ձեռք բերած ժողովուրդները տարբեր ազգերի ու ազգությունների միջև բարի դրացիական, եղբայրական հարաբերություններ հաստատելու մարզում ունեն Սովետական Միության միանգամայն իրեն արդարացրած և ստուգված փորձը:

Երեկվա գաղութային երկրներում աշխատանք է ծավալվում ՍՍՀ Միության պատմական փորձի խոր ուսումնասիրության նպատակով: Մեր երկրի զարգացման փուլերն ու պրոցեսները, նրա պատմական փորձն այսօր քննարկվում են գիտական սեսիաներում, սեմինարներում և քաղաքական ֆորումներում: Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ժողովուրդները, համայն աշխարհի աշխատավորները հանձին Սովետական մեծ Միության տեսնում են իրենց հավատարիմ բարեկամին ու պաշտպանին, արդի համաշխարհային հեղափոխական պրոցեսի առաջատար ուժին:

ՍՍՀ Միության կուտակած փորձը վիթխարի դրական դեր է խաղացել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորման պրոցեսում՝ թե՛ յուրաքանչյուր երկրի ներսում ազգային պրոբլեմների լուծման, թե՛ սոցիալիստական սուվերեն պետությունների հարաբերությունների կարգավորման հարցերում:

Ժողովուրդների եղբայրական բարեկամություն— ահա լենինյան ազգային քաղաքականության իրականացման արդյունքը: ՍՍՀ Միությունը սուվերեն պետությունների դաշինք է, որոնցից յուրաքանչյուրն օգտվում է մյուսների հետ հավասար իրավունքներից: Սովետական իրականությունը հերքում է հակակոմունիստների հերյուրանքները ՍՍՀՄ ժողովուրդների փոխհարաբերությունների մասին: ՍՍՀՄ ժողովուրդների համերաշխ ընտանիքը համոզիչ կերպով ցուցադրում է ազատագրված աշխատանքի առավելությունները, հիրավի, հրաշքներ է գործում, իրականում դրսևորելով սոցիալիստական հասարակական-քաղաքական սիստեմի մեծ առավելությունները բուրժուական հասարակարգի հանդեպ: Սովետական Միության փորձն անհերքելիորեն ապացուցում է, որ միայն սոցիալիզմն է ապահովում ազգային հարցի լիակատար ու հետևողական լուծումը՝ տնտեսական, քաղաքական ու հոգևոր բոլոր հիմնական ոլորտներում: Մարդկության պատմությանը օտար է եղել շահերի ու նպատակների այնպիսի ներդաշնակ ընդհանրություն, կամքի ու գործողությունների այնպիսի միասնություն, հոգեհարազատություն ու վստահություն, բարեկամական օգնություն, ինչպիսիք սոցիալիզմն ապահովեց Սովետական Միությունում բնակվող տասնյակ ազգերի ու ազգությունների փոխհարաբերությունների համար: «Ժողովուրդների բարեկամությունը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— դարձել է մեր հասարակական կյանքի միսն ու արյունը... Մեր հայրենիքի բոլոր ժողովուրդներն ընկերներ ու զինակիցներ են համարում միմյանց, օգնում են իրար, համատեղ աշխատում, համատեղ մասնակցում են կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարին: Այս է լենինյան ազգային քաղաքականության վեհասքանչ արդյունքը» («Պրավդա», 1972, 23-ը սեպտեմբերի):

Արդարև, այսօր փառապանծ հիսունամյակի օրերին ավելի ակնառու է

դառնում բազմազգ սոցիալիստական պետություն ստեղծելու, մեր ժողովուրդների միացյալ ուժերով զարգացած սոցիալիստական հասարակարգ կառուցելու, ազգային ամենաբարդ հարցը լուծելու սովետական փորձը, որը համաշխարհային ճանաչում է գտել։

Հիսուն տարի է, ինչ մեր երկրի ժողովուրդներն ապրում են համերաշխ միասնական մի ընտանիքում, ընդհանուր են նրանց շահերը, հոգսերը, ուրախությունները ու խոհերը։ Նրանց միավորում է կոմունիստական հասարակարգի կառուցման վեհ նպատակը։

Սովետական մարդկանց ինտերնացիոնալիզմը վերացական հասկացողություն չէ, այլ միլիոնների կենդանի պրակտիկա։ Դա իր ամենախոր արտահայտությունն է գտնում նախ՝ աշխատանքային սխրանքներում, կոմունիզմի կառուցման համար մղվող համատեղ պայքարում։

Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը Հոկտեմբերի անգնահատելի նվաճումն են, սովետական բազմազգ պետության իսկական ժողովրդական բնույթի մարմնավորումը։ ՍՄԿԿ հետևողականորեն վարում է եղբայրական հանրապետություններից յուրաքանչյուրի համակողմանի զարգացման քաղաքականություն, պայմաններ է ստեղծում ազգերի ու ազգությունների հետագա աստիճանական մերձեցման համար, անդուլ ամրապնդում է ազգերի սոցիալիստական միասնությունը։ Մեր սոցիալիստական նվաճումներն արդյունք են լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման, որն ապահովում է երկրի բոլոր ժողովուրդների համախմբումը եղբայրական մեկ ընտանիքում և նրանց առաջնորդում դեպի մեկ ընդհանուր նպատակ։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը հետևելով Լենինի ցուցումներին, ո՛չ միայն ապահովել են ազգերի ու ազգությունների հավասարությունը և բարգավաճումը, այլև անդուլ պայքարել ու պայքարում են տարբեր պետությունների խաղաղ համագործակցության և համընդհանուր անվտանգության համար։

Սովետական Միությունը համաշխարհային սոցիալիստական միասնության ավանգարդն է, խաղաղասիրական բոլոր ուժերի հուսալի պատվարը՝ հանուն մարդկության պայծառ ապագայի։

---

Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԼԵՆԻՆՅԱՆ ԴԱՇՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՀՈՅԱԿԱՊ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

ԱՄԵՆ մի ժողովրդի պատմական զարգացման ընթացքը պայմանավորված է ոչ միայն նրա ներքին ուժերի ու տենդենցների գործողությամբ, այլև ամբողջ մարդկության զարգացման ընդհանրական պրոցեսներով, մյուս ժողովուրդների հետ նրա անմիջական փոխհարաբերություններով, որոնք հաճախ բախտորոշ են դառնում նրա համար։ Դա առանձնապես ցայտուն է դրսևորվել հայ ժողովրդի պատմական ճակատագրում։

Դարեր շարունակ այլազգի նվաճողների հրոսակներն ավերել ու թալանել են նրա երկիրը, բաժանել նրան իրարից մեկուսացած հատվածների, ստիպել մասամբ հեռանալ հայրենիքից ու ցրվել աշխարհով մեկ, զրկել են ազգային պետականությունից, նրա երկիրը դարձրել խոշոր պետությունների առուծախի առարկա։ Այդ ամենի հետևանքով ոչ միայն արտադրաուժերի ու մշակույթի զարգացման բնականոն ընթացքն է կասեցվել, այլև պարբերական բնաջնջումներով հարցականի տակ դրվել բուն իսկ ժողովրդի ֆիզիկական գոյությունը։

Բայց այդ դժնդակ դարերում հայ ժողովուրդը կարողացավ դիմակայել, պահպանել իր գոյությունն ու նկարագիրը, նոր արժեքներով հարստացնել իր մշակութային գանձարանը։

Եվ դա եղավ, որովհետև հայ ժողովուրդն ուներ ներքին կենսունակ ուժեր, աշխատավոր զանգվածների ստեղծագործ աշխատանքի ու մաքառման անընկճելի ոգի, որովհետև վերջին դարերում նա իր բախտը կապեց ռուս ժողովրդի բախտի հետ, նրա առաջադեմ ուժերի և հատկապես բանվոր դասակարգի ու համառուսական հեղափոխական շարժման հետ։

1917 թ. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը տեղի ունեցավ հայ ժողովրդի պատմության ամենաօրհասական պահին։ Իմպերիալիստական երկրների դիվանագիտության առուծախի առարկա դարձած «Հայկական հարցը» այդ օրերին ոչ միայն Հայաստանի պետական անկախության, նրա միավորման հարցն էր, այլև ամենաբազմապիսի պրոբլեմների մի խճճված կծիկ, որի քանդելը հայ ժողովրդի ուժերից վեր էր ըստ ամենայնի։ Ազգային պետականության բացակայություն, երկրի մասնատում տարբեր պետությունների միջև և գաղութացում, համաշխարհային պատերազմի ընթաց-

բում Թուրքական կառավարող շրջանների կողմից տարվող գենոցիդի քաղաքականության հետևանքով հայ ժողովրդի մի զգալի մասի ոչնչացում, ժողովրդի զգալի հատվածների տարագրական ցրում մոտ և հեռու երկրներ, ավերի ու թալանի հետևանքով արտադրուժերի անկում, բուն երկրում նպաստավոր պայմանների բացակայության հետևանքով հայ մշակութային ուժերի ու հիմնարկությունների ապակենտրոնացում այլ երկրներում, ժողովրդի բուն կազմության փոփոխություն՝ նրա զգալի մասի վերածում տեղահանվածների (գաղթականների) ու անընտանիք որբերի... Սա էր Հայաստանի վիճակը։

Մեծ Հոկտեմբերը, հռչակելով բոլոր ազգերի ու ազգությունների լիակատար հավասարությունն ու նրանց ինքնորոշման, ընդհուպ մինչև անջատման ու ինքնուրույն պետություն կազմելու իրավունքը, իրական փրկության ուղի բացեց նաև հայ ժողովրդի համար։ Սակայն այն ժամանակ ստեղծված ուրույն պայմաններում դա իրականացավ ոչ միանգամից, ոչ հեշտ ու հանգիստ, այլ տարիների ընթացքում մղված համառ ու դժվարին պայքարով։

1918 թ. հունվարին Սովետական Ռուսաստանի կառավարությունը հրապարակեց Արևմտյան Հայաստանի ինքնորոշման դեկրետը՝ դարավոր գաղութացման տակ հեծող հայ ժողովրդին ինքնուրույնություն շնորհող առաջին պետական փաստաթուղթը, որն ստորագրել էր Վ. Ի. Լենինը։ Սակայն ստեղծված իրադրության մեջ Արևմտյան Հայաստանի ինքնորոշումն իրականացնել անհնարին եղավ։ Ավելին, Արևելյան Հայաստանի մի մասն էլ գրավվեց Թուրքական հրոսակների կողմից։

Հայ ժողովրդի վիճակը չթեթևացրեց և նրա ոչ մի պրոբլեմը չլուծեց նաև 1918 թ. մայիսին հռչակված, այսպես կոչված, Հայաստանի «անկախ» հանրապետությունը, որի գլուխ կանգնեց դաշնակների ազգայնական կուսակցությունը։ Ավելին, իր ղեկավարների անհեռատես և հակաժողովրդական քաղաքականության հետևանքով Հայաստանն այդ շրջանում մեկուսացվեց ու հակադրվեց սովետական կարգեր հաստատած Ռուսաստանին՝ միակ երկրին, որ ցանկանում էր և կարող էր փրկել հայ ժողովրդին։ Դաշնակների տիրապետության երկուսուկես տարին ոչ միայն վատթարացրին հայ ժողովրդի առանց այն էլ ծանր վիճակը, այլև ավելի խճճեցին նրա տերիտորիալ միավորման հարցը, ստեղծելով հանգամանքներ, որ հետո այլևս հնարավոր չեղավ հաղթահարել։

Բայց հայ ժողովրդի առաջավոր ուժերը, լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ աննահանջ պայքարելով հայ ժողովրդի սոցիալական ու ազգային ազատագրման համար, կարողացան արմատականորեն փոխել իրադրությունը։ 1920 թ. նոյեմբերին նրա գլխավորությամբ ապստամբած հայ ժողովուրդը տապալեց դաշնակների բռնապետությունը և Հայաստանը հռչակեց սովետական սոցիալիստական հանրապետություն։

Հայ ժողովրդի նոր պատմության մեջ դա նրա խոշորագույն և պատմական մեծ հեռանկարներ բացող հաղթանակն էր, նրա իսկական վերածննդի ու ծաղկման սկիզբը, որը ձեռք բերվեց բանվոր դասակարգի ու աշխատավոր գյուղացիության հերոսական ջանքերով, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի և սովետական կարգեր հաստատած մյուս ժողովուրդների անմիջական եղբայրական օգնության շնորհիվ։

Սովետական Ռուսաստանի, Ադրբեջանի և Վրաստանի հետ հաստատած բարեկամական հարաբերությունների ու սերտ համագործակցության շնորհիվ



Սովետական Հայաստանը կարողացավ իր գոյության առաջին իսկ տարում հաղթանակել դաշնակների դավադրական խռովության հետևանքով ծայր առած բաղաքացիական պատերազմում, հանրապետության տերիտորիայից դուրս հանել 1920 թվականին կրկին ներխուժած և նրա զգալի մասը գրաված Թուրքական զորքերին, ստեղծել կայուն և ապահով սահմաններ։ Միայն դրանից հետո նա ի վիճակի եղավ արտադրության միջոցների մասնավոր սեփականության վերացման ու համաժողովրդական սեփականության հաստատման հիմքի վրա ձեռնամուխ լինել սովի և համաճարակների հաղթահարմանը, ծայր աստիճան քայքայված արտադրաուժերի վերականգնմանն ու սոցիալիստական շինարարությանը։

Սակայն այդ, ինչպես և հայ ժողովրդի համախմբման, նրա կենսագործունեության բոլոր ոլորտների զարգացման արմատական խնդիրների լուծման համար հայ ժողովրդի՝ Սովետական Հայաստանում հավաքված հատվածի ուժերը բավական չէին։ Ավելին, դրա համար բավական չէր նույնիսկ Սովետական Հայաստանի համագործակցությունը մյուս սովետական հանրապետությունների հետ։ Անհրաժեշտ էր նրանց սերտ միավորումը մի միասնական պետական օրգանիզմի մեջ, այսինքն՝ նրանց քաղաքական, տնտեսական, մշակութային բոլոր ջանքերի ու նյութական ռեսուրսների համապետական միավորումը՝ հօգուտ բոլոր սովետական հանրապետությունների, սոցիալիզմի ուղու վրա կանգնած բոլոր ժողովուրդների։

Այդպիսի միավորումն անհրաժեշտ էր բոլոր ժողովուրդներին և, թերևս, բոլորից ավելի հայ ժողովրդին։ Եվ դրա համար էլ հայ ժողովուրդն աննախընթաց խանդավառությամբ և միահամուռ ընդունեց լենինյան հանճարով կյանքի կոչված սովետական հանրապետությունների միավորման ծրագիրը։ 1922 թ. սկզբին Սովետական Հայաստանը Սովետական Ադրբեջանի ու Սովետական Վրաստանի հետ միավորվեց Անդրկովկասյան սովետական հանրապետությունների ֆեդերացիայի մեջ, իսկ նույն թվականի վերջին՝ արդեն Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ։ Ինչպես նշված է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ «Նոր հասարակարգի կառուցման ուղին բռնած տարբեր ազգությունների աշխատավորների ընդհանուր շահերը, ջանքերի միավորման և եղբայրական համագործակցության նրանց ձգտումը իրենց գործնական մարմնավորումը գտան 1922 թվականի դեկտեմբերին միասնական բազմազգ պետության՝ ՍՍՀ Միության ստեղծման մեջ»։

Այժմ, ՍՍՀՄ կազմակերպումից կես դար անց, հետադարձ հայացք գցելով ՍՍՀՄ կազմում հայ ժողովրդի անցած ուղու վրա, վստահորեն կարելի է ասել, որ մեծ Լենինի հանճարով ու կոմունիստական կուսակցության առաջնորդությամբ հաղթանակած Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը և նրա արդյունքով կազմակերպված ՍՍՀՄ-ը հայ ժողովրդին ամենալայն հնարավորություն ընձեռեցին լուծելու իր սոցիալական և ազգային խնդիրները, հասնելու ազգային վերածննդի և կանգնելու աշխարհի ամենազարգացած ու առաջավոր, կոմունիզմ կառուցող ժողովուրդների շարքում։

Ի՞նչ տվեց ՍՍՀՄ-ը հայ ժողովրդին։

ՍՍՀՄ կազմում ամրապնդվեց ու հզորացավ հայ ժողովրդի ազգային սոցիալիստական պետականությունը։ Ինչպես ժամանակին նշել է Ալ. Մյասնիկյանը. «Մեր հակառակորդներն արտասահմանում. զբաղվում են վայրա-

հաշությամբ, թե չկա հայկական անկախություն: Իսկ իրականությունը համառորեն պնդում է, որ արդի Հայաստանը ազգային խորհրդային մի պետություն է, ինքնուրույն պետություն, հայկական լեզվով, հայ կուլտուրայով զարգացող և հայ կյանքն ավելացնող մի պետություն» (Ալ. Մարտունի, Խորհրդային Հայաստանի ուղին: Թիֆլիս, 1924, էջ 47):

Մտնելով ՍՍՀՄ կազմի մեջ և իր որոշ իրավասությունները կամավոր հանձնելով միութենական պետությանը, Սովետական Հայաստանը ոչ միայն չկորցրեց իր սուվերենությունը՝ պահպանելով հանրապետության սահմանները միմիայն իր համաձայնությամբ փոփոխելու և Միությունից դուրս գալու իրավունքը, այլև ձեռք բերեց քաղաքական ու տնտեսական վիթխարի առավելություններ: Այդ առավելություններից մեկը ամբողջ ՍՍՀՄ-ում հայ ժողովրդի լիակատար իրավահավասարությունն է և նրա ազատ զարգացումը մյուս բոլոր ժողովուրդների հետ համահավասար:

Կրկնակի ու եռակի զրահավորված լինելով ՍՍՀՄ օրավուր աճող հավաքական հզորությամբ, Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը կարողացավ երկիրը զերծ պահել ամեն տեսակի արտաքին թշնամիների միջամտություններից ու ներխուժումներից, ապահովեց ժողովրդի խաղաղ ու ստեղծագործ աշխատանքը, նրա սոցիալական-տնտեսական ու մշակութային վերածնունդը, նրա բարեկեցության անշեղ աճը և, դրա հիման վրա ի վիճակի եղավ վերջին հազարամյակի պատմության մեջ առաջին անգամ հայ ժողովրդի արտագաղթը իր երկրից փոխարինել հայրենիք ներգաղթով, ցրվող ու տարագրվող ժողովրդից նրան վերածել հավաքվող ու կենտրոնացող ժողովրդի:

Այսպես, ըստ պաշտոնական վիճակագրության տվյալների, հայերի ընդհանուր թիվը ՍՍՀՄ-ում 1926 թ. 1567,5 հազարից 1970 թ. հասել է 3559,0 հազարի, այսինքն՝ աճել է 2,27 անգամ և, եթե 1926 թ. ՍՍՀՄ-ում ապրում էր ամբողջ հայության կեսից մի փոքր ավելին, ապա 1970 թ. ՍՍՀՄ-ում ապրում էր արդեն ամբողջ աշխարհի հայության ավելի քան երկու երրորդը:

Հայերի այսպիսի աճը և կենտրոնացումը ՍՍՀՄ-ում պայմանավորվել է, նախ, կյանքի պայմանների արմատական բարեփոխումով, ինչպես ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների, այնպես էլ և հայերի բնական բուռն աճով և, այնուհետև, աշխարհի մյուս երկրներից հայության մի զգալի հատվածի (ավելի քան 200 հազար մարդու) կամավոր կերպով ՍՍՀՄ տեղափոխվելով:

Միաժամանակ անցած հիսուն տարում տեղի է ունեցել ՍՍՀՄ հայ բնակչության կենտրոնացում Սովետական Հայաստանում: Այսպես, եթե 1926 թ. Սովետական Հայաստանում ապրում էր 743,6 հազար հայ՝ ՍՍՀՄ ամբողջ հայ բնակչության 47,4 տոկոսը, ապա 1970 թ. Սովետական Հայաստանում ապրում էր արդեն 2208 հազար հայ՝ ՍՍՀՄ հայ բնակչության 62 տոկոսը:

Այսպիսով, 44 տարում ՀՍՍՀ հայ բնակչությունն ավելացել է 3,35 անգամ և դարձել հայության հիմնական կենտրոնացման վայրը: Դա պայմանավորվել է, նախ, բնակչության բնական բուռն աճով, այնուհետև արտասահմանից ներգաղթող հայության համարյա ամբողջ զանգվածի բնակեցումով հանրապետությունում և, վերջապես, ՍՍՀՄ մյուս հանրապետությունների հայ բնակչության մի զգալի մասի կամավոր տեղափոխումով Սովետական Հայաստան:

Ընդսմին, հարկ է նշել, որ ՍՍՀՄ մյուս հանրապետություններում հայու-



թյան ընդհանուր քանակը նշված 44 տարում ոչ թե նվազել, այլ զգալիորեն աճել է: Այսպես. Ադրբեջանական ՍՍՀ-ում հայերի թիվը 1926 թ. 282 հազարից 1970 թ. հասել է 484 հազարի, այսինքն՝ աճել է 1,72 անգամ: (Այդ թվում Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում՝ 111,7 հազարից հասել է 121 հազարի, իսկ Բաքվում՝ 76,7 հազարից՝ 207,5 հազարի): Վրացական ՍՍՀ-ում հայերի թիվը 1926 թ.՝ 307 հազարից 1970 թ. հասել է 452 հազարի, այսինքն՝ աճել է 1,47 անգամ: (Այդ թվում. Թբիլիսիում՝ 100 հազարից 150 հազարի, Աբխազական ԻՍՍՀ-ում՝ 25,7 հազարից 74,9 հազարի): ՌՍՖՍՀ-ում հայերի թիվը 1926 թ. 224,9 հազարից 1970 թ. հասել է 299 հազարի, այսինքն՝ աճել է 1,45 անգամ: Վերջապես, Թուրքմենական ՍՍՀ-ում հայերի թիվը 1926 թ. 13,8 հազարից 1970 թ. հասել է 23 հազարի, այսինքն՝ աճել է 1,66 անգամ:

Այս երևույթը բացատրվում է նրանով, որ ինչպես հայ, այնպես էլ մյուս բոլոր ժողովուրդների համար ՍՍՀՄ բոլոր հանրապետություններում գոյություն ունեն կյանքի ու գործունեության միատեսակ հավասար պայմաններ ու հնարավորություններ:

ՍՍՀՄ կազմում արմատականորեն վերափոխվեց հայ ժողովրդի ամբողջ սոցիալական կյանքը: ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ կառուցելով սոցիալիստական հասարակարգ և հաղթահարելով մասնավոր սեփականատիրության տնտեսական ու գաղափարական մնացուկները, հայ ժողովուրդը հասավ սոցիալական զարգացման միանգամայն նոր աստիճանի: Փոխվեց նրա սոցիալ-դասակարգային կազմը. վերացվեցին շահագործող դասակարգերն ու նրանց մնացորդները, ժողովուրդը դարձավ սոցիալապես համասեռ աշխատավոր դասակարգերի ու խավերի՝ սոցիալիստական բանվոր դասակարգի, աշխատավոր կոլեկտիվ գյուղացիության և մտավորականության մի հավաքականություն: Նախկինում գրեթե համատարած գյուղացիական երկրից Սովետական Հայաստանը վերածվեց ժամանակակից զարգացած արդյունաբերության, մեքենայացված գյուղատնտեսության, արդիական գիտության երկրի, ուր բնակչության մեծ մասը՝ 60 տոկոսն ապրում է քաղաքներում:

Անցած 50 տարում միայն Սովետական Հայաստանում կառուցվել են մոտ 600 խոշոր գործարաններ ու ֆաբրիկաներ, արդյունաբերական արտադրությունը մեծացել է ավելի քան 527 անգամ: Էլեկտրական էներգիայի արտադրության բուռն աճի շնորհիվ Սովետական Հայաստանը բնակչության մեկ շնչի հաշվով արտադրվող էլեկտրաէներգիայի քանակով հասել է աշխարհի ամենազարգացած կապիտալիստական երկրների՝ Անգլիայի, Ճապոնիայի, Իտալիայի մակարդակին: Նույնիսկ ամենապարզագույն մեքենաներ ներմուծող Հայաստանն այժմ դարձել է շարժական էլեկտրակայաններ, գերճշգրիտ մետաղահատ հաստոցներ, տրանսֆորմատորներ և ամենաարդիական էլեկտրոնային սարքեր ու էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ արտահանող երկիր:

Այդ բոլորի հետևանքով արմատական շրջադարձ տեղի ունեցավ հայ ժողովրդի կենսապայմանների ու կենցաղի, նրա հոգևոր զարգացման մակարդակի մեջ: Նա, ինչպես և ՍՍՀՄ մյուս բոլոր ժողովուրդները, այժմ ոչ միայն համատարած գրագետ, այլև ընդհանուր և մասնագիտական կրթություն ունեցող ժողովուրդ է: 1970 թ. մարդահամարի տվյալներով Սովետական Հայաստանի հասուն բնակչության կեսից ավելին՝ 51,6 տոկոսը, ուներ բարձրագույն և միջնակարգ կրթություն, որին պետք է գումարել նաև հատուկ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթություն ունեցող հարյուր հազարավոր մարդկանց:

*Նյութական բարեկեցության զգալի բարձրացման, բնակարանային պայմանների կտրուկ բարելավման, պարբերական վճարովի արձակուրդների և բուժական սպասարկման ապահովման հետևանքով հայ ժողովուրդը, ինչպես և ՍՍՀՄ մյուս ժողովուրդները, այժմ դարձել է աշխարհի ամենաերկարակյաց ժողովուրդներից մեկը։*

ՍՍՀՄ ժողովուրդների միասնական եղբայրական ընտանիքում ապրած կես դարում հիմնովին փոխվեց հայ ժողովրդի հոգևոր՝ մասնավորապես քաղաքական-բարոյական նկարագիրը: *Հայ ժողովուրդը դարձավ պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի, անբաժանելի մասը։ Արտադրության միջոցների հանրային սեփականության հիմքի վրա, տնտեսական, սոցիալ-քաղաքական և մշակութային կյանքի միասնության, մարքսիստական-լենինյան գաղափարախոսության, բանվոր դասակարգի շահերի ու կոմունիստական իդեալների հիմքի վրա ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի նկարագրի համար բնորոշ դարձան սովետական մարդու հիանալի գծերը՝ նվիրվածությունը կոմունիզմի գործին, սոցիալիստական հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, աշխատանքային ու հասարակական-քաղաքական բարձր ակտիվությունը, անհաշտությունը շահագործման ու ճնշման, ազգային ու ռասայական նախապաշարմունքների նկատմամբ, դասակարգային համերաշխությունը բոլոր երկրների աշխատավորության հետ։*

ՍՍՀՄ կազմում հայ ժողովրդի կեսդարյա կյանքը հնարավորություն տվեց հիմնովին լուծելու նաև այնպիսի կարևոր համազգային խնդիր, ինչպիսին ժողովրդի կրթական ու մշակութային օջախների կենտրոնացումն է բուն հայրենիքում, ազգային լեզվի, բովանդակությամբ սոցիալիստական ու ձևով ազգային մշակույթի աննախընթաց զարգացումը:

*Հայ ժողովրդի հիմնական զանգվածի կենտրոնացումը ՍՍՀՄ-ում և նրա կազմում հայկական սովետական պետականության զարգացումն ու ամրապնդումը զգալիորեն ընդարձակեցին հայոց լեզվի գործածության շրջանակները և այն հասցրին զարգացման աննախընթաց բարձր աստիճանի։ Հայոց լեզուն դարձավ Սովետական Հայաստանի կյանքի բոլոր բնագավառների՝ պետական-վարչական և տնտեսական հարաբերությունների, ցածրագույնից մինչև բարձրագույն կրթության և ամբողջ մշակույթի՝ գիտության, գրականության, արվեստի պաշտոնական լեզու։ Մայրենի լեզվի գիտական ուսումնասիրության, նրա գործունեության ոլորտների ընդլայնման, մասնավորապես հայերեն գրքերի, թերթերի ու ամսագրերի հրատարակության վիթխարի աճի, ինչպես և լեզվի պետական կարգավորման շնորհիվ զգալիորեն հաղթահարվեցին տեղական բարբառները, գրական լեզուն դարձավ ավելի կատարյալ և համընդհանուր գործածական։ Ավելին, հայոց լեզուն, ինչպես և միութենական հանրապետությունները ներկայացնող մյուս ժողովուրդների լեզուները, դարձավ ամբողջ ՍՍՀ Միության պաշտոնական լեզուներից մեկը, որոնցով պարտադիր հրապարակվում են միութենական բարձրագույն պետական մարմինների որոշումները, մակագրություններ են արվում ՍՍՀՄ գերբի և դրամանիշների վրա։*

*Միաժամանակ հայ ժողովրդի լեզվական հնարավորություններն զգալիորեն ընդարձակվեցին ՍՍՀՄ-ում ազգամիջյան հաղորդակցության լեզվին՝ ռուսաց լեզվին, տիրապետելու շնորհիվ։ 1970 թ. մարդահամարի տվյալներով ՍՍՀՄ-ի սահմաններում ապրող հայության մոտ մեկ երրորդը լիովին տիրապետում էր ռուսաց լեզվին և դա վիթխարի առավելություն է, որի շնորհիվ նա ավելի լայնորեն է հաղորդակից լինում ոչ միայն ռուս, այլև բազմաթիվ այլ ժողովուրդների մշակութային նվաճումներին։*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները հաղթահարեցին նախկին զանգվածային անգրագիտությունը, ապահովեցին ամբողջ ժողովրդի բարձր կրթական մակարդակ, հասնելով և առաջ անցնելով կապիտալիստական ամենազարգացած երկրներից։*

*ՍՍՀՄ կազմում Սովետական Հայաստանը դարձել է ամբողջ հայության կրթության հիմնական կենտրոն։ 1970 թվականին Սովետական Հայաստանում գործում էին 1511 հանրակրթական դպրոցներ՝ 653 հազար աշակերտներով, 59 միջնակարգ մասնագիտական հաստատություններ՝ 47,1 հազար ուսանողներով և 12 բարձրագույն ուսումնական հաստատություններ՝ 54,4 հազար ուսանողներով։ Ժողովրդի կրթական մակարդակի խիստ աճի մասին է վկայում թեկուզ այն փաստը, որ 52 տարի առաջ ոչ մի բարձրագույն կրթական հիմնարկ չունեցող Հայաստանն այսօր բնակչության 10 հազար հոգու հասնող բուհերի ուսանողների քանակով (214 հոգի) գերազանցում է համարյա բոլոր բարձր զարգացած կապիտալիստական երկրներին։*

*Սակայն հայ երիտասարդությունը կրթություն է ստանում ոչ միայն Սովետական Հայաստանում։ Բանն այն է, որ ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունը և ՍՍՀՄ կառուցման սկզբունքները զարգացման հավասար ու ամենալայն հնարավորություններ են ստեղծել տվյալ հանրապետության մեջ ապրող բոլոր ազգությունների համար։ Եվ ինչպես Սովետական Հայաստանում իրենց կրթական օջախներն ունեն այնտեղ ապրող ազգային փոքրամասնությունները՝ ադրբեջանցիները, ռուսները և քրդերը, այնպես էլ և Սովետական Վրաստանում, Սովետական Ադրբեջանում և Հյուսիսային Կովկասում ապրող հայերն ունեն իրենց կրթական օջախները, ուր նրանք ուսումնառում են մայրենի լեզվով։ Դրանից բացի տասնյակ հազարավոր հայ երիտասարդներ բարձրագույն կրթություն են ստանում Միության համարյա բոլոր խոշոր կենտրոնների բարձրագույն ուսումնական հաստատություններում։*

*Այդ բոլորի շնորհիվ հայ ժողովուրդը, ինչպես և ՍՍՀՄ բոլոր ժողովուրդները, այժմ դարձել է ժամանակակից բարձր կրթություն ու որակավորում ունեցող մարդկանցից բաղկացած ժողովուրդ։ Դրա վկայությունն է այն փաստը, որ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ 1970 թ. զբաղված էին 128,1 հազար բարձրագույն կրթություն և 102,1 հազար միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող հայ մասնագետներ։*

*Անցած 50 տարում ՍՍՀՄ-ը դարձել է ժամանակակից գիտության բուռն զարգացման, համաշխարհային գիտության առաջին շարքում կանգնած երկիր։ ՍՍՀՄ կազմում գիտության երկիր է դարձել նաև Սովետական Հայաստանը՝ գիտությունների ակադեմիայով, 97 գիտա-հետազոտական հիմնարկներով, տասնյակ հազարից ավելի գիտական աշխատողներով։ Սովետական Հայաստանի մի շարք գիտական հիմնարկներ՝ Բյուրականի աստղաֆիզիկական աստղադիտարանը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ինստիտուտը, նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը և շատ ուրիշներ այժմ համամիութենական ու համաշխարհային ճանաչում ունեն, սովետահայ գիտնականները լայնորեն հանդես են գալիս համամիութենական և համաշխարհային գիտական*

հետ հայ ժողովրդի անխախտ միասնությունը, ամենօրյա շփումն ու ամենասերտ համագործակցությունը նպաստեցին ոչ միայն նրա ազգային լեզվի ու մշակույթի, ազգային ինքնագիտակցության հարստացմանն ու զարգացմանը, այլև նրա անշեղ մերձեցմանը բոլոր սոցիալիստական ազգերի հետ։ Այդ մերձեցման ամենավառ դրսևորումներից է ՍՍՀՄ բոլոր ազգերի մշակութային երևույթների համամիութենական նշումը։ Պուշկինի, Գորկու, Դոստոևսկու, Շևչենկոյի, Ռուսթավելու, Նիզամիի, Կոլասի, Նավոիի հոբելյանների հետ միասին Մաշտոցի, Սայաթ-Նովայի, Թումանյանի, Չարենցի, Կոմիտասի, Սպենդիարյանի և հայ մշակույթի մյուս խոշոր գործիչների հոբելյանները դարձել են ընդհանուր միութենական երևույթ և մեծ խանդավառությամբ նշվել ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների կողմից։

ՍՍՀՄ կազմում հայ ժողովրդի մեծ մասի խաղաղ ու ապահով կյանքը, բուռն զարգացումը և պետական կազմակերպվածությունը հնարավորություն տվեցին բարերար ազդեցություն գործելու դառն ճակատագրի բերումով աշխարհի բազմաթիվ երկրներում ցրված հայության հատվածների վրա։ Համոզվելով, որ ՍՍՀՄ-ն ապահովում է հայ ժողովրդի սուվերենությունը, նրա կյանքի բարելավումը և լեզվի ու մշակույթի անկաշկանդ զարգացումը, սփյուռքահայության աշխատավոր զանգվածները անվերապահորեն կանգնեցին Սովետական Հայաստանի ու ՍՍՀՄ նկատմամբ բարեկամության ու աջակցության դիրքերում։ Ծնունդ առավ ու հզորացավ հայրենադարձության ձգտումը։ Սովետական Հայաստանի գոյությունը, հայ ժողովրդի սոցիալիստական կյանքը որոշակի ազդեցություն ունեցան սփյուռքահայության սոցիալական ու գաղափարական կյանքի վրա՝ ուժ ու ոգեշնչում տալով առաջադիմական ուժերին՝ հետադիմական, ազգայնական կուսակցությունների ու խմբավորումների դեմ նրանց մղած պայքարում։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումները և նրա դիրեկտիվների հիման վրա ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 9-րդ հնգամյա պլանի հաջող իրականացումը նոր, լուսավոր հեռանկարներ են բացում ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների սոցիալ-տնտեսական կյանքի հետագա բուռն զարգացման համար։ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հետագա ամրապնդումն ու բարգավաճումը ապահովում է նրա կազմի մեջ մտնող յուրաքանչյուր ժողովրդի հետագա ծաղկումն ու ինտերնացիոնալիզմի բարերար հիմքի վրա նրանց անշեղ մերձեցումը։ Եվ այսօր հայ ժողովուրդը գիտակցում է, որ միայն ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում է ապահովված նրա գոյատևումն ու է՛լ ավելի լուսավոր ապագան։

---



Կ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՆԱՌԻԿ ԱՄՐՈՑԸ

> **Մեր իդեալն է՝ վերջ տալ պատերազմներին, դադարեցնել կողոպուտներն ու բռնությունները, հաստատել խաղաղություն ժողովուրդների միջև։**
>
> **Վ. Ի. ԼԵՆԻՆ**



ԴԱՐԵՐ շարունակ աշխատավոր մարդը ձգտել է խաղաղության, երազել ազատ ու երջանիկ կյանքի մասին, պայքարել ստրկացման ու հարստահարման, ավերիչ պատերազմների դեմ։ Սակայն մարդկության այդ լուսավոր բաղձանքները, նրա ազատագրական մաքառումները շարունակ բախվել են տիրող դասակարգերի շահերին, նրանց կատաղի, արյունահեղ դիմադրությանը և մնացել անկատար։

Պատմության մեջ առաջինը Ռուսաստանի պրոլետարիատին էր վիճակված փշրելու կապիտալի համապարփակ շղթան և տնտեսական ու քաղաքական աներեր հիմքի վրա, պետականորեն պայքարելու հանուն խաղաղության։ Մեծ Հոկտեմբերի ահեղ փոթորիկների մեջ ծնված բանվորա-գյուղացիական առաջին պետությունը բացեց համաշխարհային քաղաքականության նոր դարագլուխը և ժողովուրդների ու երկրների հարաբերություններում իրագործեց լենինյան սկզբունքները։

Վերջապես իրականացան խաղաղության և ապահով կյանքի մասին մարդկության դարավոր ակնկալությունները։ Սովետների երկիրը դարձավ հուսալի պատվար ընդդեմ զավթողական պատերազմների. երկրագնդի բոլոր աշխատավորները ձեռք բերեցին մի այնպիսի հզոր ուժ, որը նրանց թևավորեց ու լայն հնարավորություններ ընձեռեց առավել հետևողականորեն ու հաստատակամ պայքարելու խաղաղության ու ժողովուրդների անվտանգության համար։ Սովետական Ռուսաստանի բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության պայքարը հանուն խաղաղության հսկայական ազդեցություն գործեց համաշխարհային հեղափոխական շարժման վրա, խթանեց դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար աշխատավոր զանգվածների դասակարգային գոտեմարտերի ծավալմանը։ Երկրագնդի բոլոր ծագերից աշխատավորները երախտագիտության խոսք էին հղում ու ողջունում Ռուսաստանի բանվոր դասակարգին, որն առաջինը փշրեց կապիտալիստական ստրկության շղթաները և ամբողջ աշխարհում պարզեց սոցիալիզմի ու խաղաղության դրոշը։ Իրականացավ գի-

համաժողովներում։ Մասնավորապես վերջին տարիներին Սովետական Հայաստանը դարձել է գիտության մի շարք բնագավառների՝ ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի, բժշկագիտության, գրականագիտության մասնագիտական պրոբլեմների համամիութենական ու միջազգային խորհրդակցությունների ու համաժողովների կազմակերպման կենտրոններից մեկը։

Հայ գիտնականները գործունեության լայն ասպարեզ ունեն ոչ միայն ՀՍՍՀ, այլև Միության բոլոր գիտական կենտրոններում։ Մասնավորապես այդ մասին է վկայում այն փաստը, որ ՍՍՀՄ գիտական հիմնարկներում աշխատող հայ գիտնականների թիվը 1950 թ. 3864 հոգուց 1970 թ. հասել է 20194 հոգու, որից 902-ը գիտության դոկտորներ են և 5737-ը գիտության թեկնածուներ։

ՍՍՀՄ կազմում հայ ժողովրդի վերածննդի ու բուռն ծաղկման փայլուն վկայություններից մեկը ամբողջ հայ մշակույթի, գրականության ու արվեստի աննախընթաց զարգացումն է։ Այս առթիվ անհրաժեշտ է հատկապես նշել այնպիսի կարևոր երևույթ, ինչպիսին նախկինում աշխարհով մեկ ցրված հայ մշակութային օջախների, մշակութային արժեքների, ինչպես և մշակույթի գործիչների կենտրոնացումն է Սովետական Հայաստանում, որը մեծապես նպաստեց նրա բուռն ծաղկմանը։

Սովետական Հայաստանում ստեղծվել են գրականության և արվեստի պետական հիմնարկություններ՝ դրամատիկական, օպերային և օպերետային թատրոններ, թանգարաններ, հազարավոր ակումբներ ու մշակութային տներ, ֆիլհարմոնիաներ ու երաժշտական կոլեկտիվներ, կինոնկարահանման, հեռուստատեսության ու ռադիոհաղորդման կենտրոններ։ Գրականության և արվեստի պրոբլեմներն ուսումնասիրվում են հատուկ գիտական հիմնարկություններում։ Ստեղծվել են գրականության և արվեստի գործիչներին համախմբող գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, ճարտարապետների միություններ, թատերական, երգչախմբային, ինժեներա-տեխնիկական աշխատողների և այլ ընկերություններ։

Սովետական իշխանության հոգատարության շնորհիվ Միության բոլոր վայրերից հավաքվեցին և Սովետական Հայաստան փոխադրվեցին հայ մշակույթի բազմաթիվ մեծարժեք ստեղծագործություններ (ձեռագրերի, նկարների, քանդակների, հնատիպ գրքերի հավաքածուներ, նյութական մշակույթի մի շարք նմուշներ և այլն)։ Դրանց հիման վրա ստեղծված Մատենադարանը, կերպարվեստի թանգարանը, հանրային գրադարանը և մի շարք այլ հիմնարկություններ այժմ դարձել են հայ և մյուս ժողովուրդների մշակութային արժեքների մեծահարուստ գանձարաններ։

Այդ բոլորն ըստ ամենայնի նպաստեց հայ դարավոր մշակույթի բուռն զարգացմանը և որակապես նոր աստիճանի հասնելուն։ Իսկ դա արտահայտվեց, նախ, նրանում, որ հայ մշակույթը դարձավ բովանդակությամբ սոցիալիստական, պահպանելով ու զարգացնելով ազգային ձևը, այնուհետև, նրա մեջ անցյալ հարուստ ժառանգության լավագույն ավանդները և մեծագույն արժեքները օրգանապես զուգորդվեցին արդիականության հետ, երրորդ, լայն զարգացում ստացան արվեստի մի շարք նոր բնագավառներ (օպերային և բալետային երաժշտությունը, կինոարվեստը, հեռուստատեսությունը և այլն), չորրորդ, գրականությունն ու արվեստը դարձան իսկապես մասսայական, համընդգրկող երևույթներ հասարակական կյանքում։



ՍՍՀՄ-ում գիտության և արվեստի, ընդհանրապես ամբողջ հոգևոր մշակույթի համար բնորոշ է դրանց ոչ թե ազգային շրջանակներում մեկուսացած զարգացումը, այլ իրոք ամենասերտ շփումը, փոխազդեցությունն ու փոխհարստացումը, որի շնորհիվ ազգային մշակույթը, ամենևին չկորցնելով իր ինքնուրույնությունն ու ինքնատիպությունը, ավելի է զարգանում ու հարստանում ինտերնացիոնալ նշանակություն ունեցող արժեքներով, դուրս է գալիս տեղական շրջանակներից ու դառնում համամիութենական, համաշխարհային երևույթ։ Դրան նպաստում են մասնավորապես ՍՍՀՄ-ում ավանդույթ դարձած ազգային մշակույթների նվաճումների ցուցադրման փոխադարձ շաբաթները, ինչպես և ընդհանուր համամիութենական ասպարեզը՝ համամիութենական ռադիոյով ու հեռուստատեսությամբ, Մոսկվայի, Լենինգրադի ու այլ խոշորագույն կենտրոնների բեմահարթակներում ազգային արվեստի կոլեկտիվների ու անհատ կատարողների պարբերական ելույթները, գեղարվեստական ստեղծագործությունների համամիութենական ցուցահանդեսները, միութենական պարբերականներում և առանձին գրքերով ազգային գրականության լավագույն երկերի հրատարակումը ռուսերեն լեզվով։

Անցած 50 տարում ՍՍՀՄ-ը դարձել է գրահրատարակության համաշխարհային կենտրոն. այժմ աշխարհում լույս տեսնող գրքերի մեկ քառորդը հրատարակվում է ՍՍՀՄ-ում։ Ընդ որում, Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության վառ դրսևորումն է այն փաստը, որ ՍՍՀՄ-ում գրականություն է հրատարակվում ավելի քան 100 ազգերի ու ազգությունների լեզուներով, այդ թվում նաև ավելի քան 40 ազգերի լեզուներով, որոնք գիր ու գրականություն են ստեղծել սոցիալիստական կարգեր հաստատելուց հետո։

Այդ վերելքը դրսևորվել է նաև հայերեն գրահրատարակության աննախընթաց աճի մեջ։ Անցած 50 տարում Սովետական Հայաստանի հրատարակչությունները լույս են ընծայել մոտ 36 հազար անուն գիրք՝ ավելի քան 225 միլիոն ընդհանուր տպաքանակով։ 1970 թ. ՍՍՀՄ-ում հրատարակվել է 822 հայերեն գիրք և գրքույկ՝ 7 մլն 224 հազար ընդհանուր տպաքանակով։ Սովետական Հայաստանում 1970 թ. հրատարակվել է 74 հայերեն ամսագիր՝ 789 հազար օրինակ միանվագ տպաքանակով և 72 հայերեն թերթ՝ 1 մլն 32 հազար օրինակ միանվագ տպաքանակով։ Դրանից բացի հայերեն գրքեր, ամսագրեր ու թերթեր են հրատարակվում Սովետական Վրաստանում և Սովետական Ադրբեջանում, ինչպես և Սովետական Հայաստանում գրականություն է հրատարակվում այստեղ բնակվող ազգային փոքրամասնությունների՝ ադրբեջանցիների ու քրդերի մայրենի լեզվով։

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում հայ ժողովուրդը հասել է մեծագույն նվաճումների։ Ամուր և հաստատուն կանգնելով կոմունիստական հասարակության կառուցման ուղու վրա, նա սփռված ու բնաջնջվող ժողովրդից վերածվեց հավաքվող ու աճող ժողովրդի, հաղթահարեց անցյալի ողբերգության հետևանքով առաջացած հետամնացությունը, հասավ սոցիալ-տնտեսական ու հոգևոր կյանքի զարգացման ամենաբարձր աստիճանի, իր պատվավոր տեղը գրավեց աշխարհի ամենազարգացած ժողովուրդների շարքում։ Նա կարողացավ իր անցյալի արժեքներին ու ավանդույթներին ավելացնել բազում նոր արժեքներ ու ավանդույթներ և դրանով իսկ դառնալ միանգամայն նոր, արդիական ժողովուրդ։ Կոմունիզմ կառուցող ժողովուրդների

հետ հայ ժողովրդի անխախտ միասնությունը, ամենօրյա շփումն ու ամենասերտ համագործակցությունը նպաստեցին ոչ միայն նրա ազգային լեզվի ու մշակույթի, ազգային ինքնագիտակցության հարստացմանն ու զարգացմանը, այլև նրա անշեղ մերձեցմանը բոլոր սոցիալիստական ազգերի հետ։ Այդ մերձեցման ամենավառ դրսևորումներից է ՍՍՀՄ բոլոր ազգերի մշակութային երևույթների համամիութենական նշումը։ Պուշկինի, Գորկու, Դոստոևսկու, Շևչենկոյի, Ռուսթավելու, Նիզամիի, Կոլասի, Նավոիի հոբելյանների հետ միասին Մաշտոցի, Սայաթ-Նովայի, Թումանյանի, Չարենցի, Կոմիտասի, Սպենդիարյանի և հայ մշակույթի մյուս խոշոր գործիչների հոբելյանները դարձել են ընդհանուր միութենական երևույթ և մեծ խանդավառությամբ նշվել ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների կողմից։

ՍՍՀՄ կազմում հայ ժողովրդի մեծ մասի խաղաղ ու ապահով կյանքը, բուռն զարգացումը և պետական կազմակերպվածությունը հնարավորություն տվեցին բարերար ազդեցություն գործելու դառն ճակատագրի բերումով աշխարհի բազմաթիվ երկրներում ցրված հայության հատվածների վրա։ Համոզվելով, որ ՍՍՀՄ-ն ապահովում է հայ ժողովրդի սուվերենությունը, նրա կյանքի բարելավումը և լեզվի ու մշակույթի անկաշկանդ զարգացումը, սփյուռքահայության աշխատավոր զանգվածները անվերապահորեն կանգնեցին Սովետական Հայաստանի ու ՍՍՀՄ նկատմամբ բարեկամության ու աջակցության դիրքերում։ Ծնունդ առավ ու հզորացավ հայրենադարձության ձգտումը։ Սովետական Հայաստանի գոյությունը, հայ ժողովրդի սոցիալիստական կյանքը որոշակի ազդեցություն ունեցան սփյուռքահայության սոցիալական ու գաղափարական կյանքի վրա՝ ուժ ու ոգևշնչում տալով առաջադիմական ուժերին՝ հետադիմական, ազգայնական կուսակցությունների ու խմբավորումների դեմ նրանց մղած պայքարում։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարի պատմական որոշումները և նրա դիրեկտիվների հիման վրա ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 9-րդ հնգամյա պլանի հաջող իրականացումը նոր, լուսավոր հեռանկարներ են բացում ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների սոցիալ-տնտեսական կյանքի հետագա բուռն զարգացման համար։ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հետագա ամրապնդումն ու բարգավաճումը ապահովում է նրա կազմի մեջ մտնող յուրաքանչյուր ժողովրդի հետագա ծաղկումն ու ինտերնացիոնալիզմի բարերար հիմքի վրա նրանց անշեղ մերձեցումը։ Եվ այսօր հայ ժողովուրդը գիտակցում է, որ միայն ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում է ապահովված նրա գոյատևումն ու է՛լ ավելի լուսավոր ապագան։

---



Կ. Ս. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՆԱՌԻԿ ԱՄՐՈՑԸ

Մեր իդեալն է՝ վերջ տալ պատերազմներին, դադարեցնել կողոպուտներն ու բռնությունները, հաստատել խաղաղություն ժողովուրդների միջև։

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**



ԴԱՐԵՐ շարունակ աշխատավոր մարդը ձգտել է խաղաղության, երազել ազատ ու երջանիկ կյանքի մասին, պայքարել ստրկացման ու հարստահարման, ավերիչ պատերազմների դեմ։ Սակայն մարդկության այդ լուսավոր բաղձանքները, նրա ազատագրական մաքառումները շարունակ բախվել են տիրող դասակարգերի շահերին, նրանց կատաղի, արյունահեղ դիմադրությանը և մնացել անկատար։

Պատմության մեջ առաջինը Ռուսաստանի պրոլետարիատին էր վիճակված փշրելու կապիտալի համապարփակ շղթան և տնտեսական ու քաղաքական աներեր հիմքի վրա, պետականորեն պայքարելու հանուն խաղաղության։ Մեծ Հոկտեմբերի ահեղ փոթորիկների մեջ ծնված բանվորա-գյուղացիական առաջին պետությունը բացեց համաշխարհային քաղաքականության նոր դարագլուխը և ժողովուրդների ու երկրների հարաբերություններում իրագործեց լենինյան սկզբունքները։

Վերջապես իրականացան խաղաղության և ապահով կյանքի մասին մարդկության դարավոր ակնկալությունները։ Սովետների երկիրը դարձավ հուսալի պատվար ընդդեմ զավթողական պատերազմների. երկրագնդի բոլոր աշխատավորները ձեռք բերեցին մի այնպիսի հզոր ուժ, որը նրանց թևավորեց ու լայն հնարավորություններ ընձեռեց առավել հետևողականորեն ու հաստատակամ պայքարելու խաղաղության ու ժողովուրդների անվտանգության համար։ Սովետական Ռուսաստանի բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության պայքարը հանուն խաղաղության հսկայական ազդեցություն գործեց համաշխարհային հեղափոխական շարժման վրա, խթանեց դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար աշխատավոր զանգվածների դասակարգային գոտեմարտերի ծավալմանը։ Երկրագնդի բոլոր ծագերից աշխատավորները երախտագիտության խոսք էին հղում ու ողջունում Ռուսաստանի բանվոր դասակարգին, որն առաջինը փշրեց կապիտալիստական ստրկության շղթաները և ամբողջ աշխարհում պարզեց սոցիալիզմի ու խաղաղության դրոշը։ Իրականացավ գի-

տական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի մարգարեական այն կանխատեսումը, որ կապիտալիզմի տնտեսական աղքատության ու քաղաքական խելահեղության փոխարինելու է սոցիալիստական հասարակարգը, որի միջազգային սկզբունքը՝ խաղաղությունն է… (Տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 5)։

## 1

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ կուսակցության և սոցիալիստական պետության միջազգային հարաբերությունների հիմնական սկզբունքները մշակեց Վ. Ի. Լենինը։ Գլխավորելով սոցիալիզմի առաջին պետության համակողմանի գործունեությունը, նա անմիջականորեն ղեկավարում էր նորաստեղծ երկրի արտաքին քաղաքականությունը։

Սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության գործնական խնդիրները լուծելիս, Վ. Ի. Լենինը ելնում էր դասակարգային չափանիշից և պահանջում հաշվի առնել «բոլոր պետություններում բոլոր դասակարգերի ռեալ ուժերի հարաբերակցությունը» (Երկեր, հ. 33, էջ 166)։ Կանխանշելով և իրականացնելով սովետական պետության միջազգային քաղաքականությունը, կոմունիստական կուսակցությունը միշտ ղեկավարվել է լենինյան այն դրույթով, որ յուրաքանչյուր երկրի ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականությունը դասակարգային բնույթ ունի և բոլոր պարագաներում պաշտպանում է տվյալ երկրի տիրապետող դասակարգերի շահերը։ Դասակարգային պայքարի սկզբունքները միջազգային հարաբերությունների ոլորտում կիրառելու շնորհիվ է միայն, որ ՍՍՀՄ-ը դարձավ սոցիալիզմի ու խաղաղության անպարտելի ամրոցը։

Հույժ բնորոշ է, որ Սովետական Ռուսաստանի բանվորա-գյուղացիական իշխանության արտաքին քաղաքական առաջին ակտը խաղաղության դեկրետն էր։ Սովետների երկիրը պատերազմող բոլոր ժողովուրդներին ու նրանց կառավարություններին պաշտոնապես առաջարկեց անհապաղ բանակցություններ սկսել դեմոկրատական հաշտություն կնքելու համար։ Բացահայտելով իմպերիալիստական պատերազմի զավթողական բնույթը, սովետական կառավարությունը պատմության մեջ առաջին անգամ պետական փաստաթղթում պատերազմը նշավակեց որպես հանցագործություն և իմպերիալիզմի ագրեսիվ նկրտումներին հակադրեց խաղաղության, ժողովուրդների միջազգային համագործակցության ու բարեկամության քաղաքականությունը։

Մերկացնելով, ժխտելով փոքր ու թույլ զարգացած երկրների հարստահարման, գաղութային ստրկացման իմպերիալիստական քաղաքականությունը, սովետների իշխանությունը հետևողականորեն կենսագործեց բոլոր ազգերի ժողովուրդների իրավահավասարության, անկախության ու սուվերենության լենինյան սկզբունքները։ Սովետական պետությունը պատերազմի և ուժի դիրքի քաղաքականությանը հակադրեց բոլոր երկրների ու ժողովուրդների հետ հաշտ ու խաղաղ ապրելու, տնտեսական, կուլտուրական, գիտական լայն համագործակցություն հաստատելու, սոցիալական տարբեր կարգեր ունեցող երկրների միջև խաղաղ գոյակցության քաղաքականությունը։

Բուրժուական դիվանագիտությունը միջազգային ասպարեզում կիրառում է գաղտնի գործարքների, շանտաժի, թելադրանքի, ժողովրդական մասսաներին խաբելու մեթոդներ։ Կոմունիստական կուսակցության կողմից ղեկավարվող



սոցիալիստական պետությունն իր գոյության հենց առաջին օրվանից ամբողջ աշխարհի առջև մերկացնում է իմպերիալիզմի մարդատյաց ոտնձգությունները, նրա հակաժողովրդական դիվանագիտության ռեակցիոն բնույթը և ցույց տալիս խաղաղության համար անձնուրաց պայքարի վառ օրինակ։ Ահա թե ինչու ՍՍՀՄ վարած արտաքին խաղաղասիրական քաղաքականության լենինյան էտապն առանձնահատուկ տեղ է գրավում համաշխարհային պատմության մեջ։

## 2

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ հեղափոխության հաղթանակից հետո մեր բազմազգ երկրի ժողովուրդների երկրորդ խոշորագույն նվաճումը ՍՍՀ Միության կազմավորումն էր։ Պատմական այդ դարակազմիկ իրողության շնորհիվ ոչ միայն իրագործվեց սոցիալիզմի կառուցումը երկրագնդի մեկ վեցերորդ մասում, այլև հեղաբեկիչ վիթխարի ազդեցություն գործեց համաշխարհային ողջ զարգացման վրա։ ՍՍՀՄ-ը դարձավ խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ապահովման ամենահզոր ու հուսալի պատվարը։ Այս հանգամանքը խաղաղասեր ուժերի համար ստեղծեց կայուն և հուսալի նախադրյալներ՝ առավել հաստատակամորեն ու միասնական ճակատով պայքարելու իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության դեմ։ Աշխարհի բազմամիլիոն աշխատավորները տեսան ու փորձով համոզվեցին, որ սոցիալիզմն ու խաղաղությունը նույնական են։

Դեռևս 1923 թվականի հուլիսի 13-ին, ՍՍՀՄ Կենտգործկոմը, տեղեկացնելով Սովետական Միության արտաքին գործերի ժողկոմատ ստեղծելու մասին, ընդգծում էր. «Սովետական հանրապետությունների ժողովուրդների եղբայրական համագործակցության հիման վրա ստեղծված միութենական պետության նպատակն է՝ հաշտ ու խաղաղ ապրել բոլոր ժողովուրդների հետ… Լինելով ճնշված ժողովուրդների բնական դաշնակիցը, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը ձգտում է բոլոր ժողովուրդների հետ հաստատել հաշտ ու բարեկամական հարաբերություններ ու տնտեսական համագործակցություն» (Документы внешней политики СССР, т. VI, 1961, стр. 384—385)։

ՍՍՀՄ կազմավորման կարևորագույն արդյունքներից մեկն այն էր, որ ամրապնդվեցին սովետական հանրապետությունների միջազգային դիրքերը։ Եղբայրացած ազգերի ու ազգությունների սոցիալիստական դաշինքի շնորհիվ ՍՍՀՄ-ը դարձավ աշխարհի հզոր տերություններից մեկը, առանց որի այլևս հնարավոր չէր քննարկել ու լուծել միջազգային պրոբլեմները։ Ուստի պատահական չէ, որ ՍՍՀՄ կազմավորումից հետո, սովետական դիվանագիտությունը մի շարք փայլուն հաղթանակներ տարավ։ Մեկը մյուսի ետևից Սովետական Միությունը ճանաչեցին կապիտալիստական տասնյակ երկրներ՝ հաստատելով դիվանագիտական հարաբերություններ։ Հօդս ցնդեցին սովետական իշխանության տապալման իմպերիալիստական սին հույսերը։

Իր կազմավորման օրից ի վեր ՍՍՀՄ-ը դարձել է համաշխարհային խաղաղության հուսալի ավանգարդը, որը հսկայական ավանդ է մուծել մարդկության պրոգրեսի երթում։ Փորձենք այս հետևությունը փաստարկել իրական ապացույցներով։

Հայտնի է աշխարհին, որ Սովետական Միությունը, լինելով մեր ժողո-

վրդի և, միաժամանակ, ամբողջ մարդկության կենսական շահերից, հետևողական պայքար է ծավալել նոր պատերազմի սանձազերծման, իմպերիալիզմի հակասովետական քաղաքականության դեմ։ Մերկացնելով իմպերիալիստական երկրների զավթողական ամեն տեսակի գործողությունները, ՍՍՀՄ-ը վճռականորեն հանդես է եկել սպառազինությունների մրցավազքի դեմ, առաջ քաշել ընդհանուր զինաթափման հարցը։

Այս առնչությամբ հիշարժան է Ճենովայի կոնֆերանսը (1922 թ.), որտեղ սովետական պատվիրակությունը (որն ի դեպ, առաջին անգամ էր մասնակցում միջազգային նման համաժողովի), իրականացնելով Վ. Ի. Լենինի ցուցումները, առաջարկեց քննարկել ընդհանուր զինաթափման պրոբլեմը։

Այնուհետև, քսանական թվականների վերջերին, Սովետական Միությունը հրավիրվեց՝ մասնակցելու Ազգերի լիգայի զինաթափման կոնֆերանսի նախապատրաստմանը։ Սովետական պատվիրակությունը կրկին առաջարկեց (1932 թ.) զինաթափման իր ծրագիրը, սակայն Ազգերի լիգայի անդամ կապիտալիստական տերությունները մտահոգված էին ոչ թե զինաթափման, այլ սպառազինությունների մրցավազքի սահմանները ճշտելու հոգսերով։ Ուստի, սովետական առաջարկները համարվեցին «ոչ լուրջ», «անիրական» և թաղվեցին Ազգերի լիգայի բազում հանձնաժողովների թղթապանակների մեջ։

Թեև սովետական դիվանագիտության այդ խոհեմ առաջարկները հանդիպեցին սոցիալիզմի ու խաղաղության թշնամի ուժերի դիմադրությանը և մերժվեցին, սակայն համաշխարհային առաջադեմ հասարակայնությունը կրկին համոզվեց, որ խաղաղության, ժողովուրդների երջանիկ ու ապահով կյանքի համար մաքառող միակ տերությունը Սովետական Միությունն է։

1933 թվականին աշխարհը կանգնեց ծանր հետևանքներով հղի դաժան փորձությունների շեմին։ Գերմանիայում իշխանությունը զավթեց միջազգային իմպերիալիզմի հարվածային բռունցքը՝ ֆաշիզմը։ Ժողովուրդների խաղաղությանը, նրանց ազգային անկախությանը սպառնացող այդ ահավոր չարիքը վերացնելու նպատակով, ՍՍՀՄ-ն առաջարկեց անհապաղ ստեղծել կոլեկտիվ անվտանգության սիստեմ։ Բայց Ազգերի լիգայում ջուր ծեծող կապիտալիստական պետությունների ներկայացուցիչները չանսացին խոհեմության ձայնին, չկամեցան Եվրոպայի երկնակամարից ցրել ֆաշիզմի հեղձուցիչ մթնոլորտը, քանի որ դա հակասում էր նրանց դասակարգային շահերին։ Իմպերիալիզմի օրինական զավակը՝ ֆաշիզմը, հավակնում էր ոչնչացնելու ոչ միայն սովետների առաջին երկիրը՝ սոցիալիզմի, դեմոկրատիայի, խաղաղության միջնաբերդը, այլև համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժումը։ Ուստի պատահական չէր, որ ֆաշիզմը, արևմտյան տերությունների համընդհանուր թողտվության պայմաններում, ստացավ գործողությունների լիակատար ազատություն...

1935 թվականին ֆաշիստական Իտալիան հարձակվեց Հաբեշստանի վրա։ Սովետական Միությունը, որն արդեն Ազգերի լիգայի անդամ էր, առաջարկեց անհապաղ սանձել ագրեսորին ու պաշտպանել Հաբեշստանին։ Սակայն արևմտյան տերությունները, քամահրելով հաբեշ ժողովրդի իրավունքները, վեհերոտ խոսքերով դատապարտելով ագրեսորին, գործնական քայլերի չդիմեցին իտալական ֆաշիստների զավթողական այդ պատերազմը դադարեցնելու համար։ Ոգևորվելով այդ անպատիժ արարքից, ֆաշիզմն ավելի մոլեգնեց, ճգնելով հրի ու սրի միջոցով աշխարհում տարածել իր ախտակիր գաղափարները։



Հիշենք Իսպանիայի 1936 թվականի արյունալի իրադարձությունները։ Երբ գերմանական և իտալական ֆաշիստները, օգնելով ֆրանկոյականներին, ինտերվենցիա կազմակերպեցին դեմոկրատական Իսպանիայի դեմ, միակ ուժը, որը վճռականորեն հանդես եկավ իսպանական հայրենասերների պաշտպանությամբ, ՍՍՀՄ-ն էր և մի շարք այլ երկրների կոմունիստները, որոնց ինտերնացիոնալ բրիգադները Իսպանիայի հակաֆաշիստների հետ կողք-կողքի մարտնչում էին գերմանա-իտալական ու ֆրանկոյական պատժիչ զորախմբերի դեմ։ Իսկ Արևմուտքի իմպերիալիստները, «չմիջամտելու» կեղծ լոզունգով, թևավորում էին լկտիացած ֆաշիստներին։ Ազատության մարտիկների ու նրանց պաշտպանների գործողությունները կաշկանդելու համար նրանք բլոկադայի էին ենթարկել Իսպանիան, բայց Գերմանիային ու Իտալիային հնարավորություններ էին ընձեռել Պորտուգալիայի վրայով ու ծովային ուղիներով օգնելու ֆրանկոյականներին։ Միջազգային այսպիսի բարդ կացության և ուժերի անհավասարության պատճառով, Իսպանիայի հայրենասիրական ուժերը պարտվեցին։ Համաշխարհային ռեակցիան տոնեց իր արյունոտ հաղթանակը։ Այսպիսով, Հիտլերն ու Մուսոլինին կատարեցին մի անարգել չարագործություն ևս։

Ֆաշիզմի մոլուցքը գնալով բորբոքվում էր... 1938 թվականին հիտլերյան Գերմանիան կլանեց Ավստրիան։ Եվրոպան տենդի մեջ էր։ Հիտլերը նախապատրաստվում էր զավթել Չեխոսլովակիան։ Ճգնաժամի այդ ծանր պահին, երբ արևմտյան դիվանագիտությունը սիրաշահում էր Հիտլերին, կամենում «խաղաղեցնել» նրան, կրկին հնչեց սովետների երկրի խաղաղասիրական ձայնը։ Չեխոսլովակիան զավթելու նախօրյակին սովետական կառավարությունը կոչ արեց գործուն պայքար սկսել մոլեգնած ագրեսորի դեմ և խաղաղությունն ապահովելու համար, քանի դեռ ուշ չէ, հրավիրել կոնֆերանս։ Սակայն Արևմուտքն այս անգամ ևս մերժեց ՍՍՀՄ առաջարկները։

Հիրավի, շատ չանցած արևմտյան դիվանագիտությունը ճաշակեց իր հակաժողովրդական քաղաքականության դառը պտուղները։ Մյունխենյան այդ գործարքի նպատակն էր՝ փոքր ժողովուրդներին նետելով ֆաշիզմի երախը, չափավորել Հիտլերի զավթողական պլաններն Արևմուտքի նկատմամբ և Գերմանիայի ռազմական մեքենան ուղղել Սովետական Միության դեմ։ Սակայն արևմտյան տերությունների կառավարողների այդ կործանարար քաղաքականությունը բումերանգի նման հարվածեց իրենց ճակատին...

Շարունակելով մյունխենյան նենգամիտ քաղաքականությունը, նրանք ձախողեցին նաև 1939 թվականի Մոսկվայի բանակցությունները, որտեղ քննարկվում էին ՍՍՀՄ առաջարկները՝ համատեղ ուժերով ֆաշիստական ագրեսիայի դեմ հանդես գալու մասին։ Բայց խաղաղությունն ու կոլեկտիվ անվտանգությունն ապահովող այդ կոնստրուկտիվ առաջարկները նույնպես մերժվեցին։ Իմպերիալիստների դասակարգային նեղ շահերից բխող այդ քաղաքականության համար թանկ վճարեցին աշխարհի ժողովուրդները, որոնք նետվեցին համաշխարհային նոր պատերազմի արյունալի ապանդի մեջ։

Գրեթե ողջ Եվրոպան զավթած հիտլերյան Գերմանիան, ուխտադրժորեն հարձակվեց Սովետական Միության վրա։ Սակայն դա ֆաշիզմի ագրեսիվ խենհեղ փորձն էր։ Սովետական հերոս ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Հայրենական մեծ պատերազմում ջախջախեց անարգ թշնամուն և պատմական փառապանծ հաղթանակ նվաճեց։ Աշխարհի

բոլոր ժողովուրդները փրկվեցին ֆաշիստական ստրկացման մահաբեր սպառնալիքից։ Դա սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության փայլուն հաղթանակն էր պատերազմի ու ագրեսիայի սև ուժերի նկատմամբ։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, արևմտյան տերությունները, որոնք ՍՍՀՄ վճռական դերի շնորհիվ փրկվել էին ֆաշիզմի սպառնացող ազգային կործանումից, հավատարիմ իրենց դասակարգային էությանը, կրկին հրաժարվեցին Սովետական Միության հետ համագործակցելուց և, Վաշինգտոնի ղեկավարությամբ, սանձազերծեցին սառը պատերազմի քաղաքականությունը, կազմեցին իմպերիալիստական ագրեսիվ բլոկներ, նոր սպառնալիք ստեղծելով խաղաղության ու ժողովուրդների անվտանգության համար։ Կապիտալի աշխարհն ամեն ինչ արեց՝ խափանելու սոցիալիստական հեղափոխությունները Եվրոպայի նորաստեղծ ժողովրդա-դեմոկրատական երկրներում, փորձեց վիժեցնել չին ժողովրդի պատմական հաղթանակը, կասեցնել գաղութային սիստեմի փլուզման պրոցեսը և այլն։ Բայց այդ բոլոր ճիգերն ապարդյուն էին։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ստեղծվեց ու առնացավ սոցիալիզմի սիստեմը։ Նոր ուժով բռնկեցին ու հաղթականորեն պսակվեցին Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները։ Ազգային անկախություն նվաճեցին գաղութային ու կիսագաղութային շատ երկրներ։

Հետպատերազմյան շրջանում ՍՍՀՄ և խաղաղասեր մյուս ուժերը հուժկու պայքար սկսեցին նոր պատերազմի նախապատրաստման դեմ։ ԱՄՆ-ի ռազմատենչ շրջանները, կատարելով մոնոպոլիստական բուրժուազիայի կամքը՝ հասնելու համաշխարհային տիրապետության, մարդկությանը սպառնում էին ջերմամիջուկային ահավոր պատերազմով։ Սակայն, խաղաղության պահպանման համար աշխարհում արդեն գործում էին առավել մեծաթիվ ու հզոր ուժեր, որոնք ի վիճակի էին սանձելու նոր պատերազմի սիրահարներին։ Հիշենք արաբական երկրների դեմ 1956 թվականի ագրեսիայի, Կուբայի ճգնաժամի, 1967 թվականի իսրայելական ագրեսիայի օրերը։ Մի՞թե իմպերիալիստական ռազմամոլները կհրաժարվեին իրենց հեռու գնացող նպատակներից, եթե չլիներ ՍՍՀՄ-ի ու սոցիալիստական մյուս երկրների հզոր, սանձող ուժը։

Սոցիալիզմի երկրները, հետպատերազմյան շրջանում, ըստ ամենայնի հոգացին իրենց տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման մասին, կայուն հիմքերի վրա դրեցին ռազմական համագործակցությունը և իմպերիալիստական պետությունների պատերազմամոլ, «ուժի դիրքի» քաղաքականությանը նոր ուժով ու հաստատակամորեն հակադրեցին սոցիալիստական տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան կուրսը։

Հայտնի է, թե մոնոպոլիստական բուրժուազիայի ռազմամոլ ուժերը երկար տարիներ ինչպիսի համառությամբ էին պայքարում խաղաղ գոյակցության քաղաքականության դեմ, այն անվանելով «կոմունիստական պրոպագանդա», «ժամանակ շահելու քաղաքականություն»։ Սակայն համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխությունը հօգուտ սոցիալիզմի ստեղծեց այնպիսի իրադրություն, որ կապիտալիստական շատ երկրների պետական գործիչներ հարկադրված էին ընդունել խաղաղ գոյակցության քաղաքականությունը։ Դա տեղի ունեցավ սոցիալիստական պետությունների համախմբման, նրանց խաղաղասիրական արտաքին քաղաքականության,



ՍՍՀՄ հրթիռա-միջուկային զսպիչ հզորության, կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի և խաղաղասեր մյուս ուժերի հակապատերազմական շարժման, ազգային-ազատագրական պայքարի ծավալման շնորհիվ։

Բայց ԱՄՆ-ի ղեկավար շրջանները մինչև օրս էլ ճգնում են լոկալ պատերազմների միջոցով կայունացնել իմպերիալիզմի խարխլված դիրքերը, ջանք չեն խնայում համաշխարհային տիրապետության հասնելու իրենց պլաններն իրականացնելու համար։ Տարիներ շարունակ Վիետնամում մղվող ագրեսիվ պատերազմն այդ քաղաքականության ակներև վկայությունն է։ Նման քաղաքականության կողմնակիցները չեն հասկանում, որ այժմ ժամանակները փոխվել են, և իմպերիալիզմի ագրեսիվ ոտնձգությունների դեմ հանդես են գալիս խաղաղությունը պաշտպանող այնպիսի զորավոր ուժեր, որոնց օգնությամբ մարտնչող ժողովուրդները վաղ թե ուշ կխափանեն պատերազմագարների բոլոր պլանները։

Խաղաղության համար մարտնչողների հուսալի և հզոր պաշտպանը սովետական փառապանծ զինված ուժերն են։ ՍՍՀՄ կազմավորման շնորհիվ ստեղծվեց նոր տիպի բանակ, որը պաշտպանելով աշխատավորների և սոցիալիստական պետության շահերը տոգորված է սոցիալիստական հումանիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներով։ Այն ազատագրական-պաշտպանական բանակ է, որը միշտ պատրաստ է պաշտպանելու խաղաղությունը և համաշխարհային սոցիալիզմի նվաճումները։

Սովետական Միությունը, ինչպես միշտ, այսօր ևս օգնում է իմպերիալիզմի զոհերին, անվարան պայքարում պատերազմի դեմ՝ հանուն խաղաղության ու ժողովուրդների ազատ կյանքի։ «Ակտիվ մասնակցելով սոցիալական մարտերին,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— մենք ձգտում ենք մեր ազդեցությունը, մեր ռեալ կշիռն օգտագործել հօգուտ սոցիալիստական ողջ սիստեմի, արդիականության բոլոր հեղափոխական ուժերի։ Կոմունիստներն իրենց պարտքն են համարում՝ ժողովուրդների իղձերին համապատասխան պայքարել համաշխարհային պատերազմի վտանգի դեմ, քայլ առ քայլ ամրապնդել սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, վիճելի պրոբլեմները լուծել բանակցությունների միջոցով։ Մենք ամեն ինչ անում ենք, որպեսզի մարդկության վաղվա օրը լինի իրոք խաղաղ» («Պրավդա», 1972, № 205)։

# 3

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ արտաքին քաղաքականության հիմնարար սկզբունքներից մեկը պրոլետարական ինտերնացիոնալիզմն է, որը ոչ միայն գաղափարախոսություն է, այլև կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնկրետ քաղաքականություն։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը ոչ միայն տեսություն է, այլև սոցիալիստական երկրների և բանվոր դասակարգի ազգային ջոկատների միջև եղբայրական կայուն փոխհարաբերությունների պրակտիկա, նրանց կամքն ու գործողությունների միասնությունը ցեմենտող գործոն։ «...Պրոլետարական ինտերնացիոնալիզմը,— նշում էր Վ. Ի. Լենինը,— պահանջում է, նախ՝ մի երկրում պրոլետարական պայքարի շահերը ենթարկել այդ պայքարի ընդհանուր շահերին համաշխարհային մասշտաբով. երկրորդ՝ բուրժուազիայի դեմ հաղթանակն իրագործող ազգից պա-

հանջում է հանուն միջազգային կապիտալի տապալման մեծագույն ազգային զոհաբերությունների դիմելու ընդունակություն և պատրաստակամություն» (Երկեր, հ. 31, էջ 170)։

ՍՄԿԿ և սովետական կառավարությունը միջազգային հարաբերությունների բնագավառում միշտ պատվով են իրականացրել լենինյան այդ ցուցումները։ ՍՍՀՄ-ը, կատարելով իր ինտերնացիոնալ պարտքը, շարունակ պաշտպանել ու պաշտպանում է աշխարհի բոլոր երկրների բանվոր դասակարգին, աշխատավոր լայն զանգվածներին, որոնք մարտնչում են ազատության ու ազգային անկախության համար։

Այսօր խաղաղության, ժողովուրդների անվտանգության համար պայքարելու առավելագույն հնարավորություններ են ստացել սոցիալիստական սիստեմը, ազգային-ազատագրական շարժումը և կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը։ ՍՄԿԿ XXIV համագումարը մեկ անգամ ևս ընդգծեց, որ արդի ժամանակաշրջանում խաղաղությանը հակոտնյա ուժերին դիմագրավելու, նրանց ագրեսիվ դիտավորությունները ձախողելու և ժողովուրդների խաղաղ ու անվտանգ կյանքն ապահովելու համար անառարկելի նշանակություն ունի պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա հեղափոխական շարժման այդ երեք գլխավոր ուժերի գործողությունների միասնությունը։ Այս կարևոր հարցի լուծման գործում մեծ է Սովետական Միության ավանդը։ Ինչպես ՍՄԿԿ XXIV համագումարում հայտարարեց Լ. Ի. Բրեժնևը, ՍՍՀՄ-ը, նրա կոմունիստական կուսակցությունը միջազգային ասպարեզում վարել են և այսուհետև կվարեն «այնպիսի գիծ, որը նպաստում է համաշխարհային հակաիմպերիալիստական պայքարի հետագա ակտիվացմանը, նրա բոլոր մասնակիցների մարտական միասնության ամրապնդմանը»։

Խաղաղության պայքարի առաջատար ուժը սոցիալիստական երկրներն են, որոնց տնտեսական, քաղաքական ու ռազմական հզորությունը, համատեղ գործողությունները միջազգային ասպարեզում վճռական գործոն են իմպերիալիստական տերությունների ագրեսիվ դիտավորությունների խափանման, ժողովուրդների անվտանգության ապահովման համար։ Ուստի բնական է, որ սոցիալիստական պետությունները բոլոր ուժերով ջանում են ավելի ամրակուռ դարձնել սոցիալիզմի երկրների միասնությունն ու համակողմանի փոխհարաբերությունները, որոնք խարսխվում են պրոլետարական ինտերնացիոնալիզմի բարձրագույն աստիճանի՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վրա։

Ահա թե ինչու մարքս-լենինյան կուսակցություններն անզիջում պայքարում են այդ միասնությունը խարխլող յուրաքանչյուր գործողության դեմ։ ՍՄԿԿ և եղբայրական մյուս կուսակցությունները մերկացնում են ինչպես աջ ռևիզիոնիզմը, որը փորձում է սոցիալիզմին պարտադրել նրան խորթ, կապիտալիզմի պայմաններում ձևավորված քաղաքական ինստիտուտները, այնպես և «ձախ» օպորտունիզմը, որը ենթարկվում է մանրբուրժուական տարերքին և դասակարգային պայքարը նենգափոխում կեղծ հեղափոխական ճամարտակություններով ու քաղաքական ավանտյուրիզմով։ Միջազգային կոմունիստական շարժմանը, սոցիալիզմի գործին վնասում են մաոիզմի նացիոնալիստական ու մեծապետական շովինիզմի դիրքերից բխող հակալենինյան նկրտումները և հակասովետական քաղաքականությունը։

Սոցիալիստական երկրները, նրանց մարքս-լենինյան կուսակցությունները, հաղթահարելով իրենց զարգացման ճանապարհի բոլոր խոչընդոտները,



ավելի են ամրապնդում սոցիալիզմի սիստեմի միասնությունը, քաջ գիտակցելով, որ դա լիովին համապատասխանում է իմպերիալիզմի դեմ պայքարող ուժերի, ամբողջ մարդկության շահերին։

Վերջին շրջանում ավելի են սերտացել ՍՍՀՄ հարաբերությունները եղբայրական սոցիալիստական երկրների հետ։ Սովետական Միությունը սոցիալիստական պետությունների հետ կնքել է համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրեր, որոնք նոր տիպի միջազգային հարաբերությունների կոնկրետ արտահայտությունն են։ ՍՄԿԿ XXIV համագումարը բարձր գնահատեց այդ հարաբերությունները, նշելով, որ դրանց բնորոշ գծերն են՝ սերտ ու բազմակողմանի համագործակցությունը, բարեկամությունն ու ջերմությունը, յուրաքանչյուր երկրի ազգային շահերի ճիշտ զուգակցումը սոցիալիստական ողջ համագործակցության ինտերնացիոնալ շահերին։ «Կյանքը կրկին համոզիչ ապացուցեց,— Չեխոսլովակիայի կոմկուսակցության համագումարում արտասանած ճառում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— որ սոցիալիզմի երկրների կոմունիստների համար ամենաթանկը, նրանց հուսալի հենարանը և հզոր զենքը դասակարգային թշնամիների դեմ մղվող պայքարում եղել են, կան և կլինեն սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ուժը, սոցիալիստական պետությունների եղբայրական համագործակցությունը, նրանց անխորտակ համերաշխությունն ու փոխադարձ աջակցությունը»։

Պատերազմի և խաղաղության հրատապ պրոբլեմի դրական լուծման գործում կարևորագույն դեր է խաղում կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը։ Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կողմից գլխավորվող պրոլետարիատի դասակարգային պայքարը հուժկու հարվածներ է հասցնում կապիտալիստական աշխարհի ագրեսիվ շրջանների հակաժողովրդական քաղաքականությանը, խարխլում իմպերիալիզմի դիրքերը միջազգային ասպարեզում։ ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրները, հենվելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա, խաղաղության համար մղվող պայքարում ըստ ամենայնի օգնում են կապիտալիստական աշխարհի բանվոր դասակարգին։

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս մեր երկրի աշխատավորների ու կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի համերաշխությանը, նրանց սերտ կապերին։ Նա ասում էր, որ մենք միշտ նրանց հետ ենք, նրանց պայքարի հետ։ Նա, միաժամանակ, բարձր էր գնահատում կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի կողմից ՍՍՀՄ-ի պաշտպանությունը, դրանում տեսնելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրսևորումներից մեկը։

Պատերազմի իմպերիալիստական քաղաքականության դեմ սոցիալիստական երկրների հետ հանդես է գալիս նաև ազգային-ազատագրական շարժումը։ Դրա խորացման և ծավալման համար վճռական նշանակություն ունեն սոցիալիզմի երկրների հաջողություններն ինչպես ներքին, նույնպես և արտաքին քաղաքականության ոլորտներում։ Սոցիալիստական սիստեմի պայքարը հանուն խաղաղության և ժողովուրդների ազատության սերտորեն կապված է ազգային-ազատագրական շարժման հետ։ «Սոցիալիստական հեղափոխությունը,— նշում էր Վ. Ի. Լենինը,— միայն և գլխավորապես հեղափոխական պրոլետարների պայքարը չի լինի ամեն մի երկրում իր բուրժուազիայի դեմ,— ոչ, նա իմպերիալիզմի կողմից ճնշված բոլոր գաղութների և երկրների, բոլոր

կախյալ երկրների պայքարը կլինի միջազգային իմպերիալիզմի դեմ» (Երկեր, հ. 30, էջ 185)։

Հիրավի, համաշխարհային զարգացման վերջին տասնամյակների փորձը լիովին ապացուցեց լենինյան այդ կանխատեսումը։ Այսօր հակաիմպերիալիստական ճակատում միավորվել և կապիտալի ոտնձգությունների դեմ պայքարում են Ասիայի ու Աֆրիկայի երիտասարդ անկախ պետությունները, ազգային-ազատագրական շարժման մարտական ջոկատները, Լատինական Ամերիկայի առաջադեմ երկրները։ ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրները, ելնելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից, համակողմանի աջակցում և օգնում են ազգային-ազատագրական շարժմանը։

Ավելի քան կես դար շարունակ ՍՍՀՄ-ը, սովետական հերոս ժողովուրդն ընթանալով խաղաղության պայքարի ավանգարդում, արժանապատվությամբ են կատարել իրենց ինտերնացիոնալ պարտքը համաշխարհային հեղափոխական շարժման բոլոր ջոկատների առջև։ Նրանք, Լենինի խոսքերով ասած, ապացուցել են, որ «Ռուսաստանի բոլշևիկյան բանվոր դասակարգը միշտ եղել է ինտերնացիոնալիստական ոչ թե խոսքով, այլ գործով» (Երկեր, հ. 28, էջ 113)։ ՍՄԿԿ և Սովետական Միությունը աշխարհի ժողովուրդներին գործնականում ցույց տվեցին, թե ինչպես պետք է անձնուրաց պայքարել հանուն խաղաղության, կենսագործել պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքները, անհուն նվիրվածությամբ ծառայել աշխատավոր մարդկանց գործին։

## 4 ———

ՆԵՐԿԱՅՈՒՄՍ, ՍՍՀՄ կազմավորումից հիսուն տարի անց, սոցիալիզմի առաջին պետության արտաքին քաղաքականությունը հետապնդում է նույն նպատակները, ղեկավարվում նույն սկզբունքներով, որոնք մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո դրվեցին միջազգային հարաբերությունների լենինյան ըմբռնման հիմքում։ Սակայն արդի ժամանակաշրջանի բնորոշ գծերից մեկն այն է, որ այժմ մեծապես աճել է արտաքին քաղաքականության և դիվանագիտության դերը։

Վերջին տարիներին համաշխարհային ասպարեզում տեղի ունեցող իրադարձությունները համոզիչ վկայում են, որ արդի ժամանակաշրջանում ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների արտաքին քաղաքականությունը վճռապես ներգործում է միջազգային հարաբերությունների բնույթի վրա, կանխորոշում համաշխարհային զարգացման տենդենցները և ապահովում խաղաղությունը։ Ժողովուրդների համար բախտորոշ այս պատմական իրողությունը սոցիալիզմի արգասիքն է։

Անժխտելի է, որ միայն սոցիալիզմի պայմաններում հնարավոր եղավ արտաքին քաղաքականությունը խարսխել գիտական ամուր հիմքի վրա։ Այդ հիմքը մարքս-լենինյան տեսությունն է, որի ստեղծագործական կիրառման շնորհիվ սոցիալիստական պետությունները մշակում են իրենց արտաքին քաղաքական կուրսը։

ՍՍՀՄ արտաքին քաղաքականության գիտական բնույթը, նրա համապատասխանությունը պատմական զարգացման օբյեկտիվ օրինաչափություններին մեկ անգամ ևս դրսևորվեցին ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրում։ Հավատարմորեն և հետևողականորեն իրականացնելով սովետական արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքները, մեր կուսակցությունը խաղաղության այդ նոր ծրագրով համաշխարհային սոցիալիզմի ամրապնդման նոր էտապի սկիզբը դրեց։



Կարճ ժամանակ է անցել ՍՄԿԿ XXIV համագումարից, սակայն սովետական արտաքին քաղաքականությունը զգալի հաջողություններ ունի միջազգային հարաբերությունների նորմալացման ու կայունացման ասպարեզում։

Եվրոպական երկրների հետպատերազմյան սահմանների անխախտելիությունը վավերացնելու համար կարևոր նշանակություն ունեցան ՍՍՀՄ և ԳՖՀ, ինչպես նաև Լեհական Ժողովրդական Հանրապետության ու ԳՖՀ միջև կնքված պայմանագրերը, Արևմտյան Բեռլինի վերաբերյալ չորս տերությունների համաձայնագրերը։ Միջազգային հարաբերությունների նորմալացման համար լավ հեռանկարներ բացեցին սովետա-ամերիկյան բարձր մակարդակի բանակցությունները և կնքված համաձայնագրերը։ Եվրոպայի իրադրության նորմալացման գործում դրական ներդրում է ՍՍՀՄ և արևմտաեվրոպական մի շարք երկրների երկկողմ կապերի զարգացումը։ Սովետական Միությունը ջանքեր չի խնայում Հարավ-արևելյան Ասիայում և Մերձավոր Արևելքում անվտանգության սիստեմ ստեղծելու, ագրեսիայի ենթարկված ժողովուրդների շահերին համապատասխան աշխարհի այդ մասերում խաղաղությունն ապահովելու համար։

Սովետական Միության միջազգային գործունեությունը, վերջին տարիներին ձեռնարկած նրա արտաքին-քաղաքական քայլերն ու նախաձեռնություններն արժանանում են համաշխարհային առաջադեմ հասարակայնության ջերմ հավանությանը։ Աշխատավոր լայն զանգվածները լավատեսությամբ են տոգորվում ապագայի նկատմամբ և կրկնապատկված եռանդով պայքարում հանուն խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի։

Այսօր, երբ սովետական բազմազգ երկրի ժողովուրդները, աշխարհի առաջադեմ մարդկությունը տոնում են ՍՍՀՄ կազմավորման փառապանծ հոբելյանը, օրինական հպարտությամբ ասում ենք, կոմունիզմ կառուցող մեր երկիրը միշտ եղել է և մնում է ժողովուրդների ազատության և ազգային անկախության առաջամարտիկը, խաղաղության ու ժողովուրդների բարեկամության անառիկ ամրոցը։



ՄԻԱՍՆՈՒԹՅԱՄԲ ՀԶՕՐ

# ՄԵԾ ԱՌԱՋԸՆԹԱՑ


Ա. ՈՒ. ՍԱԼԻՄՈՎ

Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար


Մեր մեծ հայրենիքի բոլոր ազգերն ու ազգությունները քաղաքական և աշխատանքային վիթխարի վերելքի պայմաններում են դիմավորում Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի փառապանծ հոբելյանը։

Բազմազգ սոցիալիստական պետության ստեղծման, մեր ժողովուրդների ընդհանուր ջանքերով զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման, ազգային բարդագույն հարցի լուծման սովետական փորձը,— մատնանշված է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— համաշխարհային ճանաչում է ստացել և անգնահատելի օգնություն է սոցիալական ու ազգային ազատագրության բոլոր մարտիկներին։

ՍՍՀ Միության հոբելյանը գրավում է միջազգային հասարակայնության ուշադրությունն ազգային հարաբերությունների զարգացման պրոբլեմների առումով՝ ինչպես միասնական պետության շրջանակներում, այնպես և միջազգային ասպարեզում։ ՍՍՀ Միության կազմավորումը տարբեր ազգությունների բանվորների միջև բարեկամական այն հարաբերությունների զարգացման հանրագումարն էր, որոնք ստեղծվում էին ցարիզմի ու կապիտալիզմի, ներքին և արտաքին հակահեղափոխության դեմ, սոցիալիստական վերափոխման համար մղվող հեղափոխական պայքարի ընթացքում և կազմեցին միջպետական ու միջազգային նոր, սոցիալիստական տիպի հարաբերությունների հիմքը։

ՍՍՀՄ ստեղծումը արտացոլեց հեղափոխական պրոլետարիատի ինտերնացիոնալիստական ձգտումները՝ բարեկամության ձեռք մեկնել ճնշված ժողովուրդներին, զորավիգ լինել ազգային անկախության ու սոցիալական առաջընթացի համար մղվող նրանց պայքարին, օգնել նրանց կանգնելու ինքնուրույն սոցիալիստական զարգացման ուղու վրա։

Բացառիկ նշանակություն ունի այն հանգամանքը, որ ՍՍՀ Միության ստեղծումը մարքս-լենինյան հեղափոխական տեսության, Վ. Ի. Լենինի ղեկավարած կոմունիստական կուսակցության իսկական ինտերնացիոնալիստական քաղաքականության մարմնավորումն է կյանքում։ Այն ցուցադրեց ազգերի ու ազգությունների սոցիալական առաջընթացի բարձունքներին, սոցիալիզմին ու կոմունիզմին, ժողովուրդների իսկական բարեկամությանը, նրանց



լիակատար միասնությանը հասնելու գիտականորեն հիմնավորված շարժման ուղին։

***

Հայտնի է, որ ցարիզմը վարում էր ազգային պառակտման, աշխատավորներին միմյանց դեմ գրգռելու քաղաքականություն։ Կոմունիստական կուսակցությունը ցույց տվեց, որ ժողովրդի ուժը բոլոր շահագործողների դեմ մղվող տարբեր ազգերի աշխատավորների միավորված պայքարի մեջ է. նա բուրժուական նացիոնալիզմի գաղափարախոսությանը հակադրեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսությունը, գլխավորեց մեր երկրի ժողովուրդների մղած պայքարը՝ հանուն սոցիալական և ազգային ճնշման վերացման։

Վ. Ի. Լենինը հաստատակամորեն ձգտում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի անսասան սկզբունքների հիման վրա հասնել բոլոր ազգերի ու ազգությունների պրոլետարների և աշխատավորական զանգվածների միասնությանը ո՛չ միայն իրենց երկրի ներսում, այլև միջազգային մասշտաբով։ Մարքսիզմի ծաղրանկարի և «Իմպերիալիստական էկոնոմիկայի» մասին աշխատության մեջ նա գրել է. «Մենք միշտ խորհուրդ ենք տվել և միշտ խորհուրդ ենք տալու բոլոր ճնշված երկրների, այդ թվում գաղութների, բոլոր ճնշված դասակարգերին՝ չանջատվել մեզնից, այլ որքան կարելի է ավելի սերտ մերձենալ և միանալ մեզ հետ» (Երկեր, հ. 23, էջ 77)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը անմիջական հնարավորություն ընձեռեց իրականացնելու լենինյան ազգային քաղաքականությունը, որը հանգեցրեց ամեն կարգի ազգային ճնշման և ազգերի հարաբերությունների անհավասարության ոչնչացման։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող իրադարձություն էր, բանվոր դասակարգի և նրա ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության, գլխավորած սովետական բոլոր ժողովուրդների հեղափոխական ստեղծագործության երևելի արդյունքը։

ՍՍՀՄ կազմավորումը նպաստեց նախկինում ճնշված ազգերի ու ազգությունների ազգային պետականության հետագա զարգացմանը։ Այդ զարգացման փայլուն ապացույցն է 1924 թ. հոկտեմբերին իրականացած Միջին Ասիայի ժողովուրդների ազգային պետական սահմանազատումը և Սովետական Արևելքում Ուզբեկական ՍՍՀ ու մյուս հանրապետությունների ստեղծումը։

ՍՍՀՄ կազմավորումը նշանավորեց նոր փուլի սկիզբ ազգերի ու ազգությունների փոխհարաբերությունների զարգացման ոլորտում, բոլոր ազգությունների բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության մարտական ու անխախտ միասնության հետագա համակողմանի ամրապնդում, լենինյան ազգային քաղաքականության լիակատար հաղթանակ։ Այդ միությունն ավելի ամրացավ ու թրծվեց առաջին հնգամյակների, սոցիալիզմի կառուցման ընթացքում սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումների տարիներին, երբ կուսակցությունը կուրս էր վերցրել ստեղծելու բոլոր ազգերի տնտեսական և կուլտուրական փաստական հավասարություն, որն ապահովում էր Միջին Ասիայի և Ղազախստանի ժողովուրդների առավել դյուրին ու արագ անցումը գաղութային ստրկությունից սոցիալիզմին։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ամրության դաժան քննություն եղավ Հայրենական մեծ պատերազմը։ Այդ միասնությունն իր վեհությունն ու ուժը ցուցադրում է և մեր օրերում, կոմունիզմի կառուցման ընթացքում։ Այն եղել ու մնում է սովետական եղբայրական հանրապետությունների ձեռք բերած հաջողությունների գրանիտե հիմքը։

Դրա փայլուն ապացույցն է Սոցիալիստական Ուզբեկստանը։ Երկրի բոլոր ժողովուրդների եղբայրական օգնությամբ և, ամենից առաջ, մեր մեծ եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի աջակցությամբ Ուզբեկստանը պատմական շատ կարճ ժամանակահատվածում ցարական Ռուսաստանի գաղութային հետամնաց ծայրամասից վերածվեց խիստ զարգացած ինդուստրիալ-կոլտնտեսային սոցիալիստական հանրապետության։

Մինչհեղափոխական Ուզբեկստանում արդյունաբերություն գրեթե չկար։ Այժմ դժվար է հիշատակել ժամանակակից արդյունաբերության որևէ, քիչ թե շատ, խոշոր ճյուղ, որ ստեղծված չլինի մեր հանրապետությունում։ Տարեցտարի աճում ու ամրապնդվում է մետալուրգիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը, օդանավաշինությունը, տրակտորաշինությունը, սարքաշինությունը, էլեկտրասարքավորումների, էլեկտրոնային տեխնիկայի արտադրությունը։ Վիթխարի քայլերով է զարգանում քիմիական, նավթամշակման, ածխի, գազի արդյունաբերությունը, բազմապատկվում էլեկտրաէներգիայի արտադրությունը։

Ուզբեկստանի աշխատավորների հպարտությունն են հանրապետության արդյունաբերական այնպիսի նոր ճյուղերը, ինչպիսիք գունավոր ու հազվագյուտ մետաղների արտադրությունն է, բուռն կերպով ծաղկող ոսկու արդյունահանությունը։ Ուզբեկստանի տնտեսական աճի շնորհիվ ստեղծվեցին արդյունաբերական այնպիսի նոր կենտրոններ, ինչպիսիք են՝ Չիրչիկը, Անգրենը, Ալմալիկը, Յանգիաբադը, Յանգիյուլը, Նավոյին, Զերավշանը, Գյուլիստանը և մի շարք այլ քաղաքներ ու բանավաններ։

Հանրապետության արդյունաբերական արտադրանքը օգտագործվում է ո՛չ միայն երկրի ամենատարբեր շրջաններում, այլև արտահանվում է աշխարհի ավելի քան 90 երկիր։ Արտահանվող արտադրանքի արտադրությամբ Ուզբեկստանը Միությունում երրորդ տեղն է գրավում։ Մեր հանրապետության մասնագետները աշխատում են Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ավելի քան 20 զարգացող երկրներում։

Անցած կես դարը անճանաչելիորեն փոխել է ուզբեկական երկրի պատկերը։ Այժմյան Ուզբեկստանը այնպես է նման նախկին գաղութային Թուրքմենստանին, ինչպես գիշերը՝ ցերեկին։ Սովետական իշխանության տարիներին հանրապետությունը էկոնոմիկայի ու կուլտուրայի բնագավառներում հասել է զարմանահրաշ հաջողությունների։ Կուսակցության կամքով, ժողովրդի ջանքերով այն դարձել է սոցիալիզմի վառ փարոսն Արևելքում։

Մեր երկրամասը հայտնի է, ամենից առաջ, իր բամբակով— արևաշող երկրի անգին այդ պարգևով։ Բամբակը մեր հպարտությունն է, հանրապետության հարստության գլխավոր աղբյուրը։

Մինչև հեղափոխությունը դարձյալ բամբակագործությունն էր Թուրքմենական երկրամասի տնտեսության հիմնական ճյուղը։ Բայց բամբակի արտադրանքը, հանրապետության այժմյան գրաված տերիտորիայում, 1916 թ.



հասնում էր միայն 610 հազար տոննայի, իսկ հեկտարի միջին բերքատվությունը կազմում էր միայն 11 ցենտներ։

Բոլորովին այլ է պատկերն այսօր։ Սովետական Ուզբեկստանը երկրի բամբակի բազայի հիմքն է դարձել։ Ահա արդեն մի քանի տարի է, ինչ այն անընդմեջ տալիս է ավելի քան 4 մլն տոննա բամբակ։ Իսկ 1971 թ. հանրապետության բամբակագործներն աճեցրին ամենահարուստ բերքը և պետությանն են վաճառել 4510 հազար տոննա «սպիտակ ոսկի», պլանից 560 հազար տոննայով ավելի։

Հոբելյանական այս տարում մեր հանրապետության աշխատավորները մեծ ոգևորությամբ պայքարում են բամբակի արտադրության հետագա ավելացման համար։ Մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվության նոր ալիք առաջացրեց սույն թվականի սեպտեմբերին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ժամանումը Ուզբեկստան և նրա փայլուն ելույթը՝ բամբակացան հանրապետությունների կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովում։

Կուսակցության և սովետական կառավարության հոգատարությանն ի պատասխան Ուզբեկստանի բամբակագործները բարձր պարտավորություններ ստանձնեցին՝ այս տարի հայրենիքին տալ ավելի քան 4 մլն 550 հազար տոննա բամբակ։ Նրանք այդ պարտավորությունները պատվով են կատարել։

Հանրապետությունում հաջողությամբ է զարգանում նաև գյուղատնտեսական մյուս ճյուղերի արտադրությունը։ Իններորդ հնգամյակի առաջին տարում զգալի չափով գերակատարվել է բրնձի, բանջարեղենի, պտղի, խաղողի, շերամի բոժոժի, կարակուլի, մսի, կաթի, բրդի, ձվի մթերման պլանները։

Ուզբեկստանում մեծ թափ է ստացել ոռոգման շինարարությունը։ Սովետական իշխանության տարիներին հանրապետությունում կառուցվել են խոշոր ջրամբարներ ու ջրանցքներ, ստեղծվել է ժամանակակից հիդրոտեխնիկական սարքավորումներով հագեցած ոռոգման մելիորատիվ ցանց։

Ապշեցուցիչ տեղաշարժեր են կատարվել կուլտուրական շինարարության բնագավառում։ Մինչև հեղափոխությունը Ուզբեկստանում գրագետ էր բնակչության ընդհանուր թվի միայն 2 տոկոսը։ Այժմ Ուզբեկստանը համատարած գրագիտության հանրապետություն է։ Նախկին Ուզբեկստանում չկար և ոչ մի ԲՈՒՀ, այժմ այն ունի 41 բարձրագույն ուսումնական հաստատություն, ուր սովորում են ավելի քան 234 հազար ուսանող, իսկ պետության 168 միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 167 հազար, 9234 հանրակրթական դպրոցներում՝ 3.407 հազար աշակերտ։

Հանրապետությունն ունի գիտությունների ակադեմիա և 148 գիտական հաստատություն։ Այսօր մեր գիտա-մանկավարժական աշխատողների թիվը հասնում է մոտ 25.300-ի, որոնցից ավելի քան 100-ը ակադեմիկոսներ ու թղթակից-անդամներ են, գրեթե 500-ը՝ դոկտոր և 700-ը գիտությունների թեկնածու։

Մեծ զարգացում են ստացել մամուլը, ռադիոն, հեռացույցը։ Ուզբեկստանում տպագրվում է 226 անուն թերթ, որոնց միանվագ տպաքանակը 3,5 միլիոն է, 127 ամսագիր ու բյուլետեն՝ տարեկան 96,9 միլիոն տպաքանակով։ Հանրապետության հրատարակչությունները յուրաքանչյուր տարի լույս են

ընծայում ավելի քան երկու հազար անուն գիրք, ավելի քան 31 միլիոն ընդհանուր տպաքանակով։

Մինչև հեղափոխությունը Ուզբեկստանի աշխատավորները չունեին որևէ կուլտուրական հաստատություն։ Այժմ նրանց տրամադրության տակ կա 24 թատրոն, 20 համերգային կոլեկտիվ, մոտ 4 հազար կինոսարք, 3344 ակումբ, 5708 մասսայական գրադարան։

Մեր խոշոր նվաճումներից է Ուզբեկստանում ապրող տարբեր ազգերի միշտ ամրացող, անսասան բարեկամությունը։ Ուզբեկական ՍՍՀ-ն, ինչպես և սովետական մյուս հանրապետությունները, բնակչության կազմով ինտերնացիոնալ է։ Այստեղ ապրում են տասնյակ ազգություններ՝ ուզբեկներ, ռուսներ, տաջիկներ, ուկրաինացիներ, բելոռուսներ, ղազախներ, ադրբեջանցիներ, հայեր, հույներ, կորեացիներ, թաթարներ, ույգուրներ, կիրգիզներ, թուրքմեններ, հրեաներ և շատ ուրիշներ։

Համախմբվածությունն ու միասնությունը, բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունն են տարբեր ազգությունների մարդկանց փոխհարաբերության բնորոշ գծերը։ Օրինակ, Ուզբեկստանի Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական գործարանում կողք-կողքի աշխատում են ռուսներ, ուզբեկներ, ուկրաինացիներ, տաջիկներ, ղազախներ, թաթարներ և ուրիշ ազգության մարդիկ։

Գյուլիստանի շրջանի Օկտյաբր, Յանգիյուլի շրջանի Շարկ Յուլդուզի կոլտնտեսություններում գյուղատնտեսական արտադրանքի վերելքի համար պայքարում են ավելի քան 20 ազգությունների ներկայացուցիչներ։ Տաշքենդի պոլիտեխնիկական ինստիտուտում են սովորում 30 ազգությունների պատանիներ ու աղջիկներ։

Այսօր արդեն մեր սոցիալիստական անդաստանում տարբեր ազգերի սերտ կապերի, կենսական շփման պայմաններում, աստիճանաբար վերանում են տարբերությունները նրանց նյութական և հոգևոր կյանքում, հասարակական և անձնական հարաբերություններում, ազգային առանձնահատկություններն օրգանապես զուգորդվում են ինտերնացիոնալ, սոցիալիստական հատկանիշների ու ավանդույթների հետ։

ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն անցել է դաժան փորձությունների և ավելի ամրապնդվել։ Այն ցեմենտվել է սովետական մարդկանց արյունով, որ թափվել է հայրենիքի թշնամիների դեմ մղվող համատեղ պայքարում, այն ամրապնդվել է սովետական բոլոր ժողովուրդների ընդհանուր աշխատանքով, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընթացքում նրանց փոխօգնությամբ։

Ժողովուրդների բարեկամության մեծ ուժին, նրանց եղբայրական օգնությանը քաջատեղյակ է ուզբեկ ժողովուրդը։ Սովետական ժողովուրդների, ամենից առաջ, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, ուզբեկ ժողովուրդը պետականություն ստացավ, աննախընթաց հաջողությունների հասավ տնտեսական և կուլտուրական զարգացման ոլորտում և ընթացավ սոցիալիստական հարաճուն զարգացման լայն ուղիով։

Սովետական ժողովուրդների բարեկամությունը հատկապես վառ ու իր ողջ վեհությամբ դրսևորվեց 1966 թ. Տաշքենդի վրա տեղացած տարերային սոսկալի աղետի հետևանքները վերացնելու շրջանում։ Երբ Ուզբեկստանի մայրաքաղաքում մոլեգնեց երկրաշարժը և քաղաքը դժբախտության մեջ ընկավ, ողջ երկիրը կանգնեց տաշքենդցիների կողքին, սովետական բոլոր ժողովուրդները եղբայրական օգնության ձեռք մեկնեցին նրանց։ Կուսակցության և սովետական կառավարության, եղբայրական բոլոր ժողովուրդների հսկայական օգնության շնորհիվ Տաշքենդը ո՛չ միայն կարճ ժամանակում ազատվեց փլատակներից, այլև հիմնականում նորից կառուցվեց։ Ու նա հավերժ կանգուն կմնա իբրև սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունը մարմնավորող վիթխարի մի հուշարձան։

Իր եղբայրներին պարտահատույց չի մնում նաև ուզբեկ ժողովուրդը։ Երբ 1968 թ. Թուրքմենական ՍՍՀ Ջարջու քաղաքում եղած մեծ ջրհեղեղից, Կիրգիզիայի և Դաղստանի երկրաշարժից հազարավոր մարդիկ անօթևան մնացին, Ուզբեկստանի աշխատավորներն անմիջապես օգնության գնացին իրենց եղբայրներին։ Հանրապետությունն իր ծախսերով Ջարջուում և Մախաչկալայում տասնյակ հազարավոր քառակուսի մետր բնակելի տարածություն և մի շարք այլ կարևոր օբյեկտներ կառուցեց, իսկ Կիրգիզական ՍՍՀ Պրժևալսկ քաղաքում՝ հանրակրթական մեծ դպրոց։ ՍՍՀՄ-ում հաստատված այսպիսի սերտ համագործակցության և փոխօգնության օրինակներ մարդկային պատմությունը դեռևս չի տեսել։

Ինտերնացիոնալ կազմը բնորոշ է նաև մեր հանրապետության կուսակցական կազմակերպությանը։ Մեզ մոտ ապրում և աշխատում են ավելի քան 90 ազգերի ու ազգությունների կոմունիստներ։ Ինտերնացիոնալ են կուսակցական մարզկոմները, քաղկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունների կուսկոմներն ու կուսբյուրոները։

Մեր մեծ նվաճումներից է կանանց ազատագրումը։ Միջին Ասիայի կանայք առաջներում իրավազուրկ էին, խավարամիտ ու լքված, ամուսնու հլու հպատակն էին, լիովին կտրված հասարակական կյանքից։ Այսօր նրանք կոմունիստական հասարակության ակտիվ կառուցողներն են։ Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ նրանք կազմում են աշխատողների մոտ կեսը։ Կատարվեց պետական կառավարմանը կանանց մասնակից դարձնելու Լենինի երազանքը։ Հանրապետության 331 կանայք ՍՍՀՄ Գերագույն սովետի, Ուզբեկական ՍՍՀ և Կարակալպակյան ԱՍՍՀ դեպուտատ են, ավելի քան 38 հազարը՝ տեղական սովետների։

Սոցիալիստական հեղափոխության կարևորագույն հանրագումարն էր նոր մարդու ձևավորումը։ Ուզբեկստանում, ինչպես և ողջ երկրում սովետական իշխանության տարիներին աճել է որակապես մի ուրիշ սերունդ։ Դրանք կրթված, կուլտուրական մարդիկ են։ Այժմ հանրապետության ժողովրդական տնտեսությունում աշխատում են 570 հազար բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող մասնագետ։ Արմատապես փոխվել է մարդկանց կյանքի կացութաձևն ու աշխարհայացքը, հասակ առել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, կոլեկտիվիզմի, ընկերասիրության և եղբայրության վեհ գաղափարներով, ազնիվ զգացմունքներով տոգորված մարդը։

Ժողովուրդների բարեկամության համակողմանի ամրապնդման և զարգացման քաղաքականությունը, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, անհաշտելիությունը նացիոնալիզմի և շովինիզմի ամեն կարգի դրսևորումների, ազգային սահմանափակության և սնապարծության բոլոր ձևերի դեմ— դեպի կոմունիզմ առաջընթաց շարժման կուսակցության XXIV

պատմական համագումարի առաջադրած վիթխարի խնդիրների հաջող լուծման գրավականն է։

Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանը բնորոշվում է ազգերի հետագա մերձեցմամբ։ Հասարակական կյանքի բոլոր ոլորտներում տեղի է ունենում ազգամիջյան կապերի ամրապնդման, կատարելագործման հետագա պրոցես, ինչպես արտադրական, այնպես և հոգևոր կյանքում, զգալիորեն աճում է ազգերի տնտեսական ընդհանրությունը, նրանց սոցիալական միատարրությունը և գաղափարական միասնությունը։ Այդ ժամանակաշրջանում շարունակում են գործել ազգային հարցի զարգացման երկու փոխկապակցված տենդենց՝ ազգերի ծաղկման և ազգերի մերձեցման պրոցեսը։

Սոցիալիստական ազգերի և ազգությունների մերձեցումն ու համագործակցությունը՝ նրանց ծաղկման պարտադիր պայմանն են։ Ազգերի ու ազգությունների զարգացումն ու ծաղկումը, իրենց հերթին, ամրապնդում են նրանց փոխադարձ կապերը։

Այդ երկու տենդենցները դիալեկտիկական միասնություն են կազմում և միմյանց ներդաշնակ են։ Մերձեցում՝ ծաղկման միջոցով, ծաղկում՝ մերձեցման միջոցով։ Առանց այդպիսի սերտ դիալեկտիկական փոխներգործության, համագործակցության, ու փոխհարստացման, առանց ազգերի անշեղ մերձեցման չի կարող խոսք լինել նրանց քաղաքական, տնտեսական և կուլտուրական համակողմանի ծաղկման մասին։

Անտագոնիստական հակասություններից ու ընդհարումներից զերծ սոցիալիստական ազգերի մերձեցումն ու զարգացումը հանգեցրեց մարդկանց նոր, առաջներում չտեսնված պատմական հանրության՝ սովետական ժողովրդի ստեղծմանը։ Այդ ձևը սոցիալիստական ազգերի նոր, ինտերնացիոնալիստական հանրություն է, որը, սակայն, չի վերացնում ազգային տարբերությունները, ընդգծում է ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների միասնությունն ու բարեկամությունը։ Սովետական ժողովուրդը որպես պատմական նոր հանրություն, իր մեջ է կրում մարդկանց ապագա միասնական համաշխարհային հանրության որոշ հատկանիշներ։

Սովետական ժողովուրդը ազգայինի և ինտերնացիոնալիստականի անխախտ միասնությունն է. դա ո՛չ միայն ուղղակի քաղաքական միասնություն է սոցիալ-տնտեսական որոշակի հիմունքներով, այլև երկրի ազգերի ու ազգությունների համակողմանի կյանքի փոխկապերի ու փոխներգործությունների հաստատուն սիստեմ։

Մեր երկրի ժողովուրդների մերձեցման կարևորագույն գործոններից մեկը ազգային կուլտուրաների փոխհարստացումն է, դրանց ինտերնացիոնալիստական բովանդակության ամուր զուգակցումը ազգային ձևին։

Լենինը մատնանշում է, որ ինտերնացիոնալ կուլտուրան ապազգային չէ (Երկեր, հ. 20, էջ 9)։ Ելնելով դրանից, կուսակցությունը, սովետական պետությունը ձեռնարկել և ձեռնարկում են ամեն միջոց ՍՍՀՄ բոլոր ազգերի և ազգությունների կուլտուրայի համակողմանի զարգացման համար։

Ուզբեկ ժողովրդի պատմությունը հարուստ է մեծ գրողների ու պոետների՝ Նավոիի, Մուկիմիի, Ֆուրկատի, Զավկիի, Համզայի և ուրիշների անմահ ստեղծագործություններով։ Բայց ուզբեկական գրականության բուն զարգացումը սկսվել է Հոկտեմբերից հետո։ Ռուս գրականության ազդեցությամբ այն հա-



ըստացել է նոր ժանրերով՝ վեպերով, ակնարկներով, ինքնակենսագրական վիպակներով, դրամատուրգիայով։

Զարգացել է նաև ուզբեկական ազգային երաժշտական արվեստը, ընդ որում, այստեղ ևս երևան են եկել նոր ձևեր՝ օպերա, սիմֆոնիա, բալետ, որ նույնպես առաջընթաց մեծ քայլ է ուզբեկ ժողովրդի երաժշտական կուլտուրայի զարգացման ասպարեզում։

Ժողովուրդների բարեկամության ամրապնդման, կուլտուրայի փոխազդեցության ուժեղացման համար խիստ կարևոր նշանակություն ունի գեղարվեստական թարգմանությունը։ Սովետական իշխանության տարիներին Ուզբեկստանում թարգմանվել են հարյուրավոր դասական և ժամանակակից ստեղծագործություններ։ Միայն վերջին չորս տարում լույս են ընծայվել ավելի քան 300 թարգմանական ստեղծագործություն՝ մոտ 7 միլիոն տպաքանակով։

Մեծ նշանակություն ունի նաև այն հանգամանքը, որ Ուզբեկստանի գրողների բազում գրքեր նվիրված են ժողովուրդների բարեկամությանը. սա նույնպես ինտերնացիոնալ դաստիարակության կարևոր գործոն է։

Ժողովուրդների միջև ինտերնացիոնալ եղբայրության ամրապնդման, նրանց մերձեցման, փոխադարձ ծանոթության առավել գործուն ձևերից են գրականության ու արվեստի տասնօրյակները։ Տասնօրյակների բնորոշ առանձնահատկությունն այն է, որ դրանք ստանում են համաժողովրդական հրապարակության բնույթ և խոր հետք են թողնում միլիոնավոր աշխատավորների հոգում։

Զարգացած սոցիալիստական հասարակության մեջ առավել մեծ նշանակություն են ստանում սոցիալիստական ազգային հարաբերությունների հետագա կատարելագործման այնպիսի գործոններ, ինչպիսիք են՝ սովետական պետության գործունեությունը, մարքս-լենինյան գաղափարախոսության տարածումը, կուսակցության և նրա կողմից ղեկավարվող հասարակական կազմակերպությունների դաստիարակչական մեծ աշխատանքը։

Մեր երկիրն այդ ասպարեզում վճռական հաջողությունների է հասել։ Համատեղ աշխատանքում, սոցիալիզմի համար մղված պայքարում, նրա պաշտպանության մարտերում,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում,— ծնունդ առան դասակարգերի և սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների նոր, ներդաշնակ հարաբերություններ՝ բարեկամության և համագործակցության հարաբերություններ։ Մեր մարդիկ զոդված են մարքս-լենինյան գաղափարախոսության, կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակների ընդհանրությամբ։ Սովետական բազմազգ ժողովուրդը այդ միաձույլ համախմբվածությունը ցուցադրում է իր աշխատանքով, կոմունիստական կուսակցության քաղաքականությանը միահամուռ հավանություն տալով։

Այդ միասնության հետագա աճման, սովետական բազմազգ ժողովրդի միաձույլ համախմբվածության պրոցեսը խթանվում է սոցիալիստական տընտեսության և կուլտուրայի, տնտեսական ու վարչական կառավարման գիտական մակարդակի բարձրացման միասնական խնդիրների լուծմամբ, կառավարմանը, աշխատավորական ավելի ու ավելի լայն զանգվածներին մասնակից դարձնելով։

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման այս բոլոր միջոցառումներն արտացոլված են կուսակցության XXIV համագումարի որոշումներում ու

նյութերում, դրանք Վ. Ի. Լենինի ցուցումների ստեղծագործական իրականացումն են, որը բազմազգ ՍՍՀՄ առաջընթացը կապում էր սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացման հետ։

Մեր երկրում զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը բացառիկ բարենպաստ, պատմության մեջ չտեսնված պայմաններ է ստեղծում բոլոր ազգերի ու ազգությունների համար։ Նորն այստեղ ընդհանուրի՝ ինտերնացիոնալի և մասնակիի՝ ազգային-յուրահատուկի միջև հարաբերակցության այնպիսի փոփոխությունն է, որը չի նսեմացնում ո՛չ առաջինի, ո՛չ երկրորդի նշանակությունը։

Ինչպես միշտ ընդհանուր օրինաչափություններն են այդ զարգացման հիմքը, և ինչպես միշտ ազգային-յուրահատուկն է որոշում դրա էական առանձնահատկությունները։ Կուսակցության XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու-զեկուցման մեջ այդ պրոցեսը այսպես է բնութագրվում. «Մշտապես հաշվի առնել, թե մեր ամբողջ Միության ընդհանուր շահերը, և թե նրա մեջ մտնող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերը— այս է կուսակցության քաղաքականության էությունն այդ հարցում»։

Ազգային հարցի լուծման կուսակցության լենինյան քաղաքականությունը, դրա հիանալի իրականացումը իսկական դպրոց է աշխարհի ժողովուրդների համար, որոնք ձգտում են պրոգրեսիվ ուղիներ գտնել ազգային պրոբլեմների լուծման ճանապարհին։

Լենինյան ազգային քաղաքականության իրականացման մեր փորձը չափանիշ է աշխարհի շատ երկրների համար, մեր հաջողությունները թևավորում են արտասահմանյան երկրների աշխատավորներին, կոչ անում ուժեղացնելու պայքարը՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի սկզբունքների։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կիսադարյա գոյության շնորհիվ աշխարհում ստեղծվեց խաղաղության և անվտանգության հուսալի ամրոցը, այդ կես դարում փայլուն ցուցադրվեց ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականության հզոր ուժը, որը բազմազգ երկիրը համախմբեց ժողովուրդների միասնական, միաձույլ, ինտերնացիոնալ եղբայրական ընտանիքում։

Տաշքենդ



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԼԻՏՎԱՅԻ ԾԱՂԿՈՂ ԱՐՎԵՍՏԸ

Լ. Կ. ՇԵՊԵՏԻՍ

Լիտվական ՍՍՀ կուլտուրայի մինիստր

Սովետական Միության ժողովուրդների էկոնոմիկայի ու կուլտուրայի բոլոր բնագավառների բարգավաճման ու առաջընթացի հիմքերի հիմքը, արդիականության ցայտուն գիծը եղբայրական հանրապետությունների բազմազան փոխօգնությունն է, նրանց սերտ համախմբումը։ Թե՛ ժողովրդական տնտեսության վերականգնման հետպատերազմյան տարիներին, թե՛ կոմունիստական շինարարության հաջորդ շրջանում բյուրեղացան ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամության հիանալի հատկանիշները— հավատարմությունը սոցիալիստական հայրենիքին, փոխադարձ օգնությունը։ «Համաշխարհային պատմությունը տասնյակ ազգերի ու ազգությունների փոխհարաբերություններում երբեք չի տեսել շահերի ու նպատակների, կամքի ու գործողությունների այնպիսի անխախտ միասնություն, հոգեհարազատություն, այնպիսի վստահություն ու փոխադարձ հոգատարություն, ինչպիսիք շարունակ ցուցաբերվում են մեր եղբայրական դաշինքում»։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից վերցրած այս ոգեշունչ տողերը միանգամայն ճիշտ են բնութագրում սովետական սոցիալիստական հասարակարգում տեղի ունեցող վիթխարի պրոցեսների էությունը, դրանց հիմնական իմաստն ու նշանակությունը յուրաքանչյուր սովետական հանրապետության կյանքում։

Համեմատաբար երիտասարդ Լիտվական Սովետական Սոցիալիստական Հանրապետության հասարակական, տնտեսական ու կուլտուրական կյանքի զարգացումը լենինյան ազգային քաղաքականության հավերժ կենդանի գաղափարների մարմնավորման բնորոշ օրինակ է։

Մի անգամ չէ, որ Սովետական Միության եղբայրական անկաշառ օգնությամբ լուծվել է Լիտվայի տերիտորիայի անձեռնմխելիության և ամբողջականության հարցը։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին, երբ վտանգվել էր լիտվական ողջ ժողովրդի բուն գոյությունը, բոլոր հանրապետությունների ներկայացուցիչներից բաղկացած հերոսական սովետական բանակը միայն շրջեց պատմության անիվը և ապահովեց մեր կենսահորդ երկրի ազատ ապագան։ Երիտասարդ սերնդին այդ են միշտ հիշեցնում պարտիզանական գետնախուղերը, զոհված մարտիկների՝ հոգածությամբ պահպանվող գերեզ-

մանները, ազատարար սովետական բանակի պատվին հանրապետության կենտրոնում նորերս կանգնեցված փառապանծ մոնումենտը՝ երախտագիտության ու հավերժ հիշատակի խորհրդանիշը։

Անգնահատելի է եղբայրական հանրապետությունների օգնությունը հետպատերազմյան տարիներին։ Ավերված էր տնտեսությունը, փլատակների էին վերածվել քաղաքները, հրի մատնվել ֆաբրիկաներն ու գործարանները, կողոպտվել գրադարաններն ու թանգարանները. զոհվել էին հարյուր հազարավոր լավագույն մարդիկ. կադրերի խիստ պակաս էր զգացվում։ Հանրապետությունը չէր կարող դուրս գալ ստեղծված ծանր կացությունից։ Բայց մենք մենակ չմնացինք փորձության այդ դժվարին պահին։ Եղբայրական օգնության ձեռք մեկնեցին Մոսկվան ու Լենինգրադը, Բաքուն ու Երևանը, Ուրալն ու Սիբիրը, Ալմա-Աթան ու Թբիլիսին... Բարեկամության լայն ճանապարհով մեր հանրապետություն հոսեցին ածուխ ու սարքավորում, մեքենաներ ու տրակտորներ։ Սովետական Լիտվան վերականգնում էր ուժերը, ամրապնդվում տարեցտարի, իր տեղը բռնում զարգացած ու հզոր սովետական սոցիալիստական հանրապետությունների շարքում։

Կատարյալ հեղաշրջում տեղի ունեցավ նաև կուլտուրայի ասպարեզում։ Վերադաստիարակվեց ու ամրապնդվեց ազգային ինտելիգենցիան, բուռն հոսանքով դեպի լույս, գիտելիքները ձգտեց ժողովուրդը, առանձնապես երիտասարդությունը։ Լիտվայի կոմունիստական կուսակցությունը վիթխարի աշխատանք է կատարել հին ինտելիգենցիայի առաջավոր ներկայացուցիչների հահախմբման համար, մշտական հոգատարություն ցուցաբերել ստեղծագործող երիտասարդության նկատմամբ։ Այդ հոգատարության և ուշադրության արդասիքն է ողջ ինտելիգենցիայի ակտիվ մասնակցությունը հանրապետության կուլտուրական կյանքին։

Առանց դրա անհնար կլինեին լիտվական սովետական սոցիալիստական կուլտուրայի այսօրվա հաջողությունները, որոնք այժմ հայտնի են նաև արտասահմանյան բազմաթիվ երկրներում։ Անցյալ են դարձել բուրժուական Լիտվայի կուլտուրային բնորոշ գավառայնությունն ու ազգային մեկուսացածությունը, որոնք այնպե՜ս անհանգստացնում էին այն ժամանակվա առաջավոր գործիչներին։ Դրանում էական դեր խաղաց ռուսերենը, որի օգնությամբ լիտվական գրականության լավագույն երկերը հայտնի դարձան Սովետական Միության բոլոր հանրապետություններում, թարգմանվեցին սոցիալիստական երկրների, ինչպես և աշխարհի մյուս ժողովուրդների լեզուներով։

Ինչպիսի՞ն է այսօր լիտվական սովետական սոցիալիստական կուլտուրան, ի՞նչ տեղ է գրավում այն միութենական հանրապետությունների շարքում, որո՞նք են նրա հորիզոններն աշխարհում, որքա՞ն ակտիվ ու լայնորեն են օգտվում նրա հարստություններից հանրապետության աշխատավորները։ Այնքան էլ դյուրին չէ առաջին հայացքից հասարակ թվացող այդ հարցերին պատասխանելը։ Արդյունաբերական ձեռնարկության կամ կոլտնտեսության գործունեության արդյունքներն ակնհայտ են դառնում յուրաքանչյուր ամիսը. եռամսյակը կամ տարին ավարտվելուն պես։ Մինչդեռ, կուլտուրայի բնագավառում բոլոր արդյունքները չէ, որ հաշվվում են տարեվերջին, բոլոր ցուցանիշները չէ, որ անմիջականորեն արտացոլում են գործերի իրական վիճակը, զարգացման տենդենցները։

Սակայն այստեղ ևս քիչ բան չեն բացահայտում թվերը։ Սովետական



Լիտվայում գործում է 11 թատրոն՝ յուրաքանչյուր 1000 բնակչին թատրոնում ընկնում է 1,5 տեղ։ Դա շատ չէ, այդ տեսակետից ետ ենք մնում մեր հարևաններից։ Իսկ համերգների թվով մեր ֆիլհարմոնիան առաջիններից է։ Նրա գործունեությունը բարձր է գնահատել ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության կոլեգիան։ Հանրապետությունում ծավալած համերգային լավ գործունեության համար մեր ֆիլհարմոնիան երկրում գրավել է առաջին տեղը։

Հանրապետության գեղարվեստական երկու թանգարանները տարեկան այցելում է 1—1,5 միլիոն մարդ։ Թանգարանների այցելուների ընդհանուր թիվը հասնում է 3,2 միլիոնի (1971 թվականին), որն ամենաբարձրերից մեկն է միութենական հանրապետություններում։

Վիլնյուսի Հեղափոխության թանգարանն այցելել է 92 հազար, Կաունասի Իններորդ ամրոցի թանգարանը՝ 276 հազար մարդ, կես միլիոնի է հասնում Վիլնյուսի Պատմա-ազգագրական թանգարանն այցելողների թիվը։

Այնքան երկեր են ստեղծել մեր նկարիչները վերջին հնգամյակում, որ հնարավոր է դարձել կազմակերպել մոտ 300 ցուցահանդես, այդ թվում՝ 35-ը միութենական և հանրապետական նշանակության։

Հինգ տարում բեմադրվել են լիտվացի հեղինակների մոտ 70 պիեսներ, տարբեր ժանրերի մոտ երկու հազար երաժշտական երկեր են կատարել համերգային կոլեկտիվները. Լիտվայի կինոստուդիան թողարկել է 14 լիամետրաժ կինոնկար։ Թատրոններն ու համերգային կազմակերպությունները տվել են 33 հազար ներկայացում և համերգ, ցուցադրվել են մոտ 3,5 միլիոն կինոսեանսներ։ Այս ցուցանիշներում չեն արտահայտված մասսայական տոնահանդեսները, գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների ելույթները, գաստրոլային համերգներն ու ներկայացումները։ Հանրապետության բնակիչները լայն հնարավորություններ ունեն հաղորդակցվելու արվեստին, իսկ արվեստագետներն արգավանդ հող՝ ժողովրդի մեջ պրոպագանդելու սոցիալիզմի առաջավոր գաղափարները։

Ծանոթանալով այս թվերին ու ցուցանիշներին մտածում ես՝ շա՞տ է այդ, թե՞ քիչ. նայած՝ ինչի հետ ես համեմատում, նայած՝ գաղափարական ու գեղարվեստական ի՞նչ արժեքներ են ներկայացնում այդ ցուցանիշները։ Եթե դրանք համեմատենք բուրժուական Լիտվայի ցուցանիշների հետ, ապա կտեսնենք վիթխարի աճ. էլ չենք խոսում այն ժամանակ սաղմնային վիճակում եղածների մասին (գեղարվեստական կինեմատոգրաֆիա, կինոցանց, մասսայական գրադարաններ, կուլտուրայի տներ և այլն)։

Լիտվական կուլտուրայում արվեստի նոր բնագավառները զարգանում են հների հետ կողք-կողքի։ Լիտվերեն առաջին գրքի տպագրությունից անցել է 425 տարի։ Մի քանի տարի հետո կլրանա Վիլնյուսի համալսարանի 400-ամյակը։ Նորերս մենք նշեցինք լիտվական գրականության կլասիկ Կ. Դոնելայտիսի ծննդյան 250-ամյակը։ Մինչդեռ առաջին գեղարվեստական և պրոֆեսիոնալ ցուցահանդեսներից անցել է 60 տարուց մի փոքր ավելի։ Լիտվական պրոֆեսիոնալ թատրոնը թևակոխել է իր զարգացման երկրորդ կեսը։ Այսպիսով մեզ մոտ դեռևս համեմատաբար երիտասարդ են պրոֆեսիոնալ արվեստի տրադիցիաները, որոնք պարտադիր են գեղարվեստական բարձր մակարդակի հասնելու, ազգային դպրոց ստեղծելու համար։ Ստեղծագործական միություններում (ճարտարապետների, նկարիչների, գրողների, կոմպոզիտորների և այլն) ընդգրկված գործիչների թիվը հասնում է ավելի քան 3700-ի, բուրժուա-

կան Լիտվայի այդպիսի միությունններում ընդգրկվածների թվի համեմատությամբ այն բազմապատկվել է:

Մեր և մեր հարևանների՝ արվեստի ասպարեզում ձեռք բերված նվաճումների համեմատությունը ցույց է տալիս, որ դեռևս բավականին մեծ են զարգացման չօգտագործված հնարավորությունները: Իսկ ընդհանրապես գեղարվեստական կուլտուրայի արդի վիճակի և բուռն աճի վերլուծությունը բացահայտում է կարևորագույն երեք խնդիրներ:

Առաջինը կուլտուրայի նյութական բազան է— կուլտուրայի հաստատությունների շենքերը, դրանց կառուցումը, տեխնիկական սարքավորումը, երաժըշտական գործիքները և այլն, այն ամենը, ինչ անհրաժեշտ է հաջող աշխատանքի համար, ինչպես նաև պետական հատկացումները՝ կուլտուրայի հուշարձանների պահպանության, նորոգման ու վերականգնման նպատակով, կենտրոնացված միջոցները՝ արվեստի գործերի ձեռքբերման համար:

Երկրորդը կուլտուրայի ու արվեստի նվաճումների «սպառողների» խնդիրն է: Ովքե՞ր են մեր ընթերցողները, հանդիսատեսները, այցելուները, նրանց կրթական, կուլտուրական ընդհանուր մակարդակը. ի՞նչ է արվում «սպառողների» թվի ավելացման նոր ճանապարհներ որոնելու, «սպառման» որակը բարելավելու ասպարեզում: Շատ կարևոր է նաև հասարակայնության մասնակցությունը նոր կուլտուրայի ստեղծմանը, հասարակության ակտիվության աճին, դրա ընդլայնման ու խորացման նախադրյալները:

Էսթետիկական ինչպիսի՞ արժեքներ է բերում ժողովրդին արվեստը. նրա այժմեականությունն ու մատչելիությունը. այս է երրորդ խնդիրը:

Այս խնդիրների լուծումը մեծ չափով պայմանավորված է միջավայրով, հասարակության կառուցվածքային փոփոխություններով, ժողովրդի կրթական մակարդակով, էսթետիկական ճաշակի զարգացմամբ, կյանքի մշտապես բարելավվող պայմաններով, հաղորդակցության միջոցների, ինչպես և ռադիոյի, հեռուստատեսության, մամուլի զարգացմամբ, նաև սոցիալական, տընտեսական, հոգեբանական ու բարոյական մի շարք գործոններով:

Երևան են գալիս նորանոր խնդիրներ, որոնց պետք է համապատասխանի արվեստի յուրաքանչյուր նոր բնագավառի որակը: Հաղորդակցության բոլոր միջոցներից օգտվող գյուղացուն այլևս չեն բավարարի տեղական գեղարվեստական ինքնագործունեության ցածր մակարդակը, վատ գաստրոլները: Հենց այս նկատի պետք է ունենալ գյուղի կուլտուրական սպասարկումը կազմակերպելիս: Գաստրոլային ներկայացումները, ճշան վերնագրերով հանդիսատես գրավելու ճիգերը, վատ ճաշակի խրախուսման փորձերն ապարդյուն են եղել և կլինեն: Ժամանակն է հանդիսատեսների հետ խոսել իսկական արվեստի լեզվով, առանց փոխզիջումների: Միայն այդ դեպքում կհասնենք էսթետիկական դաստիարակության ավելի բարձր մակարդակի:

Ժողովրդական մասսաների հարաճուն պահանջներն անհրաժեշտ են դարձնում գյուղի կուլտուրական աշխատանքի արմատական բարելավումը: Վերջին տարիներս անճանաչելիորեն փոխվել է կոլտնտեսային գյուղը. բարձրացել է բնակիչների կենսամակարդակը: Զգալիորեն փոխվել է բնակչության կազմն ըստ տարիքի, կրթության, ստեղծվել են բազմաթիվ նոր կոլտնտեսային ավաններ: Այդ իսկ պատճառով 15 տարի առաջ ստեղծված կուլտուրլուսավորական հաստատությունների սիստեմն այլևս չի համապատասխանում նոր պահանջներին:



Այս տարի հանրապետության կառավարության որոշմամբ փոփոխություններ տեղի կունենան ակումբային հաստատությունների ցանցում. այսպես. հավասար թվով աշխատողներ ունեցող կուլտուրայի տների փոխարեն կգործեն 1. շրջանային կուլտուրայի տուն— կենտրոնական ակումբային հաստատություն, որն սպասարկում է շրջկենտրոնի բնակիչներին, ինչպես նաև իրականացնում զոնալ կուլտուրայի տների մեթոդական ղեկավարությունը. 2. զոնալ կուլտուրայի տուն— այդպիսիք կլինեն գյուղական խոշոր բնակավայրերում, փոքր քաղաքներում: Յուրաքանչյուր շրջանում կլինեն 5—7 այդպիսի կուլտուրայի տներ. դրանցում կկայանան պրոֆեսիոնալների հիմնական գաստրոլները. կգործեն գեղարվեստական ինքնագործունեության խոշոր կոլեկտիվները, նրանց աշխատողների ուժերով կիրականացվի գյուղական կուլտուրայի տների մեթոդական ղեկավարությունը. 3. գյուղական կուլտուրայի տուն— այստեղ կընդգրկվի ներկայումս գոյություն ունեցող կոլտնտեսային կուլտուրայի տների մեծ մասը:

Առաջին անգամ ակումբային հաստատություններին ներկայացվում են տարբեր պահանջներ՝ ըստ աշխատանքի ծավալի դիֆերենցվում է աշխատողների թիվը, լուծվում նյութական բազայի բարելավման խնդիրները:

Մեր հանրապետությունը հնուց հայտնի է իր մասսայական գեղարվեստական ինքնագործունեությամբ: Հանրապետական երգի տոները, որոնք ընդգրկում են գրեթե բոլոր ժանրերը, դարձել են ժողովրդական արվեստի հանրապետական հանդեսներ: Յուրաքանչյուր հինգ տարին մեկ, կազմակերպական մեծ աշխատանքից հետո, հանրապետության մայրաքաղաքում հնչում է ժողովրդական ու սովետական երգը, կազմակերպվում են պարահանդեսներ, ժողովրդական արվեստի հանրապետական ցուցահանդեսներ և մասսայական այլ միջոցառումներ: 1973 թ. մեզ մոտ կկայանա դպրոցականների երգի հերթական հանրապետական տոնը, 1975-ին՝ երգի հանրապետական տոնը:

Կուլտուրական աշխատանքի հարաճուն ծավալն ապահովելու համար անհրաժեշտ է մշտապես հոգալ կուլտուրայի նյութական բազայի համար: Այժմ կառուցվում է օպերայի ու բալետի թատրոնի նոր շենքը Վիլնյուսում, այս տարի կուրորտային քաղաք Պալանգայում շահագործման հանձնվեց 1400 տեղանոց ամառային համերգասրահը: Ավարտվում է մի քանի շրջանային կուլտուրայի տների շինարարությունը: Կուլտուրայի բազում տներ են կառուցվում կոլտնտեսությունների միջոցներով: Ավարտվում է ժողովրդական կենցաղի բացօթյա մեծ թանգարանի շինարարությունը: Այդ թանգարանում հավաքված է այն ողջ լավագույնը, ինչ ստեղծել են անանուն ժողովրդական ճարտարապետների ոսկե ձեռքերը: Այցելուի աչքի առաջ այստեղ կհառնի ժողովրդական ճարտարապետության, արվեստի, կենցաղի լայն համայնապատկեր: Թանգարանի առաջին հերթը կբացվի 1973 թվականին: Մոտ ժամանակներս կսկսվի հանրային գրադարանների մեծ շենքերի շինարարությունը հանրապետության երկու խոշոր կենտրոններում՝ Կաունաս ու Շյաուլյայ քաղաքներում: Իններորդ հնգամյակի տարիներին զգալիորեն կհարստանա կուլտուրայի բազմաթիվ հաստատությունների նյութական բազան:

Սովետական Լիտվան ժառանգել է նյութական խղճուկ բազա: Հետպատերազմյան դժվարին տարիներին, երբ բոլոր ջանքերն ուղղված էին ֆաշիստական օկուպանտների ավերած ժողովրդական տնտեսության վերականգնմանը, հնարավոր չէր ինչպես հարկն է զբաղվել կուլտուրական նոր հաստատություն-

ների կառուցմամբ։ Սակայն վերջին տասնամյակում ձեռք բերված հաջողությունները ցույց են տալիս, որ մոտ ապագայում հաջողությամբ կլուծվեն նյութական ողջ բազայի զարգացման ու ամրապնդման հիմնական հարցերը։

Վերը նշված խնդիրները լուծելիս, ամենից առաջ, ելնում ենք այն բանից, թե մարդն ի՞նչ է սպասում արվեստից, ի՞նչ է գտնում նրա մեջ։ Կոնկրետ փաստերից ելնելով, տեսնում ենք, որ նրան, առաջին հերթին, հետաքրքրում են պոետական հնչեղության երկերը, բովանդակալից ծրագրերը, կամերային երաժշտությունը։ Ահա թե ինչու է կուլտուրայի մինիստրությունը հսկում նաև կենցաղային էստրադային երաժշտությանը (ռեստորանների, սրճարանների և նման այլ ձեռնարկությունների նվագախմբեր), նորանոր հնարավորություններ որոնում կամերային երաժշտության համերգների կազմակերպման համար։ Կամերային երաժշտության համերգները ժողովրդականություն են վայելում Վիլնյուսի պատկերասրահում, Տրակայի ամրոցում, «Գիշերային սերենադներ» համերգները՝ Պալանգայում։

ՍՍՀ Միության 50-ամյակի տոնակատարության օրերին, հետադարձ հայացք գցելով անցած ուղուն, տեսնում ենք, որ սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում անշեղ զարգանում է և լիտվական կուլտուրան։ Դրա վկայությունն են մեր կոլեկտիվների ու կատարողների հաջողություններն արտասահմանում։ Նորերս Լյեժից (Բելգիա) վերադարձավ Վիլնյուսի լարային կվարտետը, որը միջազգային մրցույթում նվաճել է առաջին տեղը։ Ո՛չ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից դուրս, լավ հայտնի են մեր պետական ֆիլհարմոնիայի կամերային նվագախումբը, երգի ու պարի «Լետուվա» ակադեմիական անսամբլը, Սովետական Միության ժողովրդական արտիստ Վ. Նորեյկան, հանրապետության ժողովրդական արտիստ Վ. Դաունորասը և շատ ուրիշներ։ Բայց ամենագլխավորը հոբելյանական օրերին, սովետական ժողովուրդների բարեկամությունն ու կուլտուրաների փոխհարստացումն է, որով մենք այնպե՜ս պարծենում ենք։

Տարեցտարի ընդլայնվում են մեր և Հայաստանի կուլտուրական կապերը։ Վերջերս կայացած արվեստների տոնին մասնակցում էին հայաստանյան կատարողները։ Եղբայրական տասնհինգ հանրապետությունների գեղանկարչության ցուցահանդեսում մեզ ուրախացնում էին հայ նկարիչներ Մ. Աբեղյանի, Գ. Աղասյանի, Գ. Խանջյանի, Հ. Զարդարյանի, Է. Իսաբեկյանի և այլոց գործերը։ Հայ կոմպոզիտորներ Կոմիտասի, Ալ. Սպենդիարյանի, Ա. Խաչատրյանի երգերն են հնչում մեր համերգներում։

Լիտվական գեղարվեստական կուլտուրայի ուղեցույց աստղն են արվեստի կուսակցականությունն ու ժողովրդայնությունը, սերտ կապը կյանքի հետ, ազգային տրադիցիաների զարգացումը և փոխհարստացումը՝ եղբայրական սովետական հանրապետությունների բարեկամության հիման վրա։ Մարքսիստական էսթետիկայի այդ հիմնական սկզբունքները, որ այնպես լիարժեք են դարձնում մեր տաղանդավոր ստեղծագործողների արվեստը, խթանում են յուրաքանչյուր ազգային կուլտուրայի, դրանով իսկ՝ միասնական սովետական բազմազգ կուլտուրայի ծաղկմանը, բացում ստեղծագործական նոր հորիզոններ և կուլտուրայի հարստություններն ավելի են մոտեցնում մասսաներին։

Վիլնյուս




# ԱԶԳԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԸ

Հ. Զ. ԱՊՐԵՍՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Կոմունիստական կուսակցության ղեկավարած սովետական պետության ավելի քան կեսդարյա զարգացումն այնպիսի մի պրոցես է եղել, որի մեջ ընդգրկվել են նոր, իրենց բնույթով սոցիալիստական ժողովուրդներ ու ազգեր։ Միաժամանակ, սոցիալիստական իրականության բոլոր ոլորտներում առաջացել և առավել բեղմնավոր են դրսևորվել անցյալում բոլորովին անհայտ, հարաճուն համագործակցության ու փոխադարձ օգնության, սոցիալական էությամբ միանգամայն նոր տիպի ազգամիջյան հարաբերություններ, որոնք դարձան սովետական ազգերի ու ազգությունների մերձեցման նախադրյալներ, նրանց առաջընթացն ապահովելու և պատմականորեն եղած անհավասարությունը հաղթահարելու վճռական գործոնները։

Սոցիալիստական իրավակարգն արմատապես փոխելով հասարակության զարգացման բուրժուական հարաբերությունները, միաժամանակ կյանքի կոչեց պատմական պրոցեսի անընդհատության օրինաչափությունը։ Սովետական Միության ազգերի ու ազգությունների կյանքում ընդհատության և անընդհատության դիալեկտիկական միասնության մեջ առաջացավ և զարգացավ մի շարժում, որը կարելի է բնութագրել որպես նրանց կուլտուրայի վերածնունդ, իր էությամբ և ձևերով սոցիալիստական վերածնունդ։

Տարակույս չկա, որ ամեն մի վերածնունդ, առաջին հերթին, ինչպես ազգային, այնպես էլ այլազգային ծագում ունեցող կուտակված արժեքների ժառանգումն է։ Դրանց ստեղծագործական յուրացումն այդպիսի շարժման անմիջական նախադրյալներից մեկն է։ Սակայն սոցիալիստական վերածնունդն ավելի լայն է և հարուստ նոր հասարակարգին բաժին ընկած բոլոր արժեքներից։ Սոցիալիստական վերածնունդը չի սահմանափակվում կուտակված արժեքների յուրացմամբ։ Դրա հետ մեկտեղ այն դառնում է այնպիսի պրոցես, որի մեջ տվյալ ազգությունը, և նույնիսկ ազգը, առաջին անգամ համակողմանիորեն իմաստավորում է իր անցյալը։ Ընդ որում, ինչպես ինքնին հասկանալի է, սեփական պատմության ճանաչումը ինքնանպատակ չէ և ոչ էլ կոչված է սոսկ բավարարելու ազգային զգացմունքները, առավել ևս՝ ջերմացնելու կեղծ ըմբռնվող հայրենասիրությունը, որպիսի հանգամանքը եր-

բեմն հարուցում է ազգային սնապարծություն ու պարծենկոտություն։ Սոցիալիստական հասարակարգում ազգային պատմության վերաիմաստավորումը դառնում է տվյալ ժողովրդի բոլոր ստեղծագործական հնարավորությունների և ուժերի ծավալման նախապայմաններից ու գործոններից մեկը՝ դրանք սոցիալիստական շինարարության ոլորտը ներգրավելու համար։

Ավելորդ չէ հիշատակել «պատմական» և «ոչ-պատմական» ազգերի ու ազգությունների վերաբերյալ վաղուց գոյություն ունեցող բուրժուական ռեակցիոն ըմբռնումները, որոնք հերյուրել են «ընտրյալ ազգի» պաշտամունքը, նրան վերագրելով այնպիսի բացառիկ բարեմասնություններ, հատկություններ, որոնցից, իբր, զուրկ են մյուս ազգերն ու ազգությունները։ Այդպիսի միտումով բուրժուական սոցիոլոգներն ու պատմաբանները հրահրում են ազգային ատելությունը և արդարացնում ազգային կեղեքումը։

Սակայն մարքսիզմ-լենինիզմը վաղուց հիմնավորապես մերկացրել է ազգային խտրականության, ռասայական ու նացիոնալ-շովինիստական բուրժուական գաղափարախոսությունների հետադիմական էությունը։ Հայտնի է, որ Լենինը սոցիալիստական կուլտուրայի ստեղծման ու զարգացման կարևոր նախապայմանն էր համարում անցյալի կուլտուրական ժառանգության բուրժուական պրակտիկայի ու ըմբռնման քննադատական հաղթահարումը։

Հռչակելով երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների հավասարության սկզբունքը, սովետական իշխանությունը դրանով իսկ միատեսակ հոգատար վերաբերմունքի սկիզբ դրեց նրանցից յուրաքանչյուրի անցյալի, նրանց պատմական լինելության և զարգացման պայմանների նկատմամբ։

Առանց ազգային պատմության ստույգ իմացության, ինչպես դա բխում է մարքսիզմ-լենինիզմի ոգուց, հնարավոր չէր ապահովել լենինյան ազգային քաղաքականության անշեղ իրականացումը։ Սոցիալիզմը ՍՍՀՄ բոլոր ազգությունների ու ազգերի համար ո՛չ միայն ապահովեց ազատորեն վերհանելու ու գնահատելու իրենց անցյալի ժառանգությունը, այլև, դրա հետ մեկտեղ, նրանց օգնեց նոր ձևով, մարքսիստական-լենինյան մեթոդոլոգիայի մեկնակետից ըմբռնելու սեփական պատմությունը, այն դարձնելով սոցիալիստական կուլտուրայի առաջընթացի գործոն։ Սկսվեց աննախընթաց, նույնիսկ արևմտաեվրոպական վերածննդին անհայտ, մարքսիզմ-լենինիզմի հիմքերի վրա խարսխվող ազգային կուլտուրաների վերածնունդը։

Դիմենք, օրինակ, այնպիսի հնագույն ժողովուրդների պատմությանը, ինչպիսիք տաջիկներն ու ուզբեկներն են։ Հանրահայտ է, թե ինչպիսի կուլտուրա, մասնավորապես, ինչպիսի հրաշալի պոեզիա են ստեղծել այդ ժողովուրդները և ինչպիսի ականավոր մտածողներ են ունեցել։ Առանձին երկեր են գրվել նաև պատմության վերաբերյալ, ինչպես Մուհամադ Նարշահի Բուխարայի պատմությունը, որը վերաբերում է տաջիկների X դարի պատմությանը։ Այդ աշխատությունն անցյալում հրատարակվել է ֆրանսերեն և ռուսերեն։ XVI դարում ծնունդ առավ հուշավիպական գրականությունը (օրինակ, Զայնուդդին Վասիֆի Բաբուրի հիշատակարանը, Զարմանալի իրադարձությունները)։ XIX հարյուրամյակում ականավոր լուսավորիչ և բանաստեղծ Ահմեդ Դոնիշը (1827—1897) ստեղծեց Բուխարայի մանգիտական էմիրների համառոտ պատմությունը։ Այդ ստեղծագործությունները արժեքավոր տեղեկություններ են պարունակում հնագույն ժողովուրդների պատմության վերաբերյալ։ Բայց ինչպես տաջիկները, այնպես էլ ուզբեկները, մինչև սովետական կարգերը



համակարգված ու ամփոփված, բավականաչափ լրիվ և, առավել ևս, տպագիր ազգային պատմագրություն չեն ունեցել։ Երկու հնագույն ժողովուրդների այդպիսի գիտական պատմություն ստեղծվեց սովետական տարիներին։ Հրատարակվեց Տաջիկստանի եռհատոր (հինգ գրքերով) ընդհանուր պատմությունը և Ուզբեկական ՍՍՀ քառահատոր պատմությունը։ Լույս են ընծայվել հանրապետությունների պատմության առանձին ժամանակաշրջանների վերաբերյալ գրքեր։

Հարուստ տարեգրություն և սեփական պատմական գրականություն ունեցող հնագույն ժողովուրդները ևս սովետական կարգերի օրոք ծավալեցին պատմա-հետազոտական աննախադեպ աշխատանք։ Կարելի է վկայակոչել հայկական պատմությունը, որը դեռևս V դարում ունեցել է մի խումբ ականավոր մտածող-պատմաբաններ, բանասիրության հիանալի վարպետներ։ Նրանց արժեքավոր աշխատություններն աշխարհաբարի են վերածվում, թարգմանվում են ու հրատարակվում նաև հիմա։

Հայկական պատմության վերաբերյալ բազմահատորանոց գրականություն է ստեղծվել դեռևս XVIII և հատկապես XIX հարյուրամյակներում։ Բայց Սովետական Հայաստանում ևս առաջին անգամ սկսվեց այն բազմակողմանի ու մեծածավալ աշխատանքը, որը, հիրավի, կարելի է դիտել հնագույն պատմություններից մեկի վերածնունդ և այդ հիման վրա՝ ազգային նոր պատմագրության զարգացում։ Հայ ժողովրդի բազմադարյա և շատ դժվարին պատմությունը միայն սովետական շրջանում դարձավ լիովին համակարգված, ըստ ամենայնի լուսաբանված և, որ գլխավորն է, գնահատվեց մարքսիստական-լենինյան դիրքերից։ Նույնը կարելի է ասել վրաց ժողովրդի պատմության վերաբերյալ։

Ամեն մի ազգային պատմության վերածնունդը կատարվում է մտքի պատմությունը հանրագումարի բերող փիլիսոփայության զարգացման համընթաց։ Հիրավի, ազգային նոր պատմագիտության ստեղծումից ոչ պակաս նշանակություն ունեցավ Սովետական Միության ժողովուրդների փիլիսոփայության վերածնունդը։ Մինչև սոցիալիստական հասարակարգը Ռուսաստանի ճնշված ժողովուրդների փիլիսոփայությունը փաստորեն պաշտոնապես ճանաչված գիտությունից դուրս էր մնում։ Համեմատաբար հազվադեպ էին հիշատակվում մեր երկրի որոշ ժողովուրդների իմաստասերների անունները։ Իսկ հիմա, սոցիալիստական կարգերի շնորհիվ, առանց բացառության բոլոր ժողովուրդների փիլիսոփայությունն ու սոցիոլոգիական միտքը ներգրավված են համաշխարհային փիլիսոփայության մտքի ընդհանուր հունի մեջ և ներկայացված, օրինակ, Փիլիսոփայության պատմության վեցհատորյակում (ՍՍՀՄ ԳԱ, Մ., 1957—1965)։ Այդ հրատարակության առաջին գրքում լիակատար հիմունքով ասված է՝ «ՍՍՀՄ շատ ժողովուրդներ արդեն ֆեոդալիզմի դարաշրջանում արժեքավոր ավանդ են մուծել մարդկության կուլտուրայի գանձարանը, այդ թվում փիլիսոփայական և սոցիոլոգիական մտքի զարգացման ասպարեզը» (էջ 239)։ Այս պնդումը բացահայտվում և ապացուցվում է ակադեմիական կոլեկտիվ աշխատանքի տվյալ և հաջորդ հատորներում՝ ռուսների, ուկրաինացիների, հայերի, վրացիների, ադրբեջանցիների, բելոռուսների, լիտվացիների, լատիշների, էստոնացիների, ուզբեկների, տաջիկների, ղազախների, մոլդավացիների, օսերի և Սովետական Միության մյուս ազգությունների փիլիսոփայական ու սոցիոլոգիական մտքի լուսաբանմամբ։

Մեր հայրենիքի ժողովուրդների փիլիսոփայության պատմությունն առանձնապես լայնորեն է լուսաբանվում Փիլիսոփայության պատմությունը ՍՍՀՄ-ում ակադեմիական աշխատության մեջ (ՍՍՀՄ ԳԱ, «Գիտելիք» հրատ., 4 հատորով, 1968—1971)։ Այդ ժողովուրդների բազմաթիվ մտածողների անուններ հիշատակվում են հինգհատորանոց Փիլիսոփայական հանրագիտարանում («Սովետական հանրագիտարան» հրատ., 1960—1970)։ Փիլիսոփայության ազգային պատմության վերաբերյալ հատուկ աշխատություններ են լույս տեսել Հայաստանում, Վրաստանում, Ադրբեջանում, Ուկրաինայում և մեր մյուս հանրապետություններում։ Ինչպես Մոսկվայում, այնպես էլ տեղերում հրատարակված աշխատություններում բացահայտվում ու գնահատվում է յուրաքանչյուր ժողովրդի ավանդը փիլիսոփայական և սոցիոլոգիական մտքի բնագավառում։

Այժմ սովետական հանրապետություններում գոյություն ունի պատկառելի պատմա-փիլիսոփայական գրականություն։ Այն ազգային մշակույթի վերածննդի առավել ցայտուն արտահայտությունն է, որովհետև ստեղծվում է մտավոր աշխատանքի բարդ ոլորտում, հարստացնում մեր ընդհանուր-միութենական մշակութային ժառանգությունը։ Չտարբերվելով իր ողջ էությամբ, օրենքներով ու կատեգորիաներով, ազգային ինչ-ինչ առանձնահատկությամբ, յուրաքանչյուր սոցիալիստական ազգի, ժողովրդի փիլիսոփայությունը միևնույն ժամանակ արտացոլում է անցյալում ամենևին էլ ոչ միատեսակ հանգամանքներում գոյատևած հանրությունների մտքի մակարդակը։ Փիլիսոփայությունը դրա հետ մեկտեղ, արտացոլում է հենց իրեն՝ փիլիսոփայությունն ստեղծող ժողովրդի հոգեկան ու բանական աճը, նրա մտավոր կուլտուրայի աստիճանը։ Փիլիսոփայության վերածնունդը ընդլայնում է իմացության պատմական հորիզոնները և նոր նյութեր տալիս մարքսիստական-լենինյան փիլիսոփայության հետագա առաջընթացի համար։ Այդպիսի վերածնունդն է՛լ ավելի է բարձրացնում առաջներում ցարական կայսրության կողմից ճնշված ազգությունների հեղինակությունը, նպաստում նրանց իրավահավասարության աճին, փոխադարձ հոգևոր հարստացմանն ու մերձեցմանը։

Սոցիալիզմը վերստեղծեց և շարունակում է վերստեղծել մեր երկրի՝ առանց բացառության, բոլոր ազգերի ու ժողովուրդների գեղարվեստական շատ արժեքներ։ Այդ վերաբերում է ինչպես ժողովրդի վեհակերտ ստեղծագործություններին, այնպես էլ առանձին արվեստագետների՝ բանաստեղծների, ճարտարապետների, գեղանկարիչների ու քանդակագործների, երգիչների ու երաժիշտների, բազմապիսի գեղարվեստական զբաղմունքների վարպետների աչքի ընկնող, անկրկնելի երկերին, ինչպես նաև ժողովրդական ինքնագործ և պրոֆեսիոնալ արվեստի լավագույն ավանդույթներին։

Հնարավոր չէ մանրամասն կանգ առնել ուշադրության արժանի բոլոր փաստերի վրա։ Դրա համար կպահանջվի մի ամբողջ մենագրություն, եթե չասենք պատմա-արվեստագիտական հետազոտությունների կոմպլեքս։ Նշենք միայն այն երևույթները, որոնք ակնառու վկայում են ազգային կուլտուրայի սոցիալիստական վերածնունդը։

Այդպիսիք են, նախ՝ տարբեր ազգությունների ժողովրդա-հերոսական վիպասանությունները։ Ասում ենք նախ, քանի որ կոլեկտիվ հեղինակը՝ աշխատավոր ժողովուրդը, դրանց մեջ դրսևորվել է իր ողջ կեցությամբ, աշխարհզգացողությամբ ու աշխարհըմբռնմամբ, իր խոհերով ու սպասումներով։



Հայտնի է, թե ռուսական ժողովրդական վեպերին, հեքիաթներին և նույնիսկ «եղերերգություններին» ինչպիսի նշանակություն էր տալիս Լենինը՝ ժողովրդական աշխարհայեցողության մարքսիստական լուսաբանման համար։ Ուստի, օրինաչափ է, որ ՍՍՀՄ ժողովուրդների պատմության և սոցիոլոգիական մտքի շարադրանքում նկատելի տեղ է հատկացված նաև ժողովրդա-հերոսական վիպասանության հիմնական գաղափարներին։

Բայց յուրաքանչյուր վիպասանություն, ամենից առաջ, գեղարվեստական ստեղծագործություն է։ Եվ սխալ կլիներ այն միայն բանավոր-բանաստեղծական արվեստի տեսակին դասելը։ Հենց միայն այն, որ վիպասանությունը սերնդե-սերունդ կատարվել է բանավոր, հաճախ զուգակցվել գործիքային երաժշտությամբ, ինչպես նաև երգասացությամբ, որոշակի դրամատիկ ձևի գործողություններով, հիմք է տալիս վիպասանության մասին խոսելու որպես արվեստի, ընդ որում, ընդհանրացնող արվեստի։

Առաջներում գրություն չունեցող մի շարք ժողովուրդների վիպասանությունը, որի համար բնորոշը բանավոր և կիսաերգային ձևն էր, սովետական կարգերի օրոք է գրառվել բոլոր տարբերակներով, քննականորեն ի մի բերվել և հրատարակվել մեծ տպաքանակով։ Վիպասանությունը դադարեց բանավոր լինելուց, իսկ բանավոր-բանաստեղծական, հեքիաթասացության ոճը պատշաճ չափով պահպանվեց գրական տարբերակում և դրանով շատ բան փրկվեց մոռացումից։ Նույնիսկ այնպիսի ժողովրդական հոյակապ ստեղծագործություններ, ինչպիսիք՝ Սասունցի Դավիթն ու Ամիրանին են, որոնք շատ տարբերակներով էին գրի առնված և հրատարակված, միայն սովետական շրջանում լիովին մշակվեցին ու լույս ընծայվեցին մայրենի և ռուսաց լեզուներով։

Առանձնապես բնորոշ են Նարտի վիպասանությունն ու նարտյան ավանդապատումները, որոնք զանազան տարբերակներով ներկայացված են աբխազների, ադիգեյցիների, կաբարդինների, օսերի և Կովկասի որոշ լեռնական ազգությունների ժողովրդական վիպասանություններում։ Համառոտակի նշենք միայն օսեթական վիպասանությունը, որի մի քանի ավանդապատումները գրառվել են և առանձին բանահավաքների կողմից տպագիր մամուլում մեկնաբանվել դեռևս անցյալ հարյուրամյակի վերջին։ Իսկ նարտյան վիպասանությունը, որը սաղմնավորվել է անհիշելի ժամանակներում, բազմահատորանոց մի ստեղծագործություն է, որի երեք ստվար հատորներն արդեն լույս են տեսել։ Վիպասանության հավաքովի տեքստը հրատարակվել է ֆրանսերեն, գերմաներեն, ունեցել ռուսերեն մի քանի հրատարակություններ։ Բացառիկ հետաքրքրական և հարուստ աշխարհ են բացում նարտյան վիպասանության հրատարակված մասերը իրենց ազգագրությամբ, բարոյագիտությամբ, փիլիսոփայությամբ և գեղագիտությամբ։

Ներկայումս ո՛չ միայն Սասունցի Դավիթը, Ամիրանին, օսեթական Նարտերը, այլև ադրբեջանական Քյոր-Օղլին, ինչպես նաև դրա թուրքմենական ու ազգային մյուս տարատեսակները, նարտյան ավանդապատումների աբխազական, ադիգեյական, կաբարդինական և մյուս տարատեսակները, կալմիկական Ջանանգիրը, կարելական Կալեվալան, կիրգիզական Մանասը, էստոնական Կալևոպոեգը, ռուսական ժողովրդական վեպերն ու Խոսք Իգորի գնդի մասին վիպասանությունը Սովետական Միության այն վիթխարի հոգևոր ժառանգությունն են, որոնց վերածնունդը ունեցել և շարունակում է ունենալ առաջ-

նակարգ նշանակություն։ Եվ, առհասարակ, սովետական բազմազգ կուլտուրան դժվար է պատկերացնել առանց այդ ժողովուրդների նշված անգնահատելի ստեղծագործությունների։ Ուստի, բնական է, որ ո՛չ միայն ժողովրդա-հերոսական վիպասանությունը, այլև ազգային ինքնագործ արվեստի մարգարիտների վերածնունդը դարձավ մշակութային, առանձնապես գեղարվեստական զարգացման անընդհատության՝ պատմական հաջորդականության պայմանն ու գործոններից մեկը։ Այդ աշխատանքի շնորհիվ հայտնաբերվեցին հոգևոր արժեքները, դրանք ներգրավվեցին հասարակական առօրյայի մեջ, դրանով իսկ հարստացրին մեր բազմազգ էսթետիկական կուլտուրան։

Ժողովրդա-հերոսական վիպասանությունը վերածնվել է նաև արդի պրոֆեսիոնալ արվեստի՝ երաժշտության, կերպարվեստի ոլորտում, դրա մոտիվներով գրվել են պոեմներ ու դրամաներ, ինչպես և երաժշտական ստեղծագործություններ։ Հիշեցնենք, որ մեր երկրի ազգային լավագույն օպերաներից մեկը ադրբեջանական երաժշտության կլասիկ Ուզեիր Հաջիբեկովի Քյոր-Օղլին է։ Տաղանդավոր, հիրավի ժողովրդական այդ ստեղծագործությունն անցել է Սովետական Միության շատ օպերային բեմահարթակներով, ամենուր ընդունվել ցնծությամբ։ Նարտյան դյուցազունների կերպարները մեծ կտավի վրա վարպետորեն վերարտադրել է օսեթական ականավոր գեղանկարիչ Մահարբեկ Տուգանովը, որի փորձը և Նարտյան վիպասանության թեմատիկայով կատարված նրա ավանդույթները շարունակում են մյուս գեղանկարիչները։

Քանդակագործներն էլ չկարողացան անտարբեր մնալ ժողովրդա-հերոսական վիպասանության վերածննդի պրոցեսի նկատմամբ։ Հիշենք անջնջելի տպավորություն թողնող քանդակագործ Երվանդ Քոչարի Սասունցի Դավթի հոյակերտ հուշարձանը, որ խոյանում է Երևանի կայարանամերձ հրապարակում։

Հարկ չկա, անշուշտ, ընդգծելու, որ խոսքը ժողովրդա-հերոսական վիպասանության պարզ վերստեղծման մասին չէ։ Մարքս-լենինյան մեթոդոլոգիան, մասնավորապես գեղագիտությունը, օգնում են նոր ձևով մոտենալու ժողովրդական ստեղծագործություններին, դրանք նոր լույսի տակ «կարդալու», հասկանալու և մեկնաբանելու, օրգանապես կապակցելով սոցիալիստական հասարակության գաղափարախոսության և գեղագիտության, նրա գեղարվեստական պրակտիկային։

Մարքս-լենինյան լույսի տակ վիպասանությունը շարունակեց դրսևորել իր ինքնությունը, հարստացավ զանազան արվեստների լեզուներով և, որ շատ կարևոր է՝ փիլիսոփայական ու գեղագիտական մտքի արդիական նվաճումներով։ Այս ամենի հետ մեկտեղ, զուգահեռաբար, իսկ հաճախ ժողովրդա-հերոսական վիպասանության և, ընդհանրապես, բանահյուսության վերածննդի հետ օրգանական փոխկապակցության մեջ, հսկայական և բազմակողմանի աշխատանք էր տարվում ՍՍՀՄ ժողովուրդների բազմերանգ երգարվեստի, պարարվեստի վերստեղծման ու նոր վերելքի համար։ Իհարկե, այն հանգամանքը, որ Հոկտեմբերյան հեղափոխությունը, իսկ այնուհետև սոցիալիստական հասարակարգն աննախընթաց շարժման մեջ դրին մեր երկրի ժողովրդական մասսաներին, ծավալեցին նրանց հեղափոխական և ստեղծագործական կարողությունները՝ բարձրացնելով ժողովրդի պատմական դերը, չէր կարող հասարակական հարաբերություններում չանդրադառնալ այն ամենի վրա, ինչը ժողովուրդն ստեղծել էր անցյալում։ Այդ պայմաններում ժո-



ղովրդի աշխարհըմբռնումը, բարքերն ու սովորույթները, նրա կուլտուրան, կենցաղը և ընդհանրապես հոգևոր աշխարհը բացահայտվեցին նոր ձևով։ Այդ կապակցությամբ բնական է, որ պետք է նույնպես նոր ձևով և առավել արտահայտչականորեն ընկալվեր նաև ինքնատիպ ազգային ստեղծագործությունը՝ ժողովրդական երգարվեստն ու պարարվեստը։

Բայց որքան էլ սովետական հասարակությունը ինքնագործ արվեստում լրջորեն է վերաբերվել վերանորոգչական մեծ պրոցեսի օրենքներին ու մեխանիզմին, այնուհանդերձ, անհրաժեշտ էր շարունակել խստորեն մտածված և գիտականորեն հիմնավորված աշխատանքը։ Բազմազգ ժողովրդական երգի նմուշները ո՛չ միայն հավաքվում էին (գրառվում), ուսումնասիրվում և մեկնաբանվում, այլև մեծ խնամքով մշակվում էին, կատարելագործվում իրենց ինտոնացիոն և մելոդիկ կառուցվածքում, հստակ բացահայտվում էր դրանց թեմատիկ զարգացումը։ Ժողովրդական շատ ստեղծագործություններ այժմ կատարում են ակադեմիական և առաջնակարգ կապելաներն ու պետական երգչախմբերը։

Մեր երկրում հիանալի ավանդույթ են դարձել երգի տոները։ Դրանք ծնունդ են առել Մերձբալթիկայի հանրապետություններում։ Լատիշները, լիտվացիները և էստոնացիները դեռևս XVI—XVII դարերում ժողովրդա-երգային բարձր զարգացած մշակույթ ունեին։ Բազմաձայն երգչախմբային կատարումն իր ուրույն տեղն էր գրավում նրանց հոգևոր կյանքում։ Ժողովրդական երգարվեստը վերածնվեց հսկայական թափով՝ արդի երաժշտական կատարողական գեղագիտության բազայի վրա։ Խմբային երգը դարձավ մասսայական. երգի տոներին սովորաբար հանդես են գալիս մի քանի հազար հոգուց բաղկացած երգչախմբեր։ Մերձբալթիկայի հանրապետությունների փորձը տարածվեց սովետական մյուս հանրապետություններում։

Իսկական բարգավաճման է հասել նաև սովետական բազմազգ ժողովրդական պարարվեստը, որը համաշխարհային ճանաչում է ստացել։ Թարմացված ժողովրդական երգը, գործիքային երաժշտությունը և պարարվեստը հարստացվում են սոցիալիստական արդիականության մոտիվներով, թեմաներով և սյուժեներով, անընդհատ կատարելագործվում իրենց ձևերով ու կատարողականությամբ։ Դրանք զգալի ազդեցություն են թողնում պրոֆեսիոնալ կոմպոզիտորական ստեղծագործության, օպերայի ու բալետի արվեստի վրա։

Չանդրադառնալով գեղարվեստական մշակույթի մյուս բնագավառներին, մասնավորապես վերածնվող ճարտարապետությանը, արժե ընդգծել հետևյալ կարևոր հանգամանքը։ Այդ պրոցեսում կարևոր նշանակություն ունի նոր վերաբերմունքը հնի նկատմամբ, վերաբերմունք, որը ամբողջությամբ որոշվում է սոցիալիստական շինարարության ոգով, բնույթով և իդեալներով։ Այդպիսի վերաբերմունքը կապվում է անցած ժամանակների գեղարվեստական կուլտուրայի նվաճումները սոցիալիստական արվեստում ստեղծագործաբար օգտագործելու կոնկրետ նպատակների ու եղանակների հետ։ Այսպես, ժամանակակից ճարտարապետության մեջ դա արտահայտվում է ազգային ճարտարապետության որոշակի ձևերի և անգամ ավանդութային շինարարական նյութի օգտագործման, ազգային և ինտերնացիոնալ մոտիվների զուգակցման կամ, ավելի ճիշտ, համադրման, ճարտարապետական կոնստրուկտիվության և պատկերավոր համակարգի մեջ։

Եթե հարկ լիներ անդրադառնալու Սովետական Միության մեջ գեղարվեստական մշակույթի սոցիալիստական վերածննդի այլ երևույթների ու փաստերի, ապա, ըստ երևույթին, հետաքրքրական կլիներ մատնանշել արվեստի այնպիսի հնագույն տեսակների բուռն զարգացումը, ինչպիսիք՝ գեղարվեստական քանդակագրոշմումն է, առաջին հերթին, Անդրկովկասում և Դաղստանում, գեղարվեստական խեցեգործությունը՝ Ուկրաինայի և Միջին Ասիայի որոշ շրջաններում, փայտամշակման արվեստը՝ Անդրկարպատներում և Բելոռուսիայում, գեղարվեստական արտադրանքները (սաթից) Մերձբալթիկայում, նրբագույն ոսկրափորագրական արվեստը՝ Սիբիրում և այլուր։

Հնագույն և ազգային առումով ինքնատիպ արվեստների օրինակը վկայում է, թե ինչպես է առաջացել որոշակի էսթետիկական ձևը, ինչպես վերըսկըսվել և զարգացման նոր խթանում ստացել կոնկրետ գեղարվեստական աշխատանքը։ Ընդհանրապես, դժվար է մատնանշել ինքնագործ և պրոֆեսիոնալ արվեստի թեկուզև որևէ ձև, որը վերածնված չլինի սոցիալիզմի պայմաններում, հասկանալի է, լիցքավորվելով նոր բովանդակությամբ և համապատասխանելով սովետական հասարակության էսթետիկական պահանջներին։

Սովետական գեղագիտական պրակտիկայում մեծապես կատարելագործվել են արվեստաձևերն ու եղանակները։ Եվ որքան ավելի լայնանում ու կառուցվածքային առումով բարդանում էր սովետական արվեստի բազմազգայնությունը, այնքան ավելի բազմակողմանի ու հարուստ էր ներկայանում նախկինից ժառանգված ձևը և, դրա հետ միասին, նրանում ավելի բացահայտորեն էին արտահայտվում որոշ, խիստ էական, ինտերնացիոնալ տարրերը։ Հին ձևը, մարմնավորելով նոր բովանդակություն և դրանով իսկ ձեռք բերելով նոր կենսական ուժ, դառնում է նոր աշխարհզգացման և սոցիալիստական արվեստին յուրահատուկ բարձր գաղափարայնության արտահայտիչը։

Ինչպես այդ գաղափարայնությունը, այնպես էլ գեղարվեստական վարպետությունը հին արվեստներում, անկասկած, արտացոլում են սոցիալիզմի հարուցած սովետական բազմաժանր կերպարվեստի բարերար ազդեցությունը։ Ընդհանրապես վերածնվող մշակույթի և բոլորովին նոր զարգացած, բովանդակությամբ սոցիալիստական մշակույթի փոխներգործության և փոխհարըստացման թեման արժանի է հատուկ ու հանգամանալի քննարկման, բնութագրման ու գնահատման։ Այդ կարևոր երևույթին, եթե չասենք՝ օրինաչափությանը, մենք կարողացանք անդրադառնալ միայն մասնակիորեն։ Սակայն անվիճելի է, որ սովետական երկրում հնի, հասկանալի է, հիրավի ժողովրդականի ու իր բնույթով առաջադիմականի ու նորի զարգացումը մի անբաժանելի պրոցես է, որը միասնական է իր պատճառական կապերի, անշեղ շարժման մեջ և, անշուշտ, զերծ չէ դիալեկտիկական հակասություններից։

Գործող կապերն ու պրոցեսի միաժամանակությունը պայմանավորված են սոցիալիստական շինարարության էությամբ, շարժիչ ուժերով ու ձևերով։ Դրանք դետերմինացված են նաև նրանով, որ մեր երկրի յուրաքանչյուր ազգության հոգևոր կյանքի և սովետական ժողովրդի, որպես նոր հանրության առաջընթացը տեղի է ունեցել կուլտուրական մեծ հեղափոխության ծավալման ընթացքում։ Հատկապես պետք է ընդգծել, որ անցյալի մշակույթի լավագույն նվաճումների վերածննդի և նոր, բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային մշակույթի զարգացման ու ծաղկման միաժամանակյա պրոցեսը հետագայում ևս լինելու է առաջատարն ու վճռականը։

Մոսկվա

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ՀՐԱՆՈՒՇ ԴԱՐԲԻՆՅԱՆ

Բանասիրական գիտությունների թեկնածու

Հայ գրականության մեջ ժողովուրդների բարեկամության թեման հին է, որքան ինքը՝ գրականությունը։

Այդ թեման գրականության զարգացման տարբեր էտապներում, կրելով կոնկրետ պատմական ժամանակաշրջանի կնիքը, հանդես է գալիս տարբեր ձևերով, տարբեր արտահայտչամիջոցներով։ Հայ հին և միջնադարյան գրականության մեջ ժողովուրդների բարեկամության թեմայի արտացոլման գաղափարական մեկնակետը հումանիզմն է ընդհանրապես. մարդու նկատմամբ անվերապահ մարդկային վերաբերմունքի պահանջը, որն արտահայտվում է մարդկանց օտարացնող, միմյանց հետ թշնամացնող ազգային կրոնական սովորությունների ու քարացած տրադիցիաների դեմ բարձրացրած բողոքի միջոցով և հարևան ժողովուրդների մարդկային արժանիքների գովաբանության, նրանց բարեմասնությունների դըրվատանքով։ Հայ նոր գրականության մեջ բարեկամության թեմայի արտացոլման գաղափարական մեկնակետը դարձյալ հումանիզմն է, որն այստեղ ստանում է որոշակի սոցիալական բովանդակություն։

Հայ նոր գրականության մեջ բարեկամության թեման հիմնականում զարգանում է երկու ուղղությամբ՝ անդրկովկասյան ժողովուրդների բարեկամության արտացոլում, հայ և ռուս ժողովուրդների բարեկամության արտացոլում, որը գրեթե միշտ միահյուսվում է հայ ժողովրդի ազատագրության հեռանկարի պատկերման հետ։ Այս երկու մոտիվները փոխադարձաբար լրացնում, հարստացնում են միմյանց։ Հայ կլասիկ գրականության մեջ ռուս աշխատավոր մարդու նկատմամբ ջերմ սերը զուգակցվում է ցարական իշխանության, նրա ներկայացուցիչների, չինովնիկության հանդեպ տածած ատելության հետ։

Հայ առաջավոր գրողները, անողոքաբար քըննադատելով եվրոպական պետությունների ագրեսիվ գաղութատիրական քաղաքականությունն Անդրկովկասի նկատմամբ, ցույց են տալիս, որ ամեն տեսակ ճնշումից ազատագրվելու միակ ելքը ռուս ժողովրդի անշահախնդիր եղբայրական բարեկամությունն է։

Հայ նոր գրականության զարգացման սկզբնական շրջանում՝ XIX դարի առաջին կեսերին, հումանիզմն ընդհանրապես (Աբովյան— Թուրքի աղջիկը, Սոնայ տարաբախտ աղջիկն և այլն) զուգորդվում է պարսկական բռնակալության դեմ անդրկովկասյան ժողովուրդների մղած միասնական պայքարի մոտիվների հետ, դեմոկրատիզմի գրքերից բացահայտվում են այդ ժողովուրդների բարեկամությունն ու հոգեհարազատությունը։ Այս կապակցությամբ առաջ է քաշվում նաև հայ և ռուս ժողովուրդների բարեկամության հարցը (Աբովյան— Վէրք Հայաստանի, Վերջին ճռաժարական քաջազոր արքային Հերակլի, Ձայն աղաղակի որբոց, Նալբանդյան— Կրիտիկա Սոս և Վարդիթերի, Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ...)։

70—80-ական թվականների հայ գրականությունը շարունակում ու զարգացնում է Խ. Աբովյանի և Մ. Նալբանդյանի ստեղծագործական, գաղափարական տրադիցիաները։ Սակայն այս շրջանի գրականության մեջ հիմնական շեշտը դրվում է «հայրենական» ցեցերի, կեղեքիչների, հարստահարիչների մերկացման վրա, և ժողո-

# ՍՍՀՄ-ը թվերի լեզվով

## 50-ԱՄՅԱ ՎԵՐԵԼՔԸ

Լինելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության, ամբողջ երկրի մասշտաբներով կատարված հեղափոխական վերափոխումների շարունակությունը, ՍՍՀՄ կազմավորումը վճռական ազդակ հանդիսացավ մեր երկրի բազմակողմանի զարգացման ու առաջընթացի համար: Ազատագրված և նոր հասարակարգի կառուցման ուղին բռնած տարբեր ազգությունների աշխատավորների եղբայրական փոխադարձ օգնության, սերտ համագործակցության ու ստեղծագործական մաքառումների շնորհիվ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունն անցած 50 տարվա ընթացքում խոշոր, պատմության մեջ չտեսնված նվաճումների է հասել ողջ ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության զարգացման և բնակչության կենսամակարդակի բարձրացման բնագավառներում:

Այդ նվաճումները, ՍՍՀՄ առաջընթացը ցույց տանք թվերի լեզվով:

● ՍՍՀՄ էկոնոմիկայի զարգացման գլխավոր ցուցանիշը ազգային եկամուտն է, որը 50 տարում աճել է 112 անգամ, իսկ բնակչությունը՝ 1,7 անգամ: ՍՍՀՄ ազգային եկամուտը 1936—1940 թթ. (1965 թ. համադրելի գներով) կազմել է 154 միլիարդ ռուբլի, 1961—1965 թթ.՝ 840, իսկ 1966—1970 թթ.՝ մեկ տրիլիոն 166 միլիարդ ռուբլի, որի մոտավորապես երեք քառորդը օգտագործված է սպառման համար:

● Ազգային եկամուտը մեծ չափով կաճի իններորդ հնգամյակում և նրա տարեկան միջին ծավալը կկազմի 325 միլիարդ ռուբլի, ութերորդ հնգամյակի՝ 233 միլիարդ ռուբլու դիմաց: Ամբողջությամբ վերցրած իններորդ հնգամյակում երկրի ազգային եկամուտը կկազմի մեկ տրիլիոն 625 միլիոն ռուբլի:

● ՍՍՀՄ ազգային եկամտի աճման տվյալները ցույց են տալիս սովետական էկոնոմիկայի առավելությունները տնտեսապես զարգացած կապիտալիստական գլխավոր երկրների էկոնոմիկայի նկատմամբ: Վերջին ժամանակաշրջանի, ներառյալ 1970 թ. տվյալներով, եթե ԱՄՆ-ի ազգային եկամուտը կրկնապատկելու համար պահանջվեց 20, Անգլիային՝ 30, ԳՖՀ-ին՝ համարյա 15 տարի, ապա ՍՍՀՄ-ին, հանրային արտադրության իսկայական մասշտաբների պայմաններում՝ 10 տարի:

● 1922 թ. մեր երկրի արդյունաբերական արտադրանքը կազմում էր 1913 թ. մակարդակի հազիվ 30 տոկոսը: Իր ծավալով այն տասնյակ անգամ պակաս էր, քան ԱՄՆ-ում և բազմիցս փիչում էր արևմտաեվրոպական ամեն մի խոշոր պետության արտադրությանը: Դրան արդեն վերջ է տրված: 1922 թվականից, 50 տարվա ընթացքում, ՍՍՀՄ-ում արդյունաբերական արտադրանքի թողարկումն աճել է 321 անգամ, այդ թվում արտադրամիջոցներինը՝ 322 անգամ, սպառման առարկաներինը՝ 102 անգամ:

● ՍՍՀՄ-ում ստեղծվել, աճել ու մեծ զարգացում են ստացել ժամանակակից արդյունաբերության բոլոր ճյուղերը:

● 1922 թ. Անգլիայում, Ֆրանսիայում և Իտալիայում էլեկտրաէներգիայի արտադրությունը 26 անգամ գերազանցում էր Սովետական Միության արտադրածին: Իսկ անցյալ տարի ՍՍՀՄ-ը մեկ ու կես անգամ շատ էլեկտրաէներգիա արտադրեց, քան այդ երեք երկրները միասին վերցրած: Մեր երկրում էլեկտրաէներգիայի արտադրությունը 1975 թ. կհասնի 1030—1070 միլիարդ կիլովատ ժամի:

● 1922 թ. ՍՍՀՄ-ը գրեթե 40 անգամ քիչ պողպատ ձուլեց, քան վերոհիշյալ երեք երկրները: Սակայն 1971 թ. ՍՍՀՄ-ը ձուլեց ավելի քան 120 միլիոն տոննա պողպատ, իսկ Անգլիան, Ֆրանսիան և Իտալիան միասին վերցրած՝ 64 միլիոն տոննա:

● Մեքենաշինությունը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինման, երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդման նյութական հիմքն է: Կոմունիստական շինարարության բոլոր էտապներում մեքենաշինությունը զարգացել է առաջանցիկ տեմպերով: Այսպես. 1961—1970 թթ. արդյունաբերության ընդհանուր արտադրանքն աճել է 2,3 անգամ, ընդ որում մեքենաշինության արտադրանքը՝ 3,2 անգամ:

● Իններորդ հնգամյակում մեքենաշինության ընդհանուր արտադրանքն աճելու է 1,7 անգամ, որը ավելի քան 2 անգամ գերազանցում է երկրի մեքենաշինության 1960 թ. արտադրանքի ծավալին: 1975 թ. մեքենաշինության արտադրանքը 66 անգամ կգերազանցի 1940 թ. մակարդակը:

● 1913 թ. 10,3 միլիոն տոննայի դիմաց նավթի հանույթը ՍՍՀՄ-ում 1970 թ. հասավ 349 միլիոն տոննայի, ածխի հանույթը՝ համապատասխանաբար 29,2 և 624 միլիոն տոննայի, սև մետաղների գլանվածքինը՝ 3,6 և 92,5 միլիոն տոննայի, հանքային պարարտանյութերինը (պայմանական միավորներով)՝ 0,09 և 55,5 միլիոն տոննայի, ցեմենտինը՝ 1,8 և 95,3 միլիոն տոննայի, բոլոր տեսակի գործվածքներինը՝ 2194 և 8852 միլիոն քառակուսի մետրի, կաշվի կոշկինը՝ 68 և 676 միլիոն զույգի և այլն:

● Սովետական Միությունը արդյունաբերական արտադրությամբ առաջ է անցել արևմտաեվրոպական բոլոր երկրներից և ԱՄՆ-ից հետո աշխարհում երկրորդ ինդուստրիալ տերությունն է: Այժմ ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը անցնում է ամերիկյան ծավալի 75 տոկոսից:

● ՍՍՀՄ կազմավորումից հետո անցած 50 տարում մեծ զարգացում է ստացել նաև մեր երկրի գյուղատնտեսությունը: Կոլտնտեսային կարգի հաղթանակի, գյուղը ժամանակակից տեխնիկայով զինելու և այլ միջոցառումների շնորհիվ կես դարում գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունն ավելացել է 5 անգամ: Այստեղ ևս մեր զարգացման տեմպերը նույնպես ավելի բարձր են, քան ամբողջ աշխարհում: 1950 թ. ՍՍՀՄ-ին ընկնում էր հացահատիկի համաշխարհային բերքի 11,7 տոկոսը, իսկ 1970 թ.՝ 15,4 տոկոսը:

● Շեշտակիորեն բարձրացել է գյուղատնտեսական մթերքների ապրանքային արտադրությունը: 1922-ից մինչև 1971 թվականը հացահատիկի պետա-

կան գնումները աճել են ավելի քան 9 անգամ, մսինը՝ գրեթե 35 անգամ, կաթինը՝ 85 անգամ:

● 1971 թ. գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը կազմեց մոտ 87 միլիարդ ռուբլի, որը 8 տոկոսով բարձր է նախորդ հնգամյակի արտադրության տարեկան միջին մակարդակից: Այդ նույն թվականին հացահատիկի համախառն բերքը կազմեց 181 միլիոն տոննա, բրնձինը՝ 1,4 միլիոն տոննա, բամբակինը՝ 7 միլիոն տոննա, շաքարի ճակնդեղինը՝ 72,1 միլիոն տոննա, արևածաղկինը՝ 5,7 միլիոն տոննա, կարտոֆիլինը՝ 92,3 միլիոն տոննա, բանջարեղենինը՝ 20 միլիոն տոննա, մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) 13,1 միլիոն տոննա, կաթինը՝ 83,3 միլիոն տոննա, ձվինը 44,9 միլիարդ հատ, բրդինը՝ 424 հազար տոննա:

● Չնայած այդ ամենին, մեզ դեռևս չի բավարարում գյուղատնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված մակարդակը: Նկատի ունենալով այդ, ՍՄԿԿ XXIV համագումարը խոշոր միջոցառումներ նախատեսեց գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի համար: Համագումարի որոշումների համաձայն ընթացիկ հնգամյակում գյուղատնտեսության տարեկան միջին արտադրանքը, անցած հնգամյակի համեմատությամբ, կավելանա 20—22 տոկոսով: 1971—1975 թթ. գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կկազմեն գրեթե 129 միլիարդ ռուբլի: Գյուղը կստանա 1,700 հազար տրակտոր և խոշոր քանակությամբ այլ մեքենաներ ու սարքավորումներ: Անասնապահական աշխատանքների մեքենայացման համար մեքենաների թողարկումը կավելանա ավելի քան 2 անգամ: Մեծ ծավալ կստանա հողերի մելիորացիան:

● Կես դարում ՍՍՀՄ տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառությունը աճել է 151 անգամ: Ներկայումս միայն երկաթուղիներով 50 ժամում նույնքան բեռ է փոխադրվում, որքան փոխադրվել է ամբողջ 1922 թվականին: Մեծ զարգացում են ստացել նաև տրանսպորտի մյուս տեսակները: Այսպես, 1970 թ. ծովային բեռնատար տրանսպորտի բեռնաշրջանառությունը կազմեց 656,1 միլիարդ տոննա-կիլոմետր, գետային տրանսպորտինը՝ 170,0 միլիարդ տոննա-կիլոմետր, բեռնատար ավտոմոբիլային տրանսպորտինը՝ 220,8 միլիարդ տոննա-կիլոմետր: 1975 թ. դրանք կհասնեն համապատասխանաբար 918,6, 217,3 և 338,0 միլիարդ տոննա-կիլոմետրի:

● Նոր արտադրական կարողությունների, բնակարանների, դպրոցների, բուժհիմնարկների կառուցման և այլնի համար 50 տարում երկրում կապիտալ ներդրումները (համադրելի գներով) աճել են 372 անգամ: Սովետական մեկ մարդու հաշվով դրանք 1922 թ. (համադրելի գներով) կազմում էին մեկուկես ռուբլուց էլ պակաս, իսկ այժմ՝ մոտավորապես 375 ռուբլի: Կառուցումների մեծ ծավալի շնորհիվ շինարարության մեջ զբաղված բանվորների թիվը 1922 թ. համեմատությամբ մեծացել է 93 անգամ և հասել գրեթե 10 միլիոն մարդու:

● 1922 թ. մեր երկրում կար միայն 6,2 միլիոն բանվոր ու ծառայող, իսկ այժմ գրեթե 95 միլիոն, որից 65 միլիոնը կազմում է բանվոր դասակարգը:

● Հայտնի հաշվարկումներով, որոնք կատարված են մինչև Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը, որպեսզի ցարիզմի ժամանակ վերացվեր անգրագիտությունը, Ռուսաստանի համար պահանջվում էր 200, իսկ Միջին Ասիայի՝ 4600 տարի: Սովետական իշխանության պայմաններում իրագործված կուլտուրական հեղափոխության միջոցով անգրագիտությունը վերացվեց համարյա 20 տարում:



● Այժմ մեր երկրի ընդհանուր հանրակրթական բոլոր տեսակի դպրոցներում սովորում են 49 միլիոնից ավելի մարդ, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 4,4 միլիոն, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 4,6 միլիոն մարդ:

● Մեր մի շարք հանրապետություններ հեղափոխությունից առաջ ոչ մի բուհ չեն ունեցել: Դրանք ստեղծվեցին սովետական իշխանության օրոք: 1970—1971 ուսումնական տարում Մոլդավիայում 10 հազար բնակչին ընկնում էր 124 ուսանող, Թուրքմենիայում՝ 131, Տաջիկստանում՝ 140, Ղազախստանում՝ 152, Կիրգիզիայում, 161, Ուզբեկստանում՝ 192, Ադրբեջանում՝ 192, Հայաստանում՝ 214: Հետաքրքիր է նշել, որ Ֆրանսիայում համանման ցուցանիշը կազմում է 117 ուսանող, Իտալիայում՝ 78, ԳՖՀ-ում՝ 50 ուսանող:

● Սովետական հասարակության կուլտուրայի աճի, նրա սոցիալական պայմաններում կատարված հսկայական փոփոխությունների շնորհիվ կես դարում լուսավորության և կուլտուրայի ասպարեզներում զբաղված մարդկանց թիվը մեծացել է ավելի քան 16 անգամ, առողջապահության և ֆիզկուլտուրայի ասպարեզներում՝ 23 անգամ, գիտության և սպասարկման ասպարեզներում՝ 100 անգամ: 27 անգամ ավելացել է ուսանողների և տեխնիկումների սովորողների թիվը:

● Աշխարհում պատմության մեջ առաջինը մեր պետությունը իր վրա վերցրեց քաղաքացիների բուժման գործը, ապահովելով ձրի որակյալ բուժօգնություն ամբողջ բնակչությանը: Սովետական մարդկանց տրամադրության տակ կա մոտ 40 հազար ամբուլատոր-կլինիկական հիմնարկություն, ավելի քան 26 հազար հիվանդանոց, 3 հազարից ավելի սանատորիա, հանգստյան տուն և պանսիոնատ:

● Այժմ ՍՍՀՄ-ում աշխատում են աշխարհի բժիշկների քառորդից ավելին: 1971 թ. բոլոր մասնագիտությունների գծով բժիշկների թիվը հասավ 669 հազարի: Դա ավելի է, քան ԱՄՆ-ի, ԳՖՀ-ի և Ֆրանսիայի բժիշկների թիվը՝ միասին վերցրած:

● Մեր երկրում սրանից 40 տարի առաջ վերացել է գործազրկությունը: Բանվորների և ծառայողների ռեալ եկամուտները 1913 թ. համեմատությամբ աճել են ավելի քան 8 անգամ, իսկ գյուղացիների եկամուտները՝ համարյա 12 անգամ: Բնակչության կյանքի միջին տևողությունը ավելացել է՝ հասնելով մինչև 70 տարու:

● Մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ երկրի երբեմնի հետամնաց ազգային ծայրամասերն ու հանրապետությունները պատմականորեն կարճ ժամանակամիջոցում մեծ վերընթաց ապրեցին և դարձան ժամանակակից զարգացած ինդուստրիայի և մեքենայացված խոշոր գյուղատնտեսության երկրներ: Բավական է ասել, որ անցած կես դարում Կիրգիզիայի արդյունաբերական արտադրությունը մեծացել է 412 անգամ, Տաջիկստանինը՝ 513, Հայաստանինը՝ 527, Մոլդավիայինը՝ 532, Ղազախստանինը՝ 601 անգամ և այլն:

# ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ՍՈՎԵՏՆԵՐԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՍՖՍՀ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԻ ՑԱՆԿ

1922 թվականի մարտի 12-ին Թիֆլիսում գումարվեց Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի Խորհրդային Սոցիալիստական հանրապետությունների կենտրոնական գործադիր կոմիտեների ներկայացուցիչների լիազոր կոնֆերանս, որտեղ պայմանագիր կնքվեց երեք հանրապետությունների քաղաքական, տնտեսական ու ռազմական սերտ դաշինքի մասին: Ստեղծվեց Անդրկովկասի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Ֆեդերատիվ Միություն:

Նույն թվականի դեկտեմբերի 13-ին Սովետների Անդրկովկասյան I համագումարը (Բաքվում) Անդրկովկասի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Ֆեդերատիվ Միությունը վերակազմեց Անդրկովկասյան Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետության: Այս համագումարում ընտրվեցին պատգամավորներ՝ մասնակցելու Սովետների համամիութենական առաջին համագումարին (1922 թ. դեկտեմբերի 30):

Ստորև տպագրում ենք ԱՍՖՍՀ-ից ընտրված պատգամավորների ցանկը, որ գտնվում է Հոկտեմբերյան հեղափոխության պետական կենտրոնական արխիվում: Հիշատակում ենք 1922 թ. նրանց վարած պաշտոնները.

ՆԱՐԻՄԱՆՈՎ ՆԱՐԻՄԱՆ ՆԱՋԱՖՕՂԼԻ— Կուսանդամ 1905 թ., ԱՍՖԽՀ կենտգործկոմի նախագահ:

ՆՈՒՐԻՋԱՆՅԱՆ ԱՎԻՍ ՍՈՂՈՄՈՆԻ— Կուսանդամ 1918 թ., ՀԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար:

ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ ՍԱՐԳԻՍ ՍԱՀԱԿԻ— Կուսանդամ 1903 թ., ՀՍԽՀ Կենտգործկոմի նախագահ:

ՕՐՋՈՆԻԿԻՁԵ ՍԵՐԳՈ (Գրիգորի) ԿՈՆՍՏԱՆՏԻՆՈՎԻՉ—Կուսանդամ 1903 թ., ՌԿ(բ)Կ Անդրերկրկոմի քարտուղար:

ՄԱԽԱՐԱՁԵ ՖԻԼԻՊ ԵՍԱԵՎԻՉ— Կուսանդամ 1903 թ., ՎՍԽՀ Կենտգործկոմի նախագահ:

ԲԱԽՏԱՁԵ ՆԻԿՈԼԱՅ ԻՎԱՆՈՎԻՉ— Կուսանդամ 1907 թ., Աբխազիայի ԱՍԽՀ ժողկոմսովետի նախագահի տեղակալ և ներքին գործերի ժողկոմ:

ԿԻՐՈՎ ՍԵՐԳԵՅ ՄԻՐՈՆՈՎԻՉ— Կուսանդամ 1904 թ., ԱդրԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար:

ՄՅԱՍՆԻԿՅԱՆ (Մյասնիկով) ԱԼԵՔՍԱՆԴՐ ՖՅՈԴՈՐՈՎԻՉ— Կուսանդամ 1906 թ., ՌԿ(բ)Կ Անդրերկրկոմի քարտուղար:

ՄԻՐԶՈՅԱՆ ԼԵՎՈՆ ԵՍԱՅԻ— Կուսանդամ 1917 թ., ԱդրԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար:

ՍՐԱՊԻՈՆՅԱՆ (Լուկաշին) ՍԱՐԳԻՍ ԼՈՒԿՅԱՆԻ— Կուսանդամ 1906 թ., ՀՍԽՀ ժողկոմսովետի նախագահ:

ՀՈՎՍԵՓՅԱՆ ՀԱՅԿ ԱԼԵՔՍԱՆԴՐԻ— Կուսանդամ 1913 թ., հայկական հրաձգային դիվիզիայի կոմիսար:

ՏԵՐ-ԳԱԲՐԻԵԼՅԱՆ ՍԱՀԱԿ ՄԻՐԶՈՅԻ— Կուսանդամ 1906 թ., ՀՍԽՀ ժողկոմսովետի լիազոր-ներկայացուցիչ ՌՍՖԽՀ-ի ժողկոմսովետում:

ՍԵՐԵԲՐՈՎՍԿԻ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՊԱՎԼՈՎԻՉ — Կուսանդամ 1903 թ., Ադրբեջանի նավթային վարչության պետ:

ԿՈՒԼԻԵՎ ՄՈՒՍՏԱՖԱ ՋԱՔԱՐԻ ՕՂԼԻ— Կուսանդամ 1918 թ., ԱՍԽՀ լուսավորության ժողովրդական կոմիսար:

ԻԼԴՐԻՄ ՉԻՆԳԻԶ ԻԼԴՐԻՄ ՕՂԼԻ— Կուսանդամ 1920 թ., կուսակցական պատասխանատու աշխատող:



ԱԽՈՒՆԴՈՎ ՌՈՒՀՈՒԼԱ ԱԼԻ ՕՂԼԻ— Կուսանդամ 1919 թ., ԱդրԿ(բ)Կ Բաքվի կոմիտեի քարտուղար:

ԲԵԼՈՎ ՎԻՏԱԼԻ ՍԵՐԳԵԵՎԻՉ— Կուսանդամ 1917 թ., ԱդրԿ(բ)Կ շրջկոմի քարտուղար (Բաքու քաղաքում):

ՍՎԻՐԻԴՈՎ ԻՎԱՆ ԱՆԴՐԵԵՎԻՉ— Կուսանդամ 1918 թ., ԱդրՍԽՀ ներքին գործերի ժողկոմի տեղակալ:

ՈՒԼՅԱՆՈՎ ԻՎԱՆ ՎԱՍԻԼԵՎԻՉ— Կուսանդամ 1903 թ., ԱդրԿ(բ)Կ Լենքորանի գավկոմի քարտուղար:

ԻԶՄԱՅԻԼՈՎ ՄԵՀԹԻ ԱՂԱՍԱՖ ՕՂԼԻ— Կուսանդամ 1918 թ., ԱդրՍԽՀ գլխավոր քաղաքական լուսավորության նախագահ:

ՏԱԿՈԵՎ ՍԻՄՈՆ ԱԼԻԵՎԻՉ— Կուսանդամ 1918 թ., ՌԿ(բ)Կ Անդրերկրկոմի ագիտպրոպբաժնի վարիչ:

ՍԱՆԱԿՈԵՎ ՎԼԱԴԻՄԻՐ ԱՐԱՍԻԵՎԻՉ— Կուսանդամ 1917 թ., ՎԿ(բ)Կ Հարավ Օսեթիայի մարզկոմի քարտուղար:

ՁԱՏԻԵՎ ԱՐՍԵՆ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ— Կուսանդամ 1918 թ., ՎԿ(բ)Կ Ցխինվալիի շրջկոմի քարտուղար (Հարավային Օսեթիա):

ՊԱՐՈՒՇԻՆ ՎԼԱԴԻՄԻՐ ԻՎԱՆՈՎԻՉ— Կուսանդամ 1917 թ., Բաքվի քաղաքային սովետի կոմունալ բաժնի վարիչ:

ՄԻՆԱՍՅԱՆ ԱՐԱՄ ՍԱՐԳՍԻ— Կուսանդամ 1904 թ., ՎՍԽՀ Ախալքալակի շրջգործկոմի նախագահ:

ԹԱՎԱՔԱԼՅԱՆ ՀՐԱՆՏ (Մնացական) ՄԿՐՏՉԻ— Կուսանդամ 1919 թ., ՀԿ(բ)Կ Զանգեզուրի գավառային կոմիտեի քարտուղար:

ՌԻԶԱԵՎ ՆՈՎՐՈՒԶ ՔԵՐԻՄ ՕՂԼԻ— Կուսանդամ 1920 թ., ԱդրԿ(բ)Կ փաբրիկա-գործարանային շրջկոմի քարտուղար:

ԻՎԱՆՈՎ-ԿԱՎԿԱԶՍԿԻ ՎԼԱԴԻՄԻՐ ԳԵՈՐԳԵՎԻՉ— Կուսանդամ 1907 թ., ՎԿ(բ)Կ ղեկավար գործիչ:

ՓԻՐՑԽԱԼԱՎԱ ԵՐՄՈԼԱՅ ՆԻԿՈԼԱԵՎԻՉ— Կուսանդամ 1906 թ., Թիֆլիսի երկաթուղային բանվոր:

ՉԵԼԻՁԵ ԻԼՅԱ ՄԱԼԱԳԻԵՎԻՉ— Կուսանդամ 1921 թ., Անդրկովկասյան կապի աշխատողների արհմիության նախագահ:

ԴՈՎԼԱԹՅԱՆ ԻՍԱՀԱԿ ՀՈՎՀԱՆՆԵՍԻ— Կուսանդամ 1906 թ., ՀՍԽՀ ներքին գործերի ժողկոմ:

ԳՈՒՐԿՈՎ Ա. Տ.*:

ՄԱՄԻԿՈՆՅԱՆ ՎԱՐԴԱՆ ԱԼԵՔՍԱՆԴՐԻ — Կուսանդամ 1919 թ., Լոռի-Փամբակի գավգործկոմի նախագահ:

ՌՈՒՄՅԱՆՑԵՎ ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ԱՆԴՐԵԵՎԻՉ— Կուսանդամ 1916 թ., զորամիավորման քաղբաժնի պետ:

ԾԱՏՈՒՐՅԱՆ (Ծատուրով) ՎԱՂԱՐՇԱԿ ՀԱՅՐԱՊԵՏԻ— Կուսանդամ 1920 թ., ՀԿ(բ)Կ Իջևանի շրջկոմի քարտուղար:

ԴԱՇՏՈՅԱՆ ՌՈՒԲԵՆ ՊԵՏՐՈՍԻ— Կուսանդամ 1902 թ., Նոր Բայազետի գավգործկոմի նախագահ:

ԵՍԱՅԱՆ ԱՐՍԵՆ ՍԵԴՐԱԿԻ— Կուսանդամ 1917 թ., Ալեքսանդրապոլի գավգործկոմի նախագահ:

ՂԱՐԻԲՅԱՆ ՀՐԱՆՏ ՄԱՐՏԻՐՈՍԻ— Կուսանդամ 1917 թ., Երևանի գավգործկոմի նախագահի տեղակալ:

ՍԱՀԱԿՅԱՆ ՄԱՐՏԻՆ ՄԻՆԱՍԻ— Կուսանդամ 1906 թ., ՀՍԽՀ կոմունալ բանկի նախագահ:

ԵԳՈՐՈՎ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԻԼՅԻՉ— Կուսանդամ 1918 թ., Կովկասյան առանձին բանակի հրամանատար:

ՌԱՏՆԵԿ ԿԱՐԼ ԿԱՐԼՈՎԻՉ— Կուսանդամ 1910 թ., կովկասյան առաջին հրաձգային դիվիզիայի կոմիսար:

ՎՐԱՉԵՎ Ի. ՅԱ.— Կովկասյան առանձին բանակի քաղվարչության պետ:

ՏՈԴՈՐՍԿԻ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԻՎԱՆՈՎԻՉ— Կուսանդամ 1918 թ., զորամիավորման հրամանատար:

ՉԱԳԻՆ ՊՅՈՏՐ ԻՎԱՆՈՎԻՉ— Կուսանդամ 1917 թ., ԱդրԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար և «Бакинский рабочий» թերթի խմբագիր:

ԼԻՍՈՎՍԿԻ ՄՈՒՍԵՅ ԻՎԱՆՈՎԻՉ— Կուսանդամ 1904 թ., ՌԿ(բ)Կ Անդրերկրկոմի բաժնի վարիչ:

ԺՈՒԿ ՊՅՈՏՐ ԼԱԶԱՐԵՎԻՉ— Կուսանդամ 1919 թ., բրիգադի քաղբաժնի պետ:

ՏԿԱՉՈՎ Ի. Ֆ.— Կուսանդամ 1913 թ. զինվորական:

ԳԵԳԵՉԿՈՐԻ ՄԻԽԱՅ ԻՎԱՆՈՎԻՉ— Կուսանդամ 1920 թ., ՎՍԽՀ ժողկոմխորհի նախագահի տեղակալ:

ՆԱԶԱՐԵԹՅԱՆ ՀՄԱՅԱԿ ՄԱՐԳԱՐԻ— Կուսանդամ 1905 թ.:

ՂՈՂՈԲԵՐԻՁԵ ԼԵՎՈՆ ԴԱՎԻԴՈՎԻՉ*:

ՄԻԽԱՁԵ Պ. Վ.*:

ԿՈԼՈՄՈԽՈԼԻՁԵ Գ. Ի.*:

ՄԱՄՈՒԼԻԱ ՍԵՄԵՈՆ ԱՆԴՐԵԵՎԻՉ—Կուսանդամ 1917 թ., ՎՍԽՀ ժողտնտխորհի նախագահ:

ԼԵՏՈԴԻԱՆԻ ԴԱՎԻԹ ՅԱՆՈՎԻՉ— Կուսանդամ 1918 թ., Լենքորանի գավառային պարենավորման պետ:

ՄԱՄԵԴԲԵԿՈՎ Կ. Գ.*:

**ՅԽԱԿԱՅԱ ՄԻԽԱ**— Կուսանդամ 1881 թ., պրոֆեսիոնալ հեղափոխական:

**ՄՈՒՍԱԲԵԿՈՎ ՂԱԶԱՆԱՖԱՐ Մ.**— Կուսանդամ 1918 թ., ԱդրՍԽՀ ժողկոմսովետի նախագահ:

**ԲՈՒՆՅԱԹՋԱԴԵ ԴԱԴԱՇ**— Կուսանդամ 1908 թ., ԱդրՍԽՀ աշխատանքի ժողովրդական կոմիսար:

**ԼԱԿՈԲԱ ՆԵՍՏՈՐ ԱՊԼԱՆՈՎԻՉ**— Կուսանդամ 1912 թ., Աբխազական ԱՍԽՀ ժողկոմսովետի նախագահ:

**ԵՆՈՒԿԻՁԵ ԱԲԵԼ**— Կուսանդամ 1898 թ., համառուսաստանյան կենտգործկոմի քարտուղար:

**ՋՈՒՂԱՇՎԻԼԻ (Ստալին) ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ**— Կուսանդամ 1898 թ., ՌԿ(բ)Կ Կենտկոմի գլխավոր քարտուղար:

**ՎԱՐԵՅԿԻՍ Ի. Մ.**— Կուսանդամ 1913 թ.:

**ՕՐԱԽԵԼԱՇՎԻԼԻ ՄԱՐԻԱ ՊԼԱՏՈՆՈՎՆԱ**— Կուսանդամ 1906 թ., ուսուցչուհի:

**ՄԴԻՎԱՆԻ ԲՈՒԴՈՒ***:

**ԷԺԲԱ ԵՖԻՄ ԱԼԵՔՍԵԵՎԻՉ**— Կուսանդամ 1915 թ.:

**ԱՌՈՒՍՏԱՄՈՎ ԼԵՎՈՆ ԱՂԱՅԻ**— Կուսանդամ 1904 թ., Գավգործկոմի նախագահի տեղակալ (ԱդրՍԽՀ):

**ՂԼՈՆԴԻ Ֆ. Ձ.***:

**ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ ԱՐՏԱԿ ԱՎԵՏԻ**— Կուսանդամ 1916 թ., Մոսկվայի պետական համալսարանի ուսանող:

**ՄԿՐՏՉՅԱՆ ՊԱՊԻԿ ԳՐԻԳՈՐԻ**— Կուսանդամ 1917 թ., ՀԿ(բ)Կ Երևանի գավառային կոմիտեի կազմբաժնի վարիչ:

**ՍՏԵՊԱՆՈՎ Ս. Ֆ.***:

**ԱԿԻՏՈՎ ՆԻԿՈԼԱՅ ՆԻԿՈԼԱԵՎԻՉ**— Կուսանդամ 1914 թ., ՎԿ(բ)Կ Աբխազիայի մարզկոմի քարտուղար:

**ԹԵՎՈՍՅԱՆ ԻՎԱՆ ՖԵՈԴՈՐՈՎԻՉ**— Կուսանդամ 1918 թ., ուսանող (նավթարդյունաբերության նախկին աշխատող, Բաքու):

**ԽՈՒՆԴԱՁԵ ՍԵՄԵՈՆ ԻՐԱԿԼԻԵՎԻՉ**— Կուսանդամ 1913 թ., լրագրերի և ամսագրերի «Տրիբուն» հրատարակչություն:

**ԻԶՄԱՅԻԼՈՎ Ս. Ա.***:

**ԳՈՒԴԻՆ ՍԵՄԵՈՆ ԱԲԵԼՈՎԻՉ**— Կուսանդամ 1920 թ., լեռնագործ:

**ԳՐԻԲԿՈՎ ԳԵՈՐԳԻ ԿՈՒԶՄԻՉ**— Կուսանդամ 1917 թ., դիվիզիայի պետի օգնական:

**ԼԵԺԱՎԱ ՎԱԼԵՐԻ ԻՍԱԿՈՎԻՉ**— Կուսանդամ 1902 թ., «Ռեզինատրեստի» նախագահ:

**ԼՈԶՆԵՐ ՎԵՆԻԱՄԻՆ ՄՈՒՍԵՎԻՉ**— Կուսանդամ 1920 թ., ԱդրԿ(բ)Կ Կենտկոմի գործերի կառավարիչ:

**ԳԵՎՈՐԳՈՎ ԱՐՏԱՇԵՍ ԳՐԻԳՈՐԵՎԻՉ**— Կուսանդամ 1919 թ., ՎԿԵՄ Աջարիայի մարզկոմի քարտուղար:

ԱՍՖՍՀ-ից՝ սովետների առաջին համագումարին մասնակցած պատգամավորների ցուցակը ստացել ենք Հոկտեմբերյան հեղափոխության կենտրոնական պետական արխիվից՝ հին բոլշևիկ **ԵԼԻԶԱՎԵՏԱ ՖԱԴԵԵՎՆԱ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ** միջոցով: Պատգամավորների հակիրճ կենսագրական տեղեկանքը կազմել է մեր խմբագրության աշխատակից **Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԸ**՝ ՍՄԿԿ ԿԿ-ին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական, վրացական և ադրբեջանական ֆիլիալների կուս. արխիվներում, ՎՍՍՀ պետական կենտրոնական արխիվում ու այլ աղբյուրներում եղած փաստերի հիման վրա և ճշգրտել մի շարք պատգամավորների ազգանուններն ու անունները:

Այս գործում մեզ օժանդակել է Հոկտեմբերյան հեղափոխության կենտրոնական պետական արխիվի աշխատակից ընկ. **Դ. Ի. ԲԱԲԻՆԸ**:

Ցավոք, առայժմ հնարավոր չեղավ հայտաբերել պատգամավորների լրիվ ցանկը (**ԽՄԲ.**):

---

* *Այս պատգամավորների մասին դեռևս ստույգ տեղեկություններ չունենք:*





Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*)

## ԼԵՆԻՆԸ ԼՍՈՒՄ Է ԼՈՒՆԱՉԱՐՍԿՈՒՆ: ԱՌԱՋԻՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԳՈՐԿՈՒ ՀԵՏ

*Կուսակցության IX կոնֆերանսն ավարտվելուց հետո Լենինը մասնակցեց Համառուսաստանյան ԿԳԿ հերթական նստաշրջանի երեք նիստերի: Ես ներկա էի այդ նստաշրջանում և հիշում եմ, որ Լենինը թեև ինքը հանդես չէր գալիս ճառերով, բայց ուշադիր լսում էր բոլոր ելույթները և իր համար գրառումներ էր կատարում:*

*Նա առանձնապես ուշադիր լսեց լուսավորության ժողկոմ Լունաչարսկու զեկուցումը և Նևսկու հարակից զեկուցումը (Համառուսաստանյան ԿԳԿ հանձնաժողովի կողմից):*

*...Հանրահայտ է, թե ինչպիսի ականավոր հռետոր էր Լունաչարսկին, որը գրեթե միշտ կարողանում էր հրապուրել ամեն մի լսարանի: Այդպես էր նաև այս նստաշրջանում:*

*Նրա ելույթը ինձ հետաքրքրում էր ո՛չ միայն նրա համար, որ այն, ինչպես միշտ, ձևով փայլուն էր և բովանդակությամբ խոր: Ես ուզում էի լուսավորության մեր առաջին ժողկոմից լսել, թե սոցիալիզմը իսկապես սկզբունքորեն ի՞նչ նոր բան է մտցնում ժողովրդական կրթության մեջ:*

*Հիշում եմ, թե Լունաչարսկին ինչպիսի ոգևորությամբ էր խոսում այն մասին, որ, չնայած ընդհանուր աղքատությանն ու փլուզմանը, երբ ուսուցիչների, դասագրքերի, դպրոցական շենքերի (որոնցից շատերը դեռևս զբաղված էին որպես լազարեթներ կամ զորանոցներ, չէին տաքացվում և վերանորոգվում) հսկայական պակաս է զգացվում, չնայած տասը աշակերտին ընկնում էր մեկ մատիտ և մեկ տետրակ (ամբողջ տարվա համար),— հակառակ այս ամենի, դպրոց են սկսել գալ շատ անգամ ավելի մեծ թվով երեխաներ, քան ցարիզմի օրոք: «Ցարական դպրոցները,— ասում էր Լունաչարսկին,— կարող էին ընդգրկել երեք և կես միլիոն դպրոցական, իսկ մեր դպրոցներում մենք արդեն ունենք հինգ և կես միլիոն դպրոցական»:*

*Ժողովրդական լուսավորությունն այդպիսի ընդարձակված տեմպերով է զարգանում գլխավորապես այն բանի շնորհիվ, հայտարարեց Լունաչարսկին, որ հենվում է աշխատավոր մասսաների ամենալայն աջակցության վրա, հին ուսուցչության լավագույն մասի մեծ օգնության վրա, որը անվերապահորեն անցել է սովետական իշխանության կողմը և մեծ խանդավառությամբ օգնում է նրան նոր, սովետական դպրոց կառուցելու...*

*Լունաչարսկին պատմեց Համառուսաստանյան ԿԳԿ անդամներին, թե ինչպիսի սկզբունքային փոփոխություններ են արդեն մտցվել և այսուհետև մտցվելու են կրթության սիստեմում, ինչպիսի ավելորդ, «մեռյալ» առարկաներ են հանված դպրոցական ծրագրերից, ինչ առարկաներ են նորից մտցվելու: Մատնանշում էր, որ սկըսվում է աստիճանական անցումը իսկական աշխատանքային, պոլիտեխնիկական դպրոցին:*

*Թվարկելով այն բոլորը, որ սովետական իշխանությունն արդեն արել է և պատրաստվում է անելու դպրոցը և դպրոցականների դրությունը բարելավելու համար, իսկ դրա հետ միասին պատասխանելով նրանց, ովքեր հարցնում էին, թե ինչու այս բոլորը մինչև այժմ դեռ չի արված, Լունաչարսկին հայտարարեց. «Մենք դա կանեինք, եթե մեզ չխանգարեին...»: Քաղաքացիական պատերազմը, որ կլանում է մեր բոլոր նյութական միջոցները, շուտով կվերջանա, ասում էր նա, և մենք կարող ենք զգալիորեն ամրապնդել ժողովրդական լուսավորության գործը, լիովին վերացնել անգրագիտությունը երկրում և ավելի արդյունավետ առաջ մղել մեր տարրական, միջնակարգ և բարձրագույն դպրոցը:*

*Որպես դպրոցաշինարարության [illegible] խնդիրներից մեկը, ժողկոմը դրեց դպրոցական այն շենքերի շուտափույթ ազատման հարցը, որոնք օգտագործվում էին իբրև լազարեթներ, զո-*

---

* Սկիզբը տես մեր ամսագրի № 11-ում:

բանոցներ և ռազմական հիմնարկություններ։ «Հենց որ մենք ունենանք բավական թվով դըպրոցներ, որպեսզի դրանք գործի գցենք,— հայտարարեց նա,— մենք խկույն այդ դպրոցների հաճախումը կդարձնենք պարտադիր»։

Ի ամոթ մեզ, շարունակեց Լունաչարսկին, մենք այժմ ի վիճակի չենք արագորեն ընդլայնելու երեխաների ընդգրկումը միջնակարգ կրթությամբ, ուստի և «ստիպված ենք երկամյա դպրոցներ կազմակերպել դեռահասների համար, որպեսզի որևէ բան սովորեցնենք նրանց»։

Խոսելով նախադպրոցական կրթության մասին, նա հայտնեց նստաշրջանի մասնակիցներին, որ եթե 1919 թվականին մենք երկրում ունեինք 3623 մանկապարտեզ, ապա այժմ ամեն տարի բացում ենք մինչև հազար նոր մանկապարտեզ։

Մեծ ափսոսանքով էր խոսում Լունաչարսկին բարձրագույն դպրոցի շատ պրոֆեսորների և ռեակցիոնորեն տրամադրված ուսանողության կողմից շարունակվող սաբոտաժի մասին։ Բայց բարձրագույն դպրոցի բնագավառում ևս այն ժամանակ որոշակի դրական տեղաշարժեր էին նշմարվում։ Պետրոգրադում հենց նոր էր ավարտվել ուսանողական առաջին կոնֆերանսը, որտեղ, ժողկոմի խոսքերով, «ընդունվել է խիստ որոշակի կարմիր բանաձև»։

Երկրում սկսել էր լայնորեն զարգանալ բանֆակների ցանցը. դրանք ընդգրկում էին հազարավոր երիտասարդ բանվորների ու գյուղացիների, որոնք շուտով պետք է անցնեին համալսարանական լսարանները, դնելով պրոլետարական պետության սեփական, աշխատավոր ինտելիգենցիայի ստեղծման սկիզբը...

Խոսելով արտադպրոցական կրթության, երեխաներին և չափահասներին գրագիտություն սովորեցնելու, գրադարանների և ժողովրդական թատրոնների ցանցի զարգացման մասին, Լունաչարսկին բերեց այն ժամանակ մեզ ապշեցնող այսպիսի թվեր. «...Ֆրանսիայում կա 113 գյուղացիական թատրոն, իսկ մեզ մոտ միայն Կոստրոմայի նահանգում՝ 400...»։

Ավարտելով զեկուցումը, Լունաչարսկին հայտարարեց. «Ես հուսով եմ, որ իմ ներկա զեկուցումը շրջադարձային բնույթ կունենա»։ Եվ իրոք, Համառուսաստանյան ԿԳԿ նստաշրջանը Լունաչարսկու զեկուցման առթիվ ընդունեց մի որոշում, որտեղ նրա զեկուցման ոգով հստակորեն որոշված էին ժողովրդական կրթության խնդիրները և նրան օգնելու միջոցառումները։

Հիշում եմ, թե Լենինը ինչպես ուշադիր էր լսում Լունաչարսկուն և ելույթ ունեցող բոլոր դեպուտատներին։ Նա չէր ընդհատում զեկուցողին և հռետորներին, չէր տալիս ոչ մի ռեպլիկ։ Նա միայն լսում էր և շարունակ ինչ-որ բաներ էր գրի առնում...

Այդ նստաշրջանում արված լենինյան դրառումները հետագայում հրապարակվեցին։ Դրանցից երևում է, թե Լենինը գործի ինչպիսի ըմբռնմամբ և իմացությամբ էր մոտենում ժողովրդական կրթության նոր պրոբլեմներին ու կարիքներին սոցիալիզմի առաջին երկրում։

Վիճաբանությունները դադարեցնելուց հետո տեղերից ձայներ լսվեցին՝ խոսք տալ Իլյիչին։ Սակայն Լենինը համեստորեն հայտարարեց, որ խոսք վերցնել չի ուզում, որովհետև եկել է այստեղ միայն նրա համար, որ ավելի մանրամասն իմանա լուսժողկոմատի գործունեության մասին...

...Ուզում եմ ասել Լունաչարսկու նկատմամբ Լենինի վերաբերմունքի մասին, ինչպես որ ես այդ զգացի նստաշրջանում։ Ուշադիր հետևելով թե՛ հռետորին և թե՛ մանավանդ Լենինին, ես հասկացա, որ Իլյիչը ոչ միայն մեծ ու լարված ուշադրությամբ էր վերաբերվում Լունաչարսկու զեկուցման բովանդակությանը։ Նրա դեմքին կարելի էր տեսնել մի ինչ-որ առանձին ներքին գոհունակություն այն բանից, թե ինչ էր ասում Լունաչարսկին և ինչպես էր ասում։

Իր հիշողություններում Ն. Կ. Կրուպսկայան գրել է. «...Իլյիչը միշտ էլ մեծ համակրանքով էր վերաբերվում Լունաչարսկուն. նրան չափից դուրս շատ էր գրավում Անատոլի Վասիլևիչի տաղանդը» («Воспоминания о Владимире Ильиче Ленине», т. 1, М., 1968, стр. 360)։ Լենինը բարձր էր գնահատում Լունաչարսկուն նաև որպես անգերազանցելի հռետոր-հրապարակախոսի, որպես ականավոր ոճաբանի և իր ելույթները վառ ու պատկերավոր «ձևավորող» մեծ վարպետի, նույնիսկ այն դեպքում, երբ նրան վիճակվում էր զարգացնել իրենից արդեն առաջ ինչ-որ մեկի արտահայտած մտքերը։ «...Ահա ինչ-որ մեկը մի որևէ ճշմարիտ ու հետաքրքրական միտք է հայտնել,— վերհիշում է Ն. Կ. Կրուպսկայան,— Անատոլի Վասիլևիչը կշարունակի այն և կկարողանա այնպես գեղեցիկ, տաղանդավոր ձևակերպել, այնպիսի փայլուն ձև տալ նրան, որ ինքը՝ մտքի հեղինակը նույնիսկ կզարմանա, թե մի՞թե իր այդ միտքը, այնպես հասարակ ու հաճախ անճոռնի, այդպիսի անսպասելի նրբագեղ, գրավիչ ձև է ստացել։ Ինձ,— ասել է Ն. Կ. Կրուպսկայան,— վիճակվել է մի քանի անգամ ներկա լինել Վլադիմիր Իլյիչի ու Անատոլի Վասիլևիչի խոսակցություններին և դիտել, թե նրանք ինչպես էին «լիցքավորում» միմյանց» (Н. К. Крупская, О Ленине, М., 1971, стр. 164)։

Ահա այս անգամ էլ, դիտելով, թե Լենինն ինչպես էր արձագանքում ժողկոմի ելույթին, կարելի էր համոզվել, որ նա ջերմ, բարեկամական վերաբերմունք ունի հռետորի նկատմամբ։ Պետք



է ասել, որ ինչպես ամեն բանում, այնպես էլ մարդկանց նկատմամբ վերաբերմունքի հարցում Լենինը, առաջին հերթին, ելնում էր հեղափոխության շահերից։ Նա մարդկանց գնահատում էր հենց այդ շահերի տեսակետից։ Դրանում արտահայտվում էր Լենինին հատուկ առանձնակի գիծը՝ մարդու և հեղափոխականի գիծը։

Նա շատ պահանջկոտ էր, արդարամիտ և միշտ պաշտպանում էր աշխատանքի ընկերներին։ Բայց երբ նրանք սկսում էին տատանվել, սխալներ անել, շեղվել գաղափարական ճիշտ դիրքերից, Լենինը չէր խնայում ամենաթունդ բառերը, քննադատելով, մեղադրելով և մերկացնելով նրանց։ Եթե խճճվածը խոստովանում և ուղղում էր իր սխալը, նորից կանգնելով գաղափարական ճիշտ ուղու վրա, Լենինը երբեք վրեժ չէր լուծում սխալի համար։ Նա աջակցում էր այդպիսի մարդուն և առանց հատուկ անհրաժեշտության չէր հիշեցնում նրա անցյալ մեղսագործության մասին...

Այդպես հյուսվեցին նրա հարաբերությունները նաև Լունաչարսկու հետ։

Կրուպսկայայի հիշողություններից հայտնի է, որ գտնվելով էմիգրացիայում, Լենինն ամեն կերպ աջակցում էր Լունաչարսկուն, որպես շնորհալի բոլշևիկյան գրականագետի, որն այն ժամանակ շվեյցարական էմիգրացիայում ակնառու դեր էր խաղում մենշևիկների դեմ մղվող պայքարում։

Սակայն 1905 թվականի հեղափոխության պարտությունից հետո, երբ սկսվեց ռեակցիայի ժամանակաշրջանը, Լունաչարսկին Բոգդանովի և բոլշևիկյան կուսակցության այն ժամանակվա մի քանի ուրիշ աչքի ընկնող գործիչների հետ միասին հեռացավ լենինյան դիրքերից։ Նրանք նույնիսկ կազմեցին մի առանձին ձախլիկ օտզովիստների խումբ, որը կանգնեց կեղծ, իդեալիստական փիլիսոփայական դիրքերում, «աստվածաորոնման» ուղու վրա։ Նրանք խճճվեցին ո՛չ միայն փիլիսոփայական հարցերում, այլև քաղաքականության մեջ։

Հանդես գալով Պետական դումային բոլշևիկների մասնակցության դեմ, նրանք պահանջում էին ետ կանչել այնտեղ ընտրված բոլշևիկյան դեպուտատներին, ուստի և կոչվեցին «օտզովիստներ»։ Նրանց քաղաքական գիծն ու պրակտիկ գործունեությունը դարձան անհամատեղելի բոլշևիկյան կուսակցության շարքերում գտնվելու հետ, և նրանք դուրս մնացին կուսակցությունից։

Պատմության մեջ շատ անգամ այդպես է եղել։ Կտրուկ շրջադարձերի ժամանակ «սայթաքել» են ո՛չ միայն որոշ շարքային կուսակցականներ, այլև կուսակցության առանձին ղեկավար գործիչներ։ Նրանցից ոմանք ջարդել են իրենց ողնաշարը, չեն կարողացել ոտքի կանգնել և ընդմիշտ կորել են կուսակցության համար։ Այդպես պատահեց, օրինակ, Բոգդանովի հետ (Բոգդանովն այդպես էլ մնաց անկուսակցական։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո նա դարձավ գիտաշխատող բժշկագիտության բնագավառում։ 1928 թվականին ինքն իր վրա կատարեց կյանքի համար վտանգավոր փորձ և զոհվեց)։

Լունաչարսկին ուժ ու արիություն գտավ գիտակցելու իր թույլ տված քաղաքական սխալը և դեռ մինչև Հոկտեմբերը, 1917 թվականին, վերադարձավ բոլշևիկյան կուսակցության շարքերը։

Բոլորովին վերջերս լույս է տեսել «Литературное наследство»-ի հերթական հատորը՝ կազմված Լենինի ու Լունաչարսկու նախահոկտեմբերյան և հոկտեմբերյան ժամանակվա համատեղ գործունեության վերաբերյալ չհրապարակված նյութերից։ Այդ գրքում հավաքված չափազանց հետաքրքրական փաստաթղթերը համոզիչ կերպով հաստատում են, թե Լենինը որքան բարձր էր գնահատում Լունաչարսկուն, չնայած նրա առանձին սխալներին ու ձախողումներին։ Հանրահայտ է, որ Լունաչարսկին ակտիվորեն պայքարել է Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի համար, դարձել Սովետական Ռուսաստանի լուսավորության առաջին ժողովրդական կոմիսարը։ Այդ պոստում ծավալվեց ականավոր կազմակերպչի, պրոպագանդիստի, հրապարակախոսի, գրողի նրա տաղանդը։ Կոմունիստական կուսակցության և անձամբ Լենինի ղեկավարությամբ նա գլխավորեց կուլտուրական հեղափոխությունը մեր երկրում, և նրա ներդրումն այդ հեղափոխության մեջ իսկապես անչափ մեծ է։

Լունաչարսկին, ինչպես հայտնի է, ոչ միայն լայն ժողովրդականություն նվաճեց ինտելիգենցիայի շրջանում, այլև կարողացավ նրան համախմբել կուսակցության գաղափարների, սովետական իշխանության շուրջը։ Նա դարձավ ժողովրդական լայն մասսաների հանրաճանաչ սիրելին։ Սոցիալիստական կուլտուրայի պատմությունը երբեք չի մոռանա այդ բոցաշունչ հրապարակախոսին, փայլուն բոլշևիկին...

...Մի անգամ, Համառուսաստանյան ԿԳԿ նստաշրջանում Լունաչարսկու ելույթից երկու ամիս անց, 1920 թվականի դեկտեմբերին, ես հանդիպեցի նրան և առաջին անգամ Մաքսիմ Գորկուն ընտանեկան մտերմական պայմաններում։ Դա տեղի ունեցավ Մոսկվայում, Ստեփան Շահումյանի այրու՝ Եկատերինա Սերգեևնայի բնակարանում։ Այն ժամանակ նա իր երեխաների հետ ապրում էր սովետների երրորդ տանը՝ նախկին Բոժեդոմսկի նրբանցքի, այժմ Դելեգատսկայա փողոցի վրա։

Հանդիպման նախաձեռնողը լեգենդար Կամոն

էր։ Դրանից քիչ առաջ նա ծանոթացել էր Ալեքսեյ Մաքսիմովիչի հետ և իսկույն բռնկվել նրա նկատմամբ քնքուշ զգացմունքներով։ Գորկին Կամոյին պատասխանեց փոխադարձ սիրով. պատահական չէ, որ ամենալավ ակնարկներից մեկը, որտեղ տաղանդավոր կերպով վերակերտված է Կամոյի հմայիչ կերպարը, գրել է հենց Ալեքսեյ Մաքսիմովիչը։ Լունաչարսկու հետ Կամոյին կապում էր հին բարեկամությունը։

Այն ժամանակվա դժվարին, ցուրտ ու սովյալ օրերին Կամոն որոշեց ուրախացնել բարեկամներին և, կովկասյան սովորությամբ, ավելի համեղ ուտելիքներով հյուրասիրել նրանց։ Նա վաղուց գիտեր, թե ինչպիսի համեղ հայկական ճաշեր է պատրաստում Եկատերինա Սերգեևնան։ Մի անգամ նա եկավ նրա մոտ և ասաց. «Եթե ես ճարեմ այն ամենը, ինչ հարկավոր է, դուք մեզ համար կպատրաստե՞ք լավ փլավ և բերանում հալվող ձեր շերտավոր կարկանդակները»։ Եկատերինա Սերգեևնան, իհարկե, համաձայնեց, բայց տարակուսանքով հարցրեց. «Կամո, իսկ դու որտեղի՞ց մթերքներ կճարես»։

Չգիտեմ որտեղից և ինչպես, բայց Կամոն ճարեց բրինձ, միս, յուղ, ալյուր։ Հենց նոր արտասահմանից եկած ընկերներից նա նույնիսկ երկու շիշ հիանալի ֆրանսիական կոնյակ ձեռք բերեց։

Եվ ահա նշանակված օրը, Աբել Ենուկիձեից վերցնելով մեքենան, Կամոն սկսեց հյուրերին բերել Եկատերինա Սերգեևնայի մոտ։ Սկզբում նա բերեց Ալեքսեյ Մաքսիմովիչին ու Լունաչարսկուն, հետո Միխա Ցխակայային, Ֆիլիպ Մախարաձեին և Սերգեյ Յակովլևիչ Ալիլուևին։ Մի քիչ ավելի ուշ եկավ նաև Ենուկիձեն։

Քանի դեռ Կամոն հավաքում էր հյուրերին, Ալեքսեյ Մաքսիմովիչն ու Անատոլի Վասիլևիչը նստել էին սենյակում և աշխույժ զրուցում էին։ Այստեղ էինք նաև ես ու Լև Շահումյանը։ Գորկին հանդարտ, ինչպես միշտ, հանգամանորեն խոսում էր երիտասարդ գրողների մասին և ուշադիր լսում գրական գործերի վերաբերյալ Լունաչարսկու պատմածները։ Պետք է ասել, որ Գորկին մեծ ջերմությամբ ու հարգանքով էր վերաբերվում Անատոլի Վասիլևիչին. նա բարձր էր գնահատում նրա տաղանդը և բազմակողմանի գիտելիքները կուլտուրայի բոլոր բնագավառներում։

Ես նրանց խոսակցությանը չէի մասնակցում, մինչև որ Գորկին ինձ դիմեց հետևյալ հարցով.

— Կարծեմ, դուք վերջե՞րս եք եկել Կովկասից։ Ի՞նչ է տեղի ունենում այնտեղ գրական կյանքում։

Անկեղծ ասած, ես շփոթվեցի, քանի որ ոչինչ չկարողացա պատասխանել նրան. այն ժամանակ ես մոտիկից չէի շփվել գրականագետների հետ։ Ինձ այդ վիճակից հանեց Լև Շահումյանը, պատմելով Վասիլի Կամենսկու, Սերգեյ Գորոդեցկու, Ռյուրիկ Իվնևի մասին, որոնց հետ վերջերս էր հանդիպել Թիֆլիսում, որտեղ այն ժամանակ տնօրինում էին մենշևիկները։ Շահումյանն ասում էր, որ այդ բանաստեղծները հաճախ հանդես են գալիս դասախոսություններով, կարդում իրենց ոտանավորները,— ընդհանուր առմամբ իրենց պահում են շատ արժանավայել և, դատելով ամեն ինչից, միանգամայն համակրում են սովետներին։

Այստեղ Եկատերինա Սերգեևնան բոլորին հրավիրեց սեղանի մոտ, որի վրա շատ խնամքով դասավորված էին ամեն տեսակի ամաններ՝ ափսեներ, գավաթներ, թասեր, տարբեր գույնի ու չափսի բաժակներ— մի խոսքով, այն բոլորը, ինչ որ միայն նրան հաջողվել էր հավաքել։ Մենք լուռ սեղան նստեցինք։ Բուռն աշխուժություն սկսվեց, երբ մատուցեցին փլավը, որը, իրոք, վարպետորեն էր պատրաստել Եկատերինա Սերգեևնան։ Սեղանին հայտնվեցին նաև խոստացված շերտավոր կարկանդակները։ «Մատրվակ» Ենուկիձեն, ինչպես ասում են, կոնյակը լցնում էր գործիմացությամբ, որին մի քիչ՝ բաժակի հատակին, որին մի քիչ ավելի, իսկ Ալեքսեյ Մաքսիմովիչի համար, հիշում եմ, լցնում էր լիքը բաժակ։ Սկսվեց աշխույժ զրույց։

Ալեքսեյ Մաքսիմովիչը կոնյակը խմում էր դանդաղ, եվրոպական ձևով, փոքր կումերով։ Նա մտածմունքի մեջ ընկավ, կարծես թե ինչ-որ բան վերհիշելով, իսկ հետո պատմեց այն եղելությունը, որ շատ տարիներ առաջ կատարվել էր նրա հետ Մետեխի բերդի մենախցում։ Նա չհիշատակեց թվականն ու ամիսը, բայց ինչպես հետո հաջողվեց ճշտել, դա պատահել էր 1898 թվականին։ Շատ տարիներ անց այժմ արդեն հանգուցյալ Լ. Շահումյանի հետ մենք աշխատում էինք վերհիշել Ալեքսեյ Մաքսիմովիչի այդ պատմությունը։

...Մի ինչ-որ տոն օր էր։ Հնարավոր է՝ հոգեգալստի օրը։ Բոլոր կալանավորների համար դրսից բերել էին պարեններ՝ համեղ ուտելիքներ և նույնիսկ գինի։ Բանտախցերից լսվում էին խրախճացողների բարձր ձայները։ Երգեր էին երգում։ Ալեքսեյ Մաքսիմովիչը քայլում էր իր մենախցում անկյունից-անկյուն։ Նա չուներ մոտիկ մարդիկ, ոչ ոք նրա համար ոչինչ չէր բերել։ Բանտի հսկիչը, կովկասցի, ընդհանուր առմամբ բարեհոգի մի մարդ, քայլում էր միջանցքում, մերթ ընդ մերթ ներս նայում Ալեքսեյ Մաքսիմովիչի բանտախցի դռան անցքից, ամեն անգամ տխրությամբ ու կարեկցաբար օրորելով գլուխը։ Հետո մի որոշ ժամանակ հսկիչն անհետացավ։ Դու մի ասա, վազել էր տուն՝ նա ապրում էր բանտի բակում։ Զրնգացին բանալիները, ճըռ-



ճըռացին դռան սողնակները, և Ալեքսեյ Մաքսիմովիչի բանտախցի շեմին հայտնվեց հսկիչը։ Նրա մի ձեռքում կար կավե աման տաք տոլմայով, իսկ մյուսում՝ կարմիր գինով լի մի մեծ դավաթ։ Կարծես թե ամաչելով ու չնայելով Գորկու աչքերին, նա սեղանին դրեց իր ընծաները և, մրթմրթալով «Ա՛ռ, դու էլ քեֆ արա», — արագ դուրս եկավ։

Ալեքսեյ Մաքսիմովիչն ասաց, որ ինքը հաճախ է հիշում այդ դեպքը և չի կարող չհիշել նաև այժմ, Եկատերինա Սերգեևնայի այդպիսի համեղ փլավից հետո...

Հիշում եմ, երեկոն անցավ շատ աշխույժ և հետաքրքիր։ Շատ և գրավիչ էր պատմում Լունաչարսկին։ Միխա Ցխակայան վերհիշեց մի ինչ-որ զվարճալի դեպք, որ կապված էր նրա ճամփորդություններից մեկի հետ։ Ըստ իր սովորության Կամոն ուրախ կատակում էր, ընդհանուր խոսակցությունն աշխուժացնելով իր անվերջ «պատմությունների» վերաբերյալ հիշողություններով...

Ի տարբերություն Լունաչարսկու, Գորկին լավ ծանոթ էր Կամոյի զարմանալի կյանքին և արդեն վաղուց լսել էր հեղափոխական պայքարի տարիներին նրա՝ համարձակության տեսակետից աններևակայելի, արկածների մասին։ Հայտնի է, որ հենց Գորկուն են պատկանում հետևյալ տողերը. «Եթե Կամոյի մասին գրեմ այն բոլորը, ինչ լսել եմ, ոչ ոք չի հավատա այդպիսի մարդու իրական գոյությանը, և ընթերցողը Կամոյի կերպարը կընդունի որպես բելետրիստի մտահնարանք... Բայց, ինչպես հաճախ է պատահում, դուրս եկավ, որ իրականությունն իր բարդությամբ ու գունագեղությամբ գերազանցում է «մտահնարանքին»...»։

Ահա այս անգամ էլ, ըստ երևույթին, ցանկանալով Լունաչարսկուն ավելի մոտիկից ծանոթացնել Կամոյին, Գորկին պնդեց, որպեսզի Կամոն պատմի, թե ինչպես ինքը, գտնվելով Թիֆլիսում, 1907 թվականին էքսպրոպրիացիայի է ենթարկել մի մեծ գումարի ցարական դրամանիշներ, հասցրել է արտասահման և դրել Լենինի տրամադրության տակ՝ կուսակցական աշխատանքի կարիքների համար։ Այդ պատմության մասին, ինչպես այն ժամանակ պարզվեց, Լունաչարսկին ոչինչ չգիտեր, թեև իր ժամանակին դրա մասին գրել էին աշխարհի շատ թերթերում։

Իր հանդգնությամբ դա իրոք չտեսնված մի գործողություն էր, որ կատարել էր Կամոն։

...Ճիշտ նշանակված օրը և ժամին Կամոն իր մարտական ընկերների հետ Թիֆլիսի Երևանյան բազմամարդ հրապարակում օրը ցերեկով հարձակվեց ուժեղ կերպով պաշտպանվող կառքի վրա, որը փոստից մեծ գումարի փող էր փոխադրում բանկ, և վերցրեց այն (ինչպես հետո պարզվեց, 250 հազա՞ր ռուբլի)։

Երբ որոշ ժամանակ անց հափշտակված փողը տանող կառքը հանդիպեց պատահարի վայրը արշավող ոստիկաններին, Կամոն, բազմած այդ կառքում սպայական հիանալի համազգեստով՝ սպիտակ չերքեզկայով և փափախով, ոստիկաններին բղավեց. «Փողը փրկված է, շտապեցե՛ք դեպի հրապարակ»։ Այնտեղ դեռ կրակոցներ էին լսվում...

Ոստիկանները, կարգին չպարզելով, թե ինչն ինչոց է, հավատացին «փայլուն սպային» և սլացան առաջ, դեպի հրապարակ...

Իսկ Կամոն այդ նույն ժամանակ փողը բարեհաջող հասցրեց կոնսպիրատիվ բնակարան, ապա փոխադրեց Ֆինլանդիա և հանձնեց բոլշևիկյան մարտական կենտրոնին։

Կամոն ծիծաղելով պատմում էր, թե ինչպես ինքն այդ փողը սահմանով անցկացրեց գլխարկի ամենասովորական կարտոնե կլոր տուփի մեջ, վագոնում դիտավորյալ այն դնելով ամենաերևացող տեղում, որպեսզի կասկածներ չհարուցի։

Ապուշ կտրած ոստիկանությունը որքան էլ փորձեց բռնել Կամոյին, այն ժամանակ այդպես էլ ոչինչի չհասավ...

Կամոն այդ բոլորը պատմում էր շատ գունագեղ, ինչպես ասվում է, «համով հոտով», իսկ մենք բոլորս քրքջում էինք, թեև, ի տարբերություն Լունաչարսկու, մեզնից ոմանք գիտեին մեր բարեկամի այդ արարքի մասին։ Իսկ Լունաչարսկին բառացիորեն շնչահեղձ էր լինում ծիծաղից...

...Այսպես տեղի ունեցավ իմ անձնական հանդիպումը Լունաչարսկու և առաջին ծանոթությունը Գորկու հետ՝ մի գրողի, որը վաղուց արդեն թանկ էր ինձ համար իր հիանալի գրքերով, որոնք միշտ էլ առանձին արձագանք էին գտնում հեղափոխականների սրտերում։ Հիշում եմ, թե ինչպես դեռ աշակերտական նստարանին առաջին անգամ կարդալով «Մայրը», ես կարծես թե դառնում էի բանվորների պայքարի մասնակիցը... Իսկ «Մրրկահավի երգը» մենք անգիր գիտեինք և շարունակ արտասանում էինք մեր դպրոցական խմբակներում։ Մեր ամբողջ կյանքի ընթացքում նա մեզ համար դարձավ Հեղափոխության երգը..

Այդ երեկոյի մի քանի ժամվա ընթացքում ես ուշադիր լսում և դիտում էի Գորկուն ու Լունաչարսկուն, որոնց հետ առաջին անգամ հանդիպել էի այդպիսի անբռնազբոսիկ իրադրության մեջ։ Նրանք երկուսն էլ ինձ վրա թողեցին խոր տպավորություն, ճիշտ է, ամեն մեկը յուրովի։ Ամենից առաջ նրանք ինձ զարմացրին իրենց էրուդիցիայով, և մի ինչ-որ առանձին մարդկային հմայքով։ Այդպիսի մարդկանց չէր կարելի չսիրել։ Եվ պետք է ասել, որ բարի զգաց-

մունքը նրանց երկուսի նկատմամբ ես պահպանել եմ առ այսօր։

Հիշում եմ ինձ վշտացրած մի էպիզոդ, որ պատահեց Լունաչարսկու հետ 1929 թվականին։ Իր կնոջ (Ն. Ա. Ռոզենել-Լունաչարսկայայի) հետ միասին նա պաշտոնական գործերով եղավ Լենինգրադում։ Այնտեղ Լունաչարսկուն այնպես լավ դիմավորեցին, որ նրան հազիվ հաջողվեց դուրս պրծնել լենինգրադյան բարեկամների հաճելի շրջապատից։ Դրա հետևանքով նա ուշացավ մոսկովյան գնացքից, որի մեկնումը մինչև իր գալը ուշացրել էին։ Այդ մասին հայտնի դարձավ Կենտկոմում։ Ստալինն առաջարկեց Լունաչարսկուն հայտարարել կուսակցական նըկատողություն, հրապարակելով մամուլում։ Համաձայնվելով, որ ժողկոմի կողմից գնացքի ուշացման փաստը անթույլատրելի է, ես առարկեցի Ստալինին, ասելով, որ մի այնպիսի կոմունիստի համար, ինչպիսին Լունաչարսկին է, Կենտկոմ կանչելը և թույլ տված սխալը խստորեն մատնացույց անելն էլ բավական է։ Ստալինը համառեց, իր առաջարկությունը պատճառաբանելով նրանով, որ «խիստ պատիժը կարևոր է ո՛չ միայն Լունաչարսկու համար, այլև լավ դաս կծառայի մյուս բոլոր ժողկոմներին։ Լունաչարսկու օրինակով,— ասում էր Ստալինը,— պետք է դաս տալ բոլոր բյուրոկրատներին»։

Այդ հարցը Կենտկոմում քննարկելուց հետո պայմանավորվեցինք, որ այդպիսի որոշում կընդունի ԿՎՀ-ն, մի բան, որը արվեց։ 1929 թվականի հունիսի 22-ին «Պրավդա»-ն հրապարակեց ԿՎՀ նախագահության հետևյալ որոշումը. «Լուսավորության ժողովրդական կոմիսար ընկ. Ա. Վ. Լունաչարսկուն, որը խախտել է աշխատանքային կարգապահությունը, այն է՝ առանց պետական անհրաժեշտության առաջարկել է Լենինգրադի կայարանապետին 15 րոպեով կանգնեցնել ճեպընթաց գնացքը, հայտարարել նկատողություն»։

Դրանից անմիջապես հետո Լունաչարսկուն իր անձնական խնդրանքով ազատեցին լուսավորության ժողկոմի պոստից և նշանակեցին ՍՍՀՄ ԿԳԿ-ին կից գիտական կոմիտեի նախագահ։

...Շատ և բեղմնավոր աշխատեց Անատոլի Վասիլևիչը միջազգային դիվանագիտական ասպարեզում։

Դեռևս լինելով լուսավորության ժողկոմ, նա սովետական կառավարության հանձնարարությամբ հանդես եկավ Ազգերի Լիգայում և Ժնևի զինաթափման կոնֆերանսում, տաղանդավոր կերպով պրոպագանդելով խաղաղության մեր արտաքին քաղաքականությունը և փայլուն պաշտպանելով զինաթափման վերաբերյալ սովետական առաջարկությունները։

«Պատերազմը մեզ համար խուչընդոտ է։ Նա մեզ հարկավոր չէ,— ասում էր Լունաչարսկին, պարզաբանելով սովետական խաղաղասիրական արտաքին քաղաքականության իմաստը։— Մեզ հարկավոր է հանգստություն, մեզ հարկավոր է ուժերը կենտրոնացնել գլխավոր գործի վրա։ Կենսագործելով այն, մենք կնվաճենք տասնյակ ու հարյուրավոր աշխատավորների, որոնք, համոզվելով մեր ուղու ճշտության մեջ, ամբողջ երկրագնդում կհաստատեն այն կարգը, որ մենք համարում ենք բանական...»։

Վերջին տարիները Անատոլի Վասիլևիչը հաճախակի և ծանր հիվանդանում էր. նրա մոտ գտան սրտի և աչքերի լուրջ հիվանդություն։

1933 թվականի օգոստոսին, երբ Լունաչարսկու վիճակը լավացավ, սովետական կառավարությունը նրան նշանակեց ՍՍՀՄ առաջին լիազոր ներկայացուցիչ Իսպանիայում։ Բայց Մադրիդի ճանապարհին հիվանդությունն անսպասելիորեն սրվեց, և ծանր հիվանդ Լունաչարսկին հարկադրված եղավ կանգ առնել Ֆրանսիայում։ Իսկ 1933 թվականի դեկտեմբերին Ֆրանսիայի հարավից՝ Մենտոնա քաղաքից տխուր լուր հասավ, որ Անատոլի Վասիլևիչ Լունաչարսկին վախճանվել է։

1934 թվականի հունվարի 2-ին Լունաչարսկու աճյունասափորը հանդիսավոր ամփոփեցին Կարմիր հրապարակի կրեմլյան պատի մեջ։

...Հիշելով Լունաչարսկուն որպես մեր կուսակցության և սովետական պետության ականավոր գործչի, ես ուզում եմ մի քանի խոսք ասել նրա մասին, որպես հիանալի քաղաքացու, որն իր սեփական ընտանիքում դաստիարակել էր արժանավոր զավակի՝ կոմունիստի, սովետական հայրենիքի հայրենասերի։

Չի կարելի առանց հուզմունքի կարդալ Անատոլի Վասիլևիչի նամակագրությունը իր միակ որդու (ի միջի այլոց, նույնպես Անատոլիի) հետ, որը հրապարակվել է «Կոմսոմոլսկայա պրավդա»-ում։ Դրանք ամենամոտ բարեկամի, սիրող և քնքուշ հոր, խելոք և խորաթափանց դաստիարակի, մանկավարժի հազվագյուտ սրտաբուխ նամակներ են...

Պետք է ասել, որ որդին կյանքում պատվով տարավ իր երևելի հոր ձեռքից ընդունած էստաֆետը։ Ընտանիքում ստանալով հիանալի դաստիարակություն և լինելով համակողմանի կրթված մարդ, դեռևս բոլորովին երիտասարդ, նա կարողացավ իրեն դրսևորել որպես տաղանդավոր գրականագետ։

Հենց որ սկսվեց Հայրենական պատերազմը, երիտասարդ կոմերիտական գրող Անատոլի Լունաչարսկին կամավոր մեկնեց ռազմաճակատ, իսկ շուտով ֆաշիստների դեմ մղված պայքարում ցուցաբերելով զինվորի բարձր արիություն ու խիզախություն, մարտական բնութագրով ընդունվեց կոմունիստական կուսակցության շարքերը։

Լինելով Սևաստոպոլի պաշտպանության անմիջական մասնակիցը, նա հետո բազմիցս մասնակցել է Նովոռոսիյսկի մոտ տեղի ունեցած ամենավտանգավոր ռազմական գործողություններին։ Մարտական ծառայությունների համար զինվորական հրամանատարությունը Անատոլի Լունաչարսկուն պարգևատրեց «Սևաստոպոլի պաշտպանության համար» մեդալով և Հայրենական պատերազմի II աստիճանի շքանշանով։

Սակայն Անատոլի Լունաչարսկին ժամանակին չկարողացավ ստանալ այդ պարգևները. երկար ժամանակ նա համարվում էր անհայտ կորած, և միայն որոշ ժամանակ անց հաջողվեց պարզել, որ նա զոհվել է հերոսի մահով 1943 թվականի սեպտեմբերին՝ Նովոռոսիյսկի շրջանում ծովային հետևակի դեսանտի ժամանակ։

«Նրա ամբողջ մարտական կյանքը,— ասված է սևծովյան նավատորմի քաղվարչության զեկույցում,— հայրենիքին աղնվորեն և անձնվիրաբար ծառայելու հիանալի օրինակ է» («Литературное наследство, т. 28, «Советские писатели на фронтах Великой Отечественной войны», кн. 2, М., 1966, стр. 656):

Այս բոլորի մասին ես իմացա 1965 թվականին, երբ ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի օրվա քսանամյակի տոնակատարության օրերին ինձ որպես ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի վիճակվեց հանդիսավոր իրադրության մեջ Ա. Ա. Լունաչարսկու կառավարական պարգևները հանձնել նրա ընտանիքին՝ այրի Ելենա Եֆիմովնա և դուստր Աննա Անատոլևնա Լունաչարսկիներին։

Այդ պարգևները հանձնելով նրանց, ես ասացի, որ ինձ համար առանձնապես հաճելի է այդ անել, քանի որ ես լավ էի ճանաչում Ա. Վ. Լունաչարսկուն, որը, եթե կենդանի լիներ, իրավամբ, կարող էր պարծենալ իր որդով։ Նրանք երկուսն էլ,— թե՛ հայրը, թե՛ որդին,— իրենց կյանքը անձնազոհ նվիրաբերեցին հանուն մեր ժողովրդի, հանուն սոցիալիզմի գործի...

## ԻՆՉ ԷՐ ԿԱՏԱՐՎՈՒՄ ԱՅՆ ԺԱՄԱՆԱԿ ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ

Համառուսաստանյան IX կուսակցական կոնֆերանսում ես առաջին անգամ հանդիպեցի Մոլոտովին։ Դրանից քիչ առաջ նրան ետ էին կանչել Նիժնի Նովգորոդից, որտեղ նա նահանգգործկոմի նախագահ էր, և տեղափոխել Դոնբաս, որտեղ ընտրվել էր նահանգկոմի քարտուղար։

Մենք ծանոթացանք։ Ես ասացի, որ ուղարկված եմ Նիժնի Նովգորոդի նահանգկոմ, և խնդրեցի պատմել Նիժնիում ստեղծված իրադրության մասին։

— Այնտեղ կա կուսակցական խոշոր կազմակերպություն,— ասաց Մոլոտովը,— որը հիմնականում բաղկացած է բանվորներից։ Նահանգկոմի գրեթե բոլոր անդամները նախահեղափոխական կոմունիստներ են, նույնպես նախկին բանվորներ։ Բայց իրադրությունն այնտեղ բարդ է, սուր կերպով երևան են գալիս տեղային տրամադրություններ. մյուս նահանգներից եկած աշխատողներին ընդունել չեն ցանկանում։ Կուսակցականների շրջանում քիչ չեն բարոյական քայքայման և սպիրտային խմիչքների չարաշահման դեպքերը (չպետք է մոռանալ, որ այն ժամանակ երկրում լիովին արգելված էին ալկոհոլային խմիչքների արտադրությունն ու վաճառքը)։ Կուսակցության անդամներից մի քանիսը, որոնք բնակվել են բուրժուազիայից խլված բնակարաններում, ամուսնացել են վաճառականների աղջիկների հետ։ Բուրժուազիայի մնացորդների դեմ պայքար գրեթե չի մղվում...

Զգացվում էր, որ Մոլոտովը խիստ անհանգըստացած է այն ամենից, ինչ տեղի է ունենում Նիժնի Նովգորոդում։ Վերջում ասաց, որ ինձ Նիժնիում աշխատելը շատ դժվար կլինի...

Այն, ինչ պատմեց Մոլոտովը, այն ժամանակ ինձ ինչ-որ անբնական թվաց։ Գլուխս չէր մըտնում, որ բանվորներից բաղկացած կազմակերպության մեջ կոմունիստների շրջանում կարող էր այդպիսի իրադրություն ստեղծվել։ Բայց, իհարկե, ես չսկսեցի առարկել Մոլոտովին, քանի որ ոչ մի հիմք չունեի նրան չհավատալու և որոշեցի ամեն բան ինքս պարզել տեղում։

Հետագայում, արդեն գտնվելով Նիժնիում, համոզվեցի, որ փորձված կուսակցական աշխատողների՝ նահանգկոմի նախագահության նախագահ Կուզնեցովի և նահանգգործկոմի նախագահ Մոլոտովի մասնակցությամբ Նիժնի Նովգորոդի բոլշևիկները շատ բան են արել տնտեսական փլուզումը հաղթահարելու համար, վատ չեն կազմակերպել աշխատանքային ու սայլային պարհակը, ապահովել են վառելանյութի մթերումը, հաջողությամբ մարդկանց հանել են շաբաթօրյակների և կիրակնօրյակների, մի շարք լավ գործեր են կատարել կարմիրբանակայինների ընտանիքներին օգնություն ցույց տալու ուղղությամբ։

Նիժնինովգորոդցիները պատմում էին, որ Մոլոտովը միշտ էլ ակտիվ հանդես էր գալիս հարբեցողության դեմ, բայց միշտ չէ, որ բավականաչափ տակտով էր վարվում և իր դեմ էր հանում շատ մարդկանց։ Ավելի ուշ ծանոթանալով նահանգկոմի այն նիստերի արձանագրություններին, երբ Մոլոտովն այնտեղ էր եղել, ես համոզվեցի, որ նա իրոք լեզու չի գտել տեղական կուսակցական կադրերի հետ։ Ստեղծվել էր վատառողջ իրադրություն։ Աննորմալ փոխհա-

րաբերություններ էին առաջացել նահանգկոմի և նահանգգործկոմի, ավելի ճիշտ՝ Մոլոտովի և Կուզնեցովի միջև, որը, ի դեպ, Նիժնիում մեծ հարգանք էր վայելում։ Առաջացել էր նահանգային ղեկավար աշխատողների՝ երկու խումբ, որոնց միջև կատաղի պայքար էր տեղի ունենում։

Դատելով ըստ ամենայնի, Մոլոտովը, պայքարելով տեղայնության դեմ, հաստատակամորեն և ակտիվորեն անց էր կացնում Կենտկոմի գիծը, բայց նրան, ըստ երևույթին, պակասում էր անհրաժեշտ տակտն ու ինքնազսպումը, իսկ գլխավորը՝ նա թույլ էր կապված բանվորական շրջանների հետ (նրան պաշտպանում էր գլխավորապես Քաղաքային շրջանը)։ Երբեմն նա կոպտորեն և ոչ միշտ ապացույցներ ունենալով հարձակվում էր նահանգկոմի որոշ անդամների վրա և նույնիսկ վիրավորում նրանց նահանգկոմի նիստերում։ Դա, իհարկե, չէր նպաստում տեղական կադրերի հետ նրա հարաբերությունների լավացմանը, և դրա հետևանքով նա դեմ առավ անըմբռնողության և նույնիսկ բացահայտ դիմադրության պատին։ Կուզնեցովի կողմնակիցները նահանգկոմի և նահանգգործկոմի ղեկավարության մեջ կազմում էին ամուր զոդված մի խումբ, որը Մոլոտովին պահում էր գրեթե մեկուսացած վիճակում։

Երբ նա փորձում էր, իրեն հատուկ սրությամբ, քննադատել Կուզնեցովի կողմնակիցներին, ապա հանդիպում էր համառ դիմադրության։ Այսպես, օրինակ, 1920 թվականի հունիսին նահանգկոմի պլենումում նահանգգործկոմի աշխատանքի մասին Մոլոտովի տված զեկուցումը մերժվել էր, իսկ նահանգկոմի և նահանգգործկոմի փոխհարաբերությունների նրա գնահատականը ճանաչվել ոչ-ճիշտ։ Նահանգգործկոմի նախագահությանը հանձնարարել էին ներկայացնել նոր զեկուցում, որն արտահայտեր ոչ թե սուբյեկտիվ, այլ նախագահության ամբողջ կազմի կոլեկտիվ կարծիքը։

Այս ամենում զգացվում էր խմբակային պայքարը կուսակցական կազմակերպության մեջ և նահանգգործկոմի մեծամասնության ձգտումը՝ ազատվել «անհանգիստ» եկվորից։

Այդ պլենումից մեկ ամիս անց կայացավ նահանգային X կուսկոնֆերանսը (1920 թվականի հուլիսի 15—19-ը), որտեղ խմբերի պայքարն ընդունեց ավելի սուր ձև։ Հարկ եղավ հրավիրել հատուկ փակ նիստ, որտեղ Մոլոտովը հանդես եկավ զեկուցումով, ուր Կուզնեցովին մեղադրում էր տեղային տենդենցներ արմատավորելու և խրախուսելու համար։ Սկսվեց խակական իրարանցում, եղան խիստ սուր արտահայտություններ։ Կուզնեցովի կողմնակիցները պահանջեցին ընդհատել Մոլոտովի զեկուցումը, և նահանգգործկոմի գծով նրա տեղակալ Խանովի առաջարկությամբ ընդունվեց մի բանաձև, որը Մոլոտովին և Տագանովին (Նիժնինովգորոդի կուսակցական հին աշխատող) պարսավում էր այն բանի համար, թե նրանք, «հակառակ մեր կուսակցության ամեն տեսակ տրադիցիաներին, նահանգկոմի ընտրություններից առաջ ագիտացիա էին ծավալել, նահանգկոմի նահանգային ու գավառային պատասխանատու աշխատողների հասցեին շպրտում էին ընդհանուր բնույթի մի շարք մշուշապատ մեղադրանքներ, գավառային տասնյակ աշխատողների և նահանգկոմի աշխատողների տալով վիրավորական մականուններ և փորձելով արատավորել այն բոլոր աշխատողներին, որոնք կազմում են նախկին նահանգկոմի մեծամասնությունը, միայն թե ճանապարհ հարթեն նահանգկոմում նոր խմբավորման համար»։

Զայրացած այդ որոշումից, Մոլոտովը հայտարարեց իր թեկնածությունը նահանգկոմի անդամների թվից հանելու մասին, թեև դրանից առաջ նրան ուրիշների հետ միասին կոնֆերանսում ընտրել էին նահանգկոմի անդամ։

Ստեղծվել էր բացահայտ աննորմալ դրություն— նահանգգործկոմի նախագահը դո՞ւրս էր եկել նահանգկոմի կազմից։

Այս բոլորի հետևանքով Մոլոտովը հարկադրված եղավ մեկնել Նիժնիից։ Կենտկոմը ետ կանչեց նաև Կուզնեցովին, ուղարկելով նրան Նիկոլաև, որտեղ նրան ընտրեցին նահանգգործկոմի նախագահ։

Այս բոլոր փաստաթղթերին ծանոթանալուց հետո ես հասկացա, որ այստեղ աշխատելը դժվար կլինի. այդ առթիվ Մոլոտովի արած նախազգուշացումը, ըստ երևույթին, ռեալ հիմք ուներ։

Գալով Նիժնի, ինձ հայտնի դարձավ, որ ետ կանչված Կուզնեցովի փոխարեն ինձ ուղարկելով Նիժնի Նովգորոդի նահանգկոմի նախագահություն, կուսակցության Կենտկոմը միաժամանակ որոշել է Մոլոտովի փոխարեն նահանգգործկոմի նախագահություն ուղարկել Պետրոգրադի առաջավոր բանվոր-կոմունիստներից մեկին՝ կուլտուրական, քաղաքականապես ակտիվ, փորձված աշխատող Զալուցկուն։ Բայց նա չուզեց գնալ Նիժնի և հասավ այն բանին, որ փոխել տվեց Կենտկոմի որոշումը իրեն այնտեղ ուղարկելու մասին։ Կարծում եմ, որ նա այդ բանն արեց Նիժնիում գործերի դրության մասին Մոլոտովի հետ զրուցելուց հետո. ինչպես իմացա հետագայում, նրանք այն ժամանակ մտերիմ էին։

## ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ ՆԻԺՆԻՈՒՄ

Համառուսաստանյան կուսակցական կոնֆերանսից անմիջապես հետո, 1920 թվականի հոկտեմբերի սկզբին, ես ուղևորվեցի Նիժնի Նովգորոդ, որոշելով ոչ մի հեռագիր չտալ իմ գալու մասին։



Գնացքը Նիժնի հասավ ցերեկը։ Ուշ աշուն էր, արդեն բավական զով։ Վերցնելով ճամպրուկս, որի մեջ գտնվում էր իմ հասարակ աղքատիկ ունեցվածքը, թևիս տակ առնելով խավոտ ծածկոցի մեջ փաթաթված բարձը, ես դուրս եկա կայարանամերձ հրապարակը։ Շուրջս մտահոգ, ինչ-որ տեղ շտապող մարդիկ են։ Ոչ մի տրանսպորտ չի երևում։ Հարցնում եմ՝ «Որտե՞ղ է գտնվում նահանգկոմը»։ Ասում են՝ միջնաբերդում։ Ցույց տվին ճանապարհը, և ես գետաքարով սալահատակված փողոցով ուղղվեցի դեպի Օկայի ափը՝ իմ նոր կյանքին ընդառաջ։

Գնում էի խղճուկ, գետնահար, իրար կպած տների կողքով։ Դրանց ֆոնի վրա, փայլուն բծի նման, աչքի էր զարնում տոնավաճառի նախկին շենքը, որ գտնվում էր Օկայի ափին։ Գետի մյուս կողմում փայլփլում էին եկեղեցիների գմբեթները։ Նավամատույցների մոտ կանգնած էին շոգենավեր, բեռնանավեր։ Օկայի վրա գցված է բացովի պոնտոնային կամուրջ։ Ես գնում էի նրա ջարդոտված փայտե տախտակամածով, վախենալով՝ հանկարծ չընկնեմ ջուրը։

Մի քանի անգամ նորից հարցրի ճանապարհը. այն երկար էր, իսկ տրանսպորտի ես այդպես էլ չհանդիպեցի։

Միջնաբերդը թվում էր անառիկ, կարծես հենց նոր էր պաշարման դիմացել։ Կողքովս անցնում էր կարմիրբանակայինների մի ջոկատ։ Նրանց տեսքը տանջահար էր, մի տեսակ խիստ գզգզված. ոմանք սապոգներով էին, ոմանք տրեխներով, իսկ մի քանիսը՝ միայն փաթաթաններով։

Նահանգկոմը տեղավորված էր մի մեծ սպիտակ շենքի առաջին հարկում, մի շենք, որ կրում էր Ազատության Պալատ բարձրագոչ անունը (Նիժնի Նովգորոդի նահանգապետի նախկին տունը)։ Վերևում տեղավորված էր նահանգգործկոմը։ «Ահա այստեղ ես պետք է աշխատեմ, գտնեմ նոր ընկերներ ու բարեկամներ»,— մտածում էի ես, մոտենալով բարձրադիր («նահանգապետական») դռներին։

Եկա նահանգկոմի քարտուղար Կրեմնիցկու մոտ։ Իրերս դրի անկյունում։ Ներկայացա։ Հանձնեցի կուսակցության Կենտկոմի որոշման քաղվածքը։ Հայտնեցի, որ Կենտկոմն ինձ ուղարկել է աշխատելու Նիժնի Նովգորոդի նահանգկոմի նախագահությունում։

Կրեմնիցկին բարևեց և հանգիստ հայտնեց, որ նահանգկոմի պլենումը (Կուզնեցովին ետ կանչելուց հետո) վերացրել է նահանգկոմի նախագահի պոստը և նախագահության փոխարեն կազմակերպել նահանգկոմի բյուրո, որի քարտուղար է մնացել ինքը՝ Կրեմնիցկին, որ նահանգկոմի բյուրոյում բոլոր պոստերն զբաղված են, ուստի և ես պետք է վերադառնամ Մոսկվա։

Պարզ դարձավ, որ, չցանկանալով նահանգկոմի ղեկավար ունենալ իրենց համար նոր, կենտրոնից եկած աշխատողի և, միևնույն ժամանակ, չհամարձակվելով ուղղակի խախտել կուսակցության Կենտկոմի որոշումը, տեղական ղեկավարները դիմել էին խորամանկության, ընտրելով «կազմակերպական վերակառուցման» ուղին։

Նրանք օգտվել էին այդպիսի վերակառուցման հնարավորությունից, քանի որ այն ժամանակ դեռևս գոյություն չուներ տեղական ղեկավար կուսակցական օրգանների միասնական կազմակերպական կառուցվածք. մի շարք նահանգներում կային նահանգկոմի նախագահություն և նախագահ, մյուսներում՝ նահանգկոմի բյուրո և քարտուղար (ներկայումս՝ մարզկոմի առաջին քարտուղար)։ Ընդ որում կառուցվածք փոխելը մտնում էր հենց իրենց՝ նահանգային կուսակցական կազմակերպությունների իրավասության մեջ, իսկ Նիժնիում ընդունված կառուցվածքին այն ժամանակ աստիճանաբար անցնում էին երկրի կուսակցական շատ այլ կազմակերպություններ։

Օգտագործելով ստեղծված հաջող իրադրությունը, տեղական ղեկավարները հապճեպ վերացրել էին նահանգկոմի նախագահությունը և ստեղծել նահանգկոմի բյուրո, ըստ երևույթին, հույսները դնելով այն բանի վրա, թե կանգնելով այդպիսի փաստի առաջ, ես չեմ համաձայնի ավելի փոքր մասշտաբի աշխատանքի և կվերադառնամ Կենտկոմի տրամադրության տակ, իսկ կուսակցական կազմակերպության ղեկավարությունն առաջվա նման կմնա կազմավորված տեղական խմբավորման ձեռքում։

Ես հայտարարեցի Կրեմնիցկուն, որ իմ աշխատանքի հարցը պետք է լուծեն նահանգկոմի բյուրոն և պլենումը՝ ելնելով Կենտկոմի որոշումից, և ինչպիսի որոշում էլ ընդունվի, ես մտադիր չեմ մեկնել Նիժնիից։

Ըստ երևույթին, ասացի ես, ինձ Նիժնի ուղարկելիս Կենտկոմի ընկերները չգիտեին այստեղ տեղի ունեցած կազմակերպական վերակառուցման մասին։ Բայց ես ուղարկված եմ այստեղ ղեկավար աշխատանքի և, որպես կոմունիստ, համաձայն եմ քաղաքում կամ գավառում կատարել ամեն մի կուսակցական աշխատանք, որը նահանգկոմը անհրաժեշտ կհամարի տրամադրել ինձ։ Մասնավորապես, ինձ կարելի է օգտագործել, օրինակ, պրոպագանդիստական աշխատանքում, քանի որ ինձ պատրաստված եմ զգում դրա համար...

Ասելով այս բոլորը, ես մտովի մոտավորապես հետևյալ կերպ էի գնահատում ստեղծվող իրադրությունը. եթե ես համաձայնեմ Կրեմնիցկու հետ, ուրեմն դուրս կգա, որ ես իրոք բյուրոկրատ եմ, ինչպիսին և նա, հավանորեն, հույս ուներ տեսնել ինձ. նա կվճռի, որ ես ընկել եմ բարձր

## «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1972 Թ. ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ







## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



## ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

| | № | էջ |
|---|---|---|





# Содержание






ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции. — Ереван-33, Барекамутян, 59-г.

Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրության հասցեն՝ Երևան—33, ... 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64, կուսակցական կյանքի և կուլտուրայի բաժիններ՝ 27—37—80:

Տիրաժ 13.200 Գինը 25 կոպ.:

ՎՖ 01799 Պատվեր 1909 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$

Ստորագրված է տպագրության՝ 12/XII 1972 թ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Հայկ. Կենտկոմի հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28: